# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 ՀՈՒՆԻՍ · 1967

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն



---

# Содержание






Ա. ՔՈՉԻՆՅԱՆ

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար


# ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱԿՏԻՎ ՈՒԺՆ Է

Սովետական ժողովուրդը, մոտենալով իր մեծ ու պայծառ տոնին՝ Հոկտեմբերի փառապանծ 50-ամյակին, հպարտությամբ է հայացք նետում պայքարի և աշխատանքի անցած ուղու վրա: Մենք շատ բան ունենք հպարտանալու, ուրախանալու համար: Ամենակարևոր հանրագումարներից մեկը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների անխախտ Միությունն է, բազմազգ պետության ազատ ու իրավահավասար ժողովուրդների եղբայրական բարեկամությունը:

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Հոկտեմբերի կենարար ճառագայթների ներքո երջանկության և ցնծության երկիր է դարձել հինավուրց Հայաստանը: Սովետական իշխանության տարիներին Հայաստանը ցարական Ռուսաստանի աղքատ մի ծայրամասից վերածվեց բարձր զարգացած բազմաճյուղ արդյունաբերություն, մեքենայացված խոշոր գյուղատնտեսություն, առաջավոր գիտություն և կուլտուրա ունեցող ծաղկուն սոցիալիստական հանրապետության: Վեր են խոյացել նոր քաղաքներ ու բանավաններ, վերակառուցվել են գրեթե բոլոր գյուղերը, կառուցվել են հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ, կոմբինատներ ու էլեկտրակայաններ, դպրոցներ ու հիվանդանոցներ, կուլտուրայի պալատներ և ակումբներ: Հայաստանը ծածկվել է ջրանցքների, խճուղիների, էլեկտրահաղորդման և կապի գծերի համատարած ցանցով:

Այժմ հանրապետության արդյունաբերությունը մեկ օրվա ընթացքում ավելի շատ արտադրանք է թողարկում, քան սովետական իշխանության հաստատմանը նախորդած մեկ ամբողջ տարվա ընթացքում: Հենվելով եղբայրական ժողովուրդների և, առաջին հերթին, ռուս մեծ ժողովրդի օգնության վրա, Հայաստանը տարեցտարի անշեղորեն վեր է բարձրանում աճման աստիճաններով, ստանում նորանոր ստեղծագործական ուժեր: Այստեղ տեղի են ունենում աննախընթաց վերափոխություններ ու մեծագործություններ: Հանրապետության արտադրաուժերն աճում են արագ տեմպերով: Միայն յոթնամյակի ընթացքում մեզանում այնպիսի արդյունաբերություն է ստեղծվել, որն իր

արտադրական հզորությամբ հավասար է նախորդ 38 տարիների ընթացքում ստեղծված արդյունաբերությանը։ Յուրացված է գրեթե վեց հարյուր նոր տեսակի մեքենաների, սարքերի, սարքավորման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։

Վերափոխվել է նաև հայկական գյուղը։ Հաջողությամբ զարգանում են գյուղատնտեսական արտադրության առաջատար ճյուղերը՝ խաղողագործությունը, պտղաբուծությունը, անասնաբուծությունը։ Կոլտնտեսային և սովխոզային դաշտերում աշխատում են հազարավոր տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Գյուղատնտեսական արտադրության մեջ գնալով ավելի լայնորեն է արմատավորվում էլեկտրաէներգիան, հայ գյուղացու աշխատանքը շատ ավելի արտադրողական է դառնում։ Լայն ծավալ են ստացել ոռոգման աշխատանքները։ Ջրովի հողերի տարածությունը աճել է գրեթե 3 անգամ։ Ջուրը կյանք է տվել նախկինում անպտուղ հազարավոր հեկտար հողերի։ Կոլտնտեսականների և սովխոզների բանվորների անձնուրաց աշխատանքի շնորհիվ տարեցտարի ավելանում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու մթերումները. այդ հնարավորություն է տալիս մշտապես բարելավելու քաղաքների բնակչության մատակարարումը պարենամթերքով, իսկ արդյունաբերությունը՝ հումքով։

Էկոնոմիկայի բուռն աճը նյութական բազա է ստեղծում գիտության և կուլտուրայի զարգացման համար, որոնք, իրենց հերթին, դառնում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերելքի հզոր շարժիչ ուժը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության հսկայական նվաճումն է կուլտուրական հեղափոխության իրականացումը երկրում։ Սոցիալիզմը կրթություն, լուսավորություն և բարձր մշակույթ է բերել սովետական մարդկանց։ Մեր հանրապետությունում կան ավելի քան 1600 մասսայական դպրոց, 53 տեխնիկում և ուսումնարան, 12 բարձրագույն ուսումնական հաստատություն։ Հայաստանի յուրաքանչյուր չորրորդ բնակիչը սովորում է։ Քաղաքներում և գյուղերում կան հազարավոր գրադարաններ, հարյուրավոր ակումբներ, կուլտուրայի տներ, կինոթատրոններ։ Ամեն տարի միլիոնավոր տպաքանակով հրատարակվում են հայ, ռուս և օտար գրականության կլասիկների գործերը, ժամանակակից հեղինակների գրքերը։ Մեր գիտությունը հիանալի արդյունքների է հասել արդի գիտատեխնիկական առաջադիմության բազմաթիվ ճյուղերում։ Սոցիալիստական կուլտուրան, գրականությունը և արվեստը, որոնք հաջողությամբ յուրացրել են անցյալի դասական ժառանգությունը և շարունակ հարստանում են սովետական արվեստագետների լավագույն գործերով, ակտիվորեն օգնում են կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորմանը։ Աճել են քաղաքականապես միանգամայն գիտակից, նոր բարոյականություն, աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունք ունեցող, կոլեկտիվիզմի և ընկերականության ոգով դաստիարակված մարդկանց նոր սերունդներ։ Սովետական մարդիկ չեն պատկերացնում իրենց կյանքը սոցիալիստական կարգից դուրս։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրում տեղի ունեցած կուլտուրական հեղափոխության ամենից ավելի էական արդյունքներից մեկը նոր, ժողովրդական ինտելիգենցիայի գոյավորումն էր, որը դուրս է եկել պանծալի բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության շարքերից։ Սովետական ինտելիգենցիան, նոր ֆորմացիայի ինտելիգենցիան չունի ավելի բարձր ձգտում, ավելի ազնիվ նպատակ, քան կուսակցությանը և



ժողովրդին ծառայելը, կոմունիստական հասարակարգի ստեղծման գործին ակտիվորեն մասնակցելը։ Թերևս հենց այդ բանում է առանձնապես ցայտուն ու ակնառու դրսևորվել մեր կուսակցության լենինյան քաղաքականության հաղթանակը կուլտուրական շինարարության բնագավառում։

Հայտնի է, որ Հայաստանը հնագույն և հարուստ կուլտուրա ունեցող մի երկիր է, որը նկատելի ավանդ է մուծել համաշխարհային քաղաքակրթության զարգացման մեջ։ Բայց մեր ժողովրդի պատմական ճակատագիրն այնպես է դասավորվել, որ նա, բազմաթիվ դարերի ընթացքում զրկված լինելով պետական ինքնուրույնությունից, գտնվելով օտար և սեփական շահագործողների լծի տակ, իր հարազատ երկրում փաստորեն չի ունեցել ո՛չ գիտական, ո՛չ էլ խոշոր կուլտուրական հիմնարկներ, իսկ նրա տաղանդավոր ներկայացուցիչները հարկադրված են եղել դեգերել օտար երկնքի տակ և հովանավորություն հայցել այլ երկրներում։

Սովետական իշխանությունը հայերին, ինչպես և Սովետական Միության մյուս ժողովուրդներին հնարավորություն տվեց լիովին բացահայտելու իրենց ստեղծագործական ուժերը։ Անցյալում մենք գործնականում չենք ունեցել ազգային տեխնիկական ինտելիգենցիա։ Իսկ այժմ այն կա, և մենք հպարտանում ենք ինժեներա-տեխնիկական աշխատողների բազմահազար բանակով։ Գործարաններում ու ֆաբրիկաներում, լաբորատորիաներում ու կոնստրուկտորական բյուրոներում, գիտա-հետազոտական ինստիտուտներում ու մինիստրություններում—ամենուրեք մեր ինժեներներն ու տեխնիկները հերոսական բանվոր դասակարգի հետ ուս-ուսի իրենց արժանավոր ավանդն են մուծում տեխնիկական առաջադիմության գործում։ Այժմ հանրապետության գյուղական վայրերում աշխատում են հազարավոր գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, ինժեներներ, մեխանիզատորներ, ուսուցիչներ, բժիշկներ, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողներ։ Նախքան հեղափոխությունը հայ գիտական միտքը ներկայացված էր միայն մի քանի տասնյակ գիտնականներով, որոնք աշխատում էին առավելապես հումանիտար գիտությունների բնագավառում։ Այժմ Հայաստանի ավելի քան հարյուր գիտա-հետազոտական հիմնարկներում ու բուհերում կան շուրջ ութ հազար գիտնականներ, որոնք արդյունավետ աշխատում են գիտության տարբեր ճյուղերում, մասնավորապես աստրոֆիզիկայի, տեսական մեխանիկայի, հաշվողական մաթեմատիկայի ու հավանականությունների տեսության, միջուկային և ռադիացիոն ֆիզիկայի, տեխնիկական կիբեռնետիկայի, բիոլոգիական ակտիվ նյութերի, քիմիայի և այլ բնագավառներում։

Ժողովուրդների հոգևոր կյանքում մեծ դեր են խաղում տաղանդավոր գրողները, կոմպոզիտորները, նկարիչները, կինոյի և թատրոնի գործիչները։

Սովետահայ ինտելիգենցիայի մեծ աճը բնութագրվում է հետևյալ տվյալներով։ Եթե վերջին քառորդ դարում հանրապետության բնակչությունը աճել է 70 տոկոսով, իսկ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված աշխատողների թիվը մոտավորապես 4 անգամ, ապա բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների թիվը այդ նույն ժամանակամիջոցում ավելացել է 8 անգամ. այդ թվում ինժեներներինը՝ տասը, գիտական աշխատողներինը և ուսուցիչներինը՝ գրեթե ութ, գյուղատնտեսներինը՝ յոթ, իսկ բժիշկներինը՝ վեց անգամ։ Բարձրորակ մասնագետների թվի առավելագույն աճը բնական և օրինաչափ երևույթ է մեր պայմաններում։ Դա Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի բուռն զարգացման արտահայտությունն է։

Վ. Ի. Լենինը դեռևս սոցիալիստական հեղափոխության առաջին ամիսներին գրում էր. «Առանց գիտության, տեխնիկայի, փորձի. զանազան ճյուղերի մասնագետների ղեկավարության, անկարելի է սոցիալիզմին անցնել, որովհետև սոցիալիզմը պահանջում է գիտակից և մասսայական առաջընթաց շարժում դեպի աշխատանքի ամենաբարձր արտադրողականություն՝ կապիտալիզմի համեմատությամբ...» (Երկեր, հ. 27, էջ 295)։ Այսօր, երբ գիտությունը ավելի մեծ չափով է վերածվում անմիջական արտադրաուժի, երբ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը ավելի մեծ չափով է կախված ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների լայն արմատավորումից, Վ. Ի. Լենինի խոսքերն առանձնապես այժմեական են։

Մեր ժողովրդական ինտելիգենցիայի բազմաքանակ ջոկատի առջև ծառացած են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, գիտության, կուլտուրայի և կրթության զարգացման, կոմունիստական դարաշրջանի մարդու դաստիարակման գծով հսկայական կարևորություն ունեցող խնդիրներ։

Այստեղից էլ այն մեծ նշանակությունը, որ Հայաստանի կուսկազմակերպությունը տալիս է ինտելիգենցիայի մեջ կատարվող աշխատանքին։ Կուսկազմակերպություններն ամենից առաջ իրենց մշտական ուշադրության ոլորտում են պահում ինտելիգենցիայի շարքերի պլանաչափ համալրման հարցերը։ Եվ դա բնական է։ Նրա շարքերի համալրումը, մտավոր աշխատանքի մարդկանց պրոֆեսիոնալ կազմի կարգավորումը մեծ ու կարևոր սոցիալական և տնտեսական խնդիր է, որի ճիշտ լուծումից են մեծապես կախված հանրապետության ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման հեռանկարները։

Վերջին տասնամյակները բնութագրվում են արդյունաբերության առանձնապես այնպիսի ճյուղերի արագ զարգացմամբ, ինչպիսիք են՝ սարքաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան, արտադրական պրոցեսների ավտոմատացման միջոցները, հաշվողական տեխնիկան։ Հանրապետության կուսկազմակերպությունները հասկանում են, որ արդյունաբերության աճի վերցրած տեմպը կարելի է հետագայում էլ պահպանել միայն բարձրագույն և միջին որակի մասնագետների և համապատասխան կադրերի առկայության դեպքում։ Պատահական չէ, որ կուսկազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում գիտության նորագույն ճյուղերի գծով մասնագետների պլանաչափ պատրաստմանը։ Եթե 50-ական թվականների վերջերին հանրապետության բուհերը պատրաստում էին մոտավորապես 80 մասնագիտությամբ կադրեր, ապա այժմ մեր բարձրագույն ուսումնական հաստատություններում երիտասարդությունը կրթություն է ստանում 124 պրոֆեսիաների ու մասնագիտությունների գծով։

Այնուամենայնիվ բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների պատրաստման տեմպերը, առանձնապես ինժեներական կադրերի պատրաստման տեմպերը, դեռևս ետ են մնում էկոնոմիկայի զարգացման տեմպերից։ Բավական է ասել, որ ներկայումս ինժեներական պաշտոնների միայն կեսն են զբաղեցնում մասնագիտական բարձրագույն կրթություն ունեցող մասնագետները։ Դեռ ավելին, վերջին տարիներին դիպլոմ ունեցող ինժեներների թվի բացարձակ աճի հետ զուգընթաց արդյունաբերական-արտադրական անձնակազմի հազար մարդու հաշվով մասնագետների թիվը որոշ չափով նվազելու տենդենց ունի արտադրության այնպիսի կարևոր ճյուղերում, ինչպիսիք են



մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը, էներգետիկան։ Այդ անցանկալի տենդենցը վերացնելու նպատակով կուսակցական և սովետական օրգանները միջոցներ են ձեռք առել մասնագետ ինժեներների պատրաստման տեմպերը կտրուկ արագացնելու ուղղությամբ։ Եթե 1960 թվականին Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում սովորում էին մոտ 4 հազար ուսանող, ապա այժմ սովորում են 12 հազար հոգի։

Արագ աճող գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում տեխնիկական ինտելիգենցիայի կադրերի խելացի պատրաստումը պետք է առաջիկայում ևս գտնվի կուսակցական օրգանների տեսադաշտում։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը և կուսակցության XXIII համագումարը դրել են հսկայական կարևորություն ունեցող խնդիր՝ արմատապես բարելավել երկրի տնտեսագիտական ծառայության բոլոր ստորաբաժանումների աշխատանքը։ Հասկանալի է, որ այդ խնդիրը կարելի է լուծել միայն որակյալ տնտեսագետների առկայության դեպքում։

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը վերլուծեց տնտեսագետների կադրերի պատրաստման վիճակը հանրապետության բուհերում և տեխնիկումներում։ Պարզվեց, որ այդ գործը լուրջ բարելավման կարիք է զգում, քանի որ տնտեսագետների պատրաստման տեմպերը չեն համապատասխանում այսօրվա խնդիրներին ու պահանջներին։ Այսպես, եթե 1960 թվականից մինչև 1966 թվականը ուսանողների կոնտինգենտը հանրապետության բուհերում աճել է, ամբողջությամբ վերցրած, մոտ 2,5 անգամ, ապա տնտեսագիտական հիմնական մասնագիտություններ սովորող ուսանողների թիվը այդ նույն ժամանակամիջոցում աճել է ընդամենը 30 տոկոսով։ Տնտեսագետ ուսանողներին բավարար չափով չեն հաղորդվում տնտեսական վերլուծության մաթեմատիկական մեթոդները, նրանք գրեթե չունեն տնտեսական հաշվարկների բնագավառում էլեկտրոնա-հաշվողական մեքենաների օգտագործման ունակություններ, հանրապետության բուհերում կազմակերպված չէ տնտեսագետ-ինժեներների կադրերի պատրաստումը, ըստ մասնագիտության տնտեսագետների պատրաստման կառուցվածքը լիովին չի համապատասխանում ժողովրդական տնտեսության և գիտության զարգացման կարիքներին ու խնդիրներին։

Գիտնականների և արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավար աշխատողների օգնությամբ կուսակցական օրգանները մի շարք կոնկրետ միջոցներ են մշակել տնտեսագիտական կադրերի պատրաստման, ինչպես նաև ինժեներական մասնագիտությամբ ուսանողների տնտեսագիտական պատրաստման գործը արմատապես բարելավելու ուղղությամբ։ Այսպես, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը ձեռնամուխ է լինում մի քանի պրոֆիլի տնտեսագետ ինժեների պատրաստմանը։ Սակայն, պետք է ընդգծել, որ երկրի ժողովրդական տնտեսության կառավարման բնագավառում անցկացվող ռեֆորմը պահանջում է ո՛չ միայն լավ տնտեսագետներ, այլև այն, որ ամբողջ տեխնիկական ինտելիգենցիան ունենա տնտեսագիտական պատկառելի պաշար։ Դա հասունացած պահանջ է։ Կուսակցական և սովետական օրգաններն անում են ամեն ինչ, որպեսզի բուհերի տնտեսագիտական ամբիոններն ամրապնդված լինեն որակյալ կադրերով, իսկ տնտեսագիտական առարկաների ավանդումը գտնվի արդի պահանջների մակարդակին։ Սակայն, մեր կարծիքով, տնտեսագիտական աշխատանքի մակարդակի բարձրացումը մեծապես պայմանավորված է նաև տեխնիկական բուհերի ուսումնական պլանների լուրջ բարելավմամբ։ Մենք գտնում ենք, որ այդ պլաններում պետք է

ավելի շատ ժամանակ նախատեսել էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման հարցերի ուսումնասիրության համար և ծրագրերը համապատասխանեցնել առհասարակ այսօրվա խնդիրներին: Մինչդեռ ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը դանդաղկոտություն է ցուցաբերում այս հարցը լուծելու ասպարեզում:

Մեր գիտնականները այժմ մշակում են խոշոր կոմպլեքսային պրոբլեմներ, աշխատում են գիտության բնագավառում բազմաթիվ նոր հեռանկարային ուղղությունների վրա: Այդ ամենը կուսակցական օրգաններին պարտավորեցնում է ամենօրյա ուշադրություն նվիրել որակյալ գիտական ուժերի սիստեմատիկ պատրաստմանն ու դաստիարակմանը:

Վերջին յոթ տարվա ընթացքում գիտական աշխատողների թիվը հանրապետությունում աճել է ավելի քան կրկնակի չափով: Գիտական աշխատողների ութ հազարանոց բանակում յուրաքանչյուր երրորդն ունի գիտությունների դոկտորի կամ թեկնածուի գիտական աստիճան: Բայց և այնպես, ինչպես ցույց է տվել հարցի ուսումնասիրությունը, մեր բուհերը և գիտահետազոտական հիմնարկները դեռևս վատ են օգտագործում գիտական աշխատողների պատրաստման այնպիսի փորձված ձևեր, ինչպիսիք են՝ ստաժորների ինստիտուտները, երիտասարդ, ընդունակ մասնագետների գործուղումները երկրի խոշորագույն գիտական կենտրոններ: Հանրապետության ոչ բոլոր ականավոր գիտնականներն են բավականաչափ շահագրգռված արժանավոր փոխարինողներ պատրաստելու գործում: Ասպիրանտների ընդհանուր թվի մեջ համեմատաբար փոքր է այն երիտասարդ գիտնականների թիվը, որոնք մասնագիտանում են տեխնիկական և կիրառական գիտությունների բնագավառում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հետազոտական հիմնարկներին, բուհերին, նրանց կուսկազմակերպություններին նպատակամղում է ամենօրյա և տքնաջան աշխատանքի՝ կադրերի պատրաստման ուղղությամբ: Կուսկազմակերպությունները բավական փորձ են ձեռք բերել այդ տեսակետից: Այժմ կադրերի պատրաստման հարցերը գործարար և կուսակցական շահագրգռվածությամբ քննարկվում են գրեթե բոլոր հետազոտական հիմնարկներում ու բուհերում՝ կուսակցական ժողովներում ու բյուրոների նիստերում: Կոմունիստ գիտնականներն արժեքավոր նախաձեռնություն են դրսևորում: Հենց կուսկազմակերպությունների օգնությամբ Հայաստանում ծնունդ է առել և զարգացել գիտական կադրերի պատրաստման, մեր կարծիքով, այնպիսի հեռանկարային մի ձև, ինչպիսին է հասարակական ասպիրանտուրան: Մի շարք ականավոր գիտնականների նախաձեռնությամբ արդեն չորրորդ տարին է, ինչ Հայկական ՍՍՀ գիտատեխնիկական ընկերությանն առընթեր գործում է հասարակական հիմունքներով ասպիրանտուրա, որտեղ սովորում են արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների և տնտեսությունների ավելի քան 130 լավագույն աշխատողներ: Անցյալ տարի այդ ինստիտուտը տվեց իր առաջին շրջանավարտները. արտադրության մեջ աշխատող ինը գիտնականներ հաջողությամբ պաշտպանեցին դիսերտացիաներ:

Սոցիալիստական հասարակարգը կոմունիզմ կատարած իր առաջընթաց շարժման մեջ ընթանում է չհարթված նոր ուղիներով: Բնական է, որ մեր առջև ծագում են քաղաքական, տնտեսական և սոցիալական նոր բարդ պրոբլեմներ, որոնք գիտական իմաստավորում և գործնական լուծում են պահանջում: Դա գործունեության վիթխարի ասպարեզ է բացում հասարակական գիտությունների աշխատողների առջև:



«Հասարակական գիտությունների զարգացումը և նրանց հանձնարարությունների արմատավորումը պրակտիկայում,— ասված է կուսակցության XXIII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ,— ոչ պակաս կարևոր դեր են խաղում, քան բնական գիտությունների նվաճումների օգտագործումը նյութական արտադրության ոլորտում և ժողովրդի հոգևոր կյանքի զարգացման ասպարեզում»:

Հասկանալի է, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը չէր կարող իր տեսադաշտից դուրս թողնել այն գիտնականների աշխատանքը, որոնք զբաղված են հասարակական գիտությունների տարբեր բնագավառներում: Հանրապետության գիտնականները հոկտեմբերի 50-ամյակը դիմավորում են որոշակի նվաճումներով. ավարտվում է Հայ ժողովրդի պատմության VI հատորի պատրաստումը, որն ընդգրկում է Հայաստանում սովետական իշխանության հաստատման ժամանակաշրջանը և սոցիալիստական շինարարության տարիները: Մեծ տարեդարձի օրերին կստանանք Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծերի նոր հրատարակությունը. գիտնականներն աշխատում են ընդհանրացնող աշխատությունների վրա, որոնք բացահայտում են սովետական ժողովրդի մեծ նվաճումները սովետական իշխանության տարիներին, մեր երկրի ժողովուրդների եղբայրական միասնության կենարար ուժը:

Բայց և այնպես գիտական հետազոտությունները հասարակական գիտությունների բնագավառում ամենևին ոչ միշտ են համապատասխանում կյանքի պահանջներին: Մեր որոշ տնտեսագետներ, փիլիսոփաներ, պատմաբաններ ու իրավագետներ դեռևս լիովին չեն ձերբազերծվել տիրացուականության և դոգմատիզմի տարրերից: Նրանց աշխատություններում հաճախ բացակայում է արդի սոցիալական, տնտեսական և քաղաքական պրոցեսների խոր վերլուծությունը, պակասում են գիտականորեն հիմնավորված հանձնարարականները կուսակցության առաջ քաշած խնդիրները գործնականորեն իրականացնելու ասպարեզում: Հասարակական գիտություններով զբաղվող գիտական ինստիտուտներն ու հիմնարկները գրեթե չեն մշակում այնպիսի կոմպլեքսային պրոբլեմներ, որոնք հնարավորություն տան համակողմանիորեն բնութագրելու հասարակական կյանքի կարևորագույն երևույթները, թեմաների ընտրությունը երբեմն որոշվում է այս կամ այն գիտական աշխատողի անձնական ճաշակով:

Մասնավորապես մեզ չի բավարարում էկոնոմիկայի բնագավառում կատարած հետազոտությունների մակարդակը: Հայաստանի գիտությունների ակադեմիայի արդեն բազմաթիվ տարիներ գոյություն ունեցող էկոնոմիկայի ինստիտուտը բավականաչափ արդյունավետ օգնություն ցույց չի տալիս կուսակցական և սովետական օրգաններին ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի և մեր կուսակցության XXIII համագումարի առաջադրած պրոբլեմների լուծման հարցում: Անհարկի ցրվում են ուժերը: Օրինակ, հանրապետության տնտեսության պլանավորման, հաշվառման և կառավարման կազմակերպման մեջ մաթեմատիկական մեթոդների կիրառման հարցերով զբաղվում են մի քանի հիմնարկներ և դրանցից յուրաքանչյուրը հավակնություն ունի ստեղծելու իր հաշվողական կենտրոնը էլեկտրոնա-հաշվողական մեքենաների պարկով հանդերձ: Միաժամանակ գիտությունների ակադեմիայի և Երևանի պետական համալսարանի միացյալ հաշվողական կենտրոնի ունեցած էլեկտրոնա-հաշվողական մեքենաներն ամենևին էլ լրիվ չեն բեռնավոր-

րում գրականության զարգացման ընդհանուր ճակատագրի նկատմամբ։ Որոշ գրաքննադատների ոչ-բավականաչափ սկզբունքայնությունը երբեմն արտահայտվում է այն բանում, որ նրանք անցնում են գորշ, թույլ ստեղծագործությունների կողքով, որի հետևանքով էլ ո՛չ միայն շարունակվում է միջակ գործերի հրատարակությունը, այլև ամբողջությամբ վերցրած խախտվում են գեղարվեստական ստեղծագործության գաղափարական-գեղագիտական գնահատականների չափանիշները։ Հանդես գալով առանձին ստեղծագործությունների վերաբերյալ, քննադատները հաճախ աչքաթող են անում սովետական գրականության զարգացման ընդհանուր տենդենցները։ Երբեմն այն տպավորությունն է ստացվում, թե քննադատներն իրենց հոդվածներում խոսում են ո՛չ թե ամբողջ գրական հասարակայնության ու ընթերցողների, այլ առանձին գրողների հետ։

Քննադատության դերն առանձնապես մեծ է երիտասարդ գրողների դաստիարակության ասպարեզում։ Վերջին տարիներին մեր գրականության մեջ գրողի լուրջ հայտեր են ներկայացրել մի խումբ երիտասարդ, շնորհալի արձակագիրներ ու բանաստեղծներ։ Հասարակայնությունը նշել է գրական ասպարեզում կատարած նրանց առաջին քայլերը։ Սակայն հենց նրանց գործերն էլ գնահատելիս քննադատները երբեմն կորցնում են չափի զգացումը։ Նույնիսկ շնորհալի երիտասարդ գրողներին չափից շատ գովաբանելը, ինչպես նաև նրանց վրա կատարած անհիմն հարձակումները բացասական ներգործություն են ունենում ստեղծագործության, արվեստագետի ձևավորման վրա։

Այս առնչությամբ մի քանի խոսք մեր հրատարակչական կոլեկտիվների մասին։ Հանդիսանալով գրողներին ու ընթերցողներին շաղկապող օղակը, նրանք աշխատավորական լայն մասսաներին են հասցնում գրողի վառ ու պատկերավոր խոսքը, նրա պրպտուն միտքը, նրա լուսապայծառ երազանքը։ Եվ որքա՜ն ցավալի է, երբ մեր հրատարակչությունները իրենց ոչ խստապահանջությամբ երբեմն լույս աշխարհ են հանում գաղափարապես թույլ և գեղարվեստական տեսակետից թերամշակ գործեր։ Բայց չէ՞ որ ոչ լիարժեք գրքի լույսընծայումը կարող է միայն վնաս պատճառել մեր գաղափարական-դաստիարակչական աշխատանքին, ապակողմնորոշել ընթերցողներին։

Հանրապետության կուսակցական օրգանների առանձնահատուկ հոգատարության առարկան մտավորականության քաղաքական դաստիարակությունն է, նրա գաղափարական-տեսական մակարդակի բարձրացումը։ Այս բնագավառում մենք զանազան ձևեր ու մեթոդներ ենք օգտագործում, հաշվի առնելով մտավոր աշխատանք կատարողների յուրաքանչյուր խմբի առանձնահատկությունը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ գիտա-հետազոտական հիմնարկների կոմունիստների և բուհերի դասախոսների համար գաղափարական-տեսական մակարդակի բարձրացման ամենից ավելի նպատակահարմար ձևը փիլիսոփայական և մեթոդոլոգիական սեմինարներն են։ Սեմինարները հետաքրքրություն են հարուցում փիլիսոփայական խոր պրոբլեմների հանդեպ, նպաստում գիտնականի կատարելագործմանը և նրա դիալեկտիկա-մատերիալիստական աշխարհայացքի խորացմանը։

Կուսակցական օրգանները լրջորեն զբաղվում են ձեռնարկությունների, կազմակերպությունների ղեկավարների, արտադրության հրամանատարների, կուսակցական և սովետական ակտիվի տնտեսագիտական վերապատրաստման հարցերով։ Այդ նպատակով հանրապետության քաղաքային խոշորագույն կուսկազմակերպություններին առընթեր՝ Երևանում, Լենինականում և Կիրովա-



կանում կազմակերպված են տնտեսական գիտելիքների համալսարաններ։ Արտադրության էկոնոմիկայի հանգուցային հարցերի վերաբերյալ սիստեմատիկաբար զեկուցումներ ու դասախոսություններ են կարդացել կուսակցական և սովետական ղեկավար աշխատողները, հանրապետության և Մոսկվայի ականավոր տնտեսագետ գիտնականները։

Հասարակական գիտությունների ամբիոնների դասախոսներին երկրում և միջազգային բանվորական շարժման մեջ եղած կարևորագույն իրադարձությունների հետ ժամանակին ծանոթացնելու համար, Հայաստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր ստեղծված է քաղաքական ինֆորմացիայի հարցերի մշտապես գործող սեմինար։

Կցանկանայինք մի քանի խոսք ասել մեր ինտելիգենցիայի աշխատանքի նաև այնպիսի բացառիկ կարևոր տեղամասի վերաբերյալ, ինչպիսին է մասնակցությունը աշխատավորների քաղաքական դաստիարակությանը։ Նշեմ, որ մեր պրոպագանդիստների բացարձակ մեծամասնությունը քաղաքային և գյուղական ինտելիգենցիայի ներկայացուցիչներն են։

Այժմ մեր կուսակցական և տնտեսական ակտիվի շրջանային դպրոցները մի ամբողջ շարք առարկաներ են ուսումնասիրում ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական բարձրագույն դպրոցի ծրագրով։ Դա հասարակ բան չէ։ Օրինակ, գյուղական շրջաններում այդ դպրոցների համար դժվար է բավականաչափ որակյալ պրոպագանդիստներ գտնելը։ Ի՞նչ ենք արել մենք։ Դեռևս կուսուսուցման սիստեմում ուսումնական տարին սկսվելուց առաջ մենք քննեցինք Երևանից գյուղական վայրերը պրոպագանդիստներ ուղարկելու հնարավորության հարցը։ Արդեն երկրորդ տարին է, ինչ մեր բուհերի հասարակական գիտությունների ամբիոնները լրիվին ստանձնել են բոլոր առարկաների դասավանդումը շրջանային ակտիվի դպրոցներում՝ հանրապետության ութ գյուղական շրջաններում։ Ամեն մի բուհ ամրացված է շրջաններից մեկին և այնտեղ աշխատանք է կատարում մինչև ծրագրով նախատեսված լրիվ դասընթացն ավարտելը։ Դրանից բացի, բուհերի կուսկազմակերպություններն իրենց ուժերով սեմինարական, հրահանգչա-մեթոդական պարապմունքներ են անց կացնում հանրապետության բոլոր շրջանների պրոպագանդիստների համար։ Բուհերի դասախոսները մեծ պատասխանատվության զգացումով են վերաբերվում այդ կուսակցական հանձնարարությանը։

Սովետական իշխանության տարիներին մեծ փոփոխություններ տեղի ունեցան գյուղական բնակչության կազմի մեջ։ Բնակչության ընդհանուր կրթական մակարդակի, գյուղատնտեսական արտադրության տեխնիկական զինվածության աճը, տրանսպորտի լայն զարգացումն ու կուլտուրական կենտրոնների հետ ունեցած սերտ կապերը—այս ամենը բարերար ներգործություն են ունենում ինտելիգենցիայի ձևավորման վրա յուրաքանչյուր գյուղում։ Դա նոր և ուշագրավ երևույթ է։ Օրինակ, մեր հանրապետության լեռնային հեռավոր գյուղերից մեկը՝ Շամշադինի շրջանի Ղրղի գյուղը։ Այստեղ կան երկու դպրոց, հիվանդանոց, ակումբ, կենցաղային սպասարկման կոմբինատ, մի քանի մասնագիտացված խանութ։ Գյուղում աշխատում են 43 ուսուցիչ, գյուղատնտեսության վեց մասնագետ, որոնք բարձրագույն կրթություն ունեն, երկու բժիշկ և 18 միջին բուժաշխատողներ։

Գյուղական ինտելիգենցիայի այդպիսի մի բանակի առկայությունը հրամայաբար անհրաժեշտ է դարձնում նրա հետ լայն, նպատակասլաց աշխատանք կատարելը, այդ աշխատանքի ձևերն ու մեթոդները մշտապես կատարե-

լագործելը։ Ուսուցիչների, բժիշկների, ինժեներների և այլ մասնագետների կենցաղային պայմանները բարելավելու միջոցառումների հետ մեկտեղ կուսկազմակերպությունները մի շարք միջոցառումներ են իրականացնում գյուղի հասարակական և կուլտուրական կյանքում մտավորականության ակտիվ մասնակցությունն ապահովելու ուղղությամբ։ Կուլտուրայի, առողջության, ծնողական համալսարանները, դասախոսությունները, զեկուցումներն այն տրադիցիոն ձևերն են, որոնցով ինտելիգենցիան ներգրավվում է հասարակական ակտիվ գործունեության մեջ։ Պրակտիկայում կիրառվում են գյուղական ինտելիգենցիայի շրջանային հավաքներ ու խորհրդակցություններ, գյուղի անվանի մարդկանց մեծարման երեկույթներ ու ժողովներ, տեսական սեմինարներ քաղաքի ու գյուղի էական տարբերությունների հաղթահարման գործում ինտելիգենցիայի դերի վերաբերյալ և այլն։

Սակայն, պետք է նշել, որ դեռևս կուսակցության ոչ բոլոր գյուղական շրջկոմներն են լրիվ գիտակցել գյուղական ինտելիգենցիայի հետ կատարելիք աշխատանքի կարևորությունը։ Առանձին շրջաններում այդ աշխատանքը կատարում են հին ձևով, առանց ներշնչման, առանց հաշվի առնելու նոր պահանջները։

Ինտելիգենցիայի հետ կատարվող աշխատանքը կուսակցական գործունեության կարևոր մի տեղամասն է։ Այն գտնվում է կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

«Партийная жизнь», журнал ЦК КПСС № 7, апрель 1967 г.



Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՆՎԱՃՈՒՄ

Սոցիալիզմի նպատակը մարդկային նոր հարաբերությունների ստեղծումն ու մարդու ազատագրումն է շահագործման և ճնշման, թշնամության ու անարդարության դարավոր կապանքներից, որով ապահովվում է անհատի ազատ ու բազմակողմանի զարգացումը, մարդկանց ազատություն, աշխատանք, խաղաղություն, երջանկություն ապահովող հասարակարգի ստեղծումը։

Մարքսիզմ-լենինիզմի մեծագույն ծառայությունը մարդկությանը հենց այն է, որ նա կարողացավ բացահայտել այդ վեհ նպատակին հասնելու իրական ուղիներն ու միջոցները։ Ապացուցելով, որ սոցիալական չարիքների հիմնական աղբյուրը արտադրության միջոցների մասնավոր սեփականությունն է, մարքսիզմ-լենինիզմը հանգեց այն միակ ճիշտ եզրակացության, որ հասարակության վերափոխման հիմնական պայմանը արտադրամիջոցների համայնական-համաժողովրդական սեփականության հաստատումն է, որի հետևանքով կվերափոխվեն հասարակական բոլոր (տնտեսական, քաղաքական, ազգային, անհատական) հարաբերությունները։ Դրան հասնել կարելի է միայն արդյունաբերական պրոլետարիատի կողմից իրականացվող սոցիալական հեղափոխության ճանապարհով։

Պրոլետարական բարձրագույն կազմակերպությունը՝ կոմունիստական կուսակցությունը, պատմականորեն դարձավ այն հասարակական ուժը, որը ղեկավարեց ու ապահովեց պրոլետարիատի հեղափոխական շարժման հաղթանակը և նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցումը։

Մասնավոր սեփականությունը ծնում է երկու հիմնական սոցիալական հետևանքներ. առաջինը՝ դա մարդկանց տնտեսական և, լայն առումով, սոցիալական անհավասարությունն է, որը դրսևորվում է հակամարտ դասակարգերի գոյության, մարդու կողմից մարդու շահագործման, ենթարկման, ճնշման, սոցիալական անարդարության մեջ, ծնում է մարդասպանություն, գողություն, թալան, շահախնդրություն, ամեն տեսակ սոցիալական և կենցաղային այլանդակություններ և դրան համապատասխան գիտակցություն ու հոգեբանություն։ Մասնավոր սեփականության առկայությունը մարդկությանը երկփեղկում է.

բաժանում է տնտեսական ու քաղաքական հակամարտ խմբերի, ինչպես և երկատում, ջլատում է մարդկության հոգևոր մշակույթն ու գիտակցությունը։ Այսպիսով, մասնավոր սեփականության առաջին հետևանքը՝ դա մարդկության սոցիալական երկատումն է։ Մասնավոր սեփականության երկրորդ հետևանքը, որն իր էությամբ առաջինի մի այլ դրսևորումն է, դա մարդկային մեծ հանրությունների՝ ազգությունների անհավասարությունն է, որը դրսևորվում է մի ժողովրդի կողմից մյուսներին իրեն ենթարկելով, նրանց քաղաքական, տնտեսական ու կուլտուրական առաջընթացի կասեցումով, և բռնի ասիմիլյացիայով։

Մասնավոր սեփականությունն անխուսափելիորեն ծնում է մարդկանց դասակարգային և ազգային հակամարտություն և թշնամություն։ Իսկական մարդկային համագործակցությունը պահպանվում ու զարգանում է աշխատավոր դասակարգերի ու խավերի մոտ։ Կապիտալիզմի ժամանակ դա հիմնականում բանվոր դասակարգի համագործակցությունն է, որը հարուցում է նրա և՛ ազգային, և՛ միջազգային համերաշխության անհրաժեշտություն։ Սակայն նախասոցիալիստական կարգերում մարդկանց տևական ու կայուն սոցիալական համագործակցությունը սահմանափակ է ու կաշկանդված, թեև այն իրոք դրսևորվում է հիմնականում աշխատավոր դասակարգերի կյանքում։

Աշխատավորների շահերի ընդհանրությունից է բխում տարբեր ազգությունների պատկանող մարդկանց համագործակցությունը, որը դրսևորվում է տնտեսական ու մշակութային շփման միջոցով և շատ դեպքերում, մասնավորապես ճնշված ժողովուրդների մոտ, հարուցում է ընդհանուր շահի (օրինակ, ճնշողների դեմ միասնության անհրաժեշտության, նվաճողների դեմ պայքարելու ժամանակ միավորվելու և այլն) գիտակցություն։ Բանվոր դասակարգի պատմական թատերաբեմ դուրս գալով ավելի ու ավելի է ծավալվում ու խորանում միասնության գիտակցությունը նաև ճնշող և ճնշվող ազգությունների աշխատավորների մոտ։

Բանվոր դասակարգի ազատագրական հեղափոխական շարժման հետ միասին ստեղծվում է ոչ միայն տվյալ ազգության բանվոր դասակարգի սոցիալ-քաղաքական համախմբում, այլև տարբեր ազգերի պատկանող բանվորների ինտերնացիոնալ (միջազգային) համախմբում կապիտալիստական կարգերի դեմ մղվող պայքարում։

Սրանք հենց ժողովուրդների համագործակցության և բարեկամության սաղմերն են, որոնք մասնավոր սեփականության պայմաններում ամբողջական լինել չեն կարող ոչ միայն այն պատճառով, որ ազգությունները ներքուստ պառակտված են հակամարտ դասակարգերի, ոչ միայն ազգամիջյան հակամարտության և թշնամության գոյության պատճառով, այլև այն բանի հետևանքով, որ տիրող դասակարգերի հոգեբանությունն ու գաղափարներն այս կամ այն չափով պատվաստված են աշխատավորներին և հենց իրենք՝ շահագործողներն ստեղծում են տարբեր ազգությունների աշխատավորներին թըշնամացնող պայմաններ։ 1870 թ. գրած իր նամակներից մեկում Կ. Մարքսը նշում էր, որ «Անգլիական հասարակ բանվորը ատում է իռլանդական բանվորին որպես իր կյանքի միջին մակարդակն իջեցնող մրցակցի։ Նրա նկատմամբ նա իրեն տիրապետող ազգի անդամ է զգում և հենց դրա պատճառով իր ազնվականների ու կապիտալիստների ձեռքին գործիք է դառնում Իռլանդիայի դեմ և դրանով ամրապնդում նրանց տիրապետությունը հենց իր վրա։ Իռլանդական բանվորի նկատմամբ նա կրոնական, սոցիալական և ազգային



նախապաշարմունքներ է տածում։ Նա նրան վերաբերվում է մոտավորապես այնպես, ինչպես սպիտակ աղքատները (poor Whites) վերաբերվում են նեգրերին ամերիկյան նախկին ստրկատիրական նահանգներում։ Իռլանդացին նրան հատուցում է նույն դրամով՝ տոկոսն էլ հետը։ Անգլիական բանվորի մեջ նա Իռլանդիայում անգլիական տիրապետության միաժամանակ մասնակցին ու կույր գործիքն է տեսնում» (К. Маркс и Ф. Энгельс, избр. письма, М. 1967 г. стр. 235—236)։

Այսպիսի մոմենտ կա կապիտալիզմի օրոք բոլոր ճնշող և ճնշվող ազգերի բանվորների փոխհարաբերության մեջ. Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է տարբեր ազգերի բանվորների մեջ ազգային անվստահության և նույնիսկ թշնամության առկայության մասին Ռուսաստանում։ Այսպես, 1917 թ. խոսելով ցարիզմի նկատմամբ ժողովուրդների ատելության մասին, Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Չպետք է զարմանալ, որ այդ ատելությունը նրանց հանդեպ, ովքեր արգելում էին մայրենի լեզվի գործածությունն անգամ և ժողովրդական մասսաներին անգրագիտության էին դատապարտում, այդ ատելությունը տարածվում էր նաև բոլոր վելիկոռուսների վրա» (Երկեր, հ. 26, էջ 419)։

Կոմունիստական կուսակցությունը, գլխավորելով բանվորների հեղափոխական-ազատագրական պայքարը, ելնում է ինտերնացիոնալիզմի սկզբունքներից և կազմակերպորեն էլ կրում է ինտերնացիոնալիստական բնույթ։ 1905—1907 թթ. հեղափոխության պարտությունից հետո տիրապետող ռեակցիայի ժամանակաշրջանում, երբ երկրում իշխում էր բուրժուա-ազգայնական գաղափարախոսությունը, երբ բոլոր ազգերի կապիտալիստներն ու նրանց քաղաքական սպասավորներն առանձնապես մեծ ճիգեր էին թափում բանվորներին մեկուսացնելու և նրբին նացիոնալիզմով, ազգային սնապարծությամբ, բուրժուական հայրենասիրությամբ վարակելու համար, կոմունիստները և անձամբ Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն նվիրեցին ազգային հարցին և բանվորների ինտերնացիոնալ միասնությունը ապահովելու խնդրին։ 1913 թ. Մ. Գորկուն գրած նամակներից մեկում Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Մեզ մոտ և Կովկասում ս.-դ. վրացիներ+հայեր+թաթարներ+ռուսներ աշխատում էին միասին տասը տարուց ավելի միասնական ս.-դ. կազմակերպության մեջ։ Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում։ Միակ լուծումը» (Երկեր, հ. 35, էջ 79)։

Հատկանշական է, որ Լենինն այստեղ, ինչպես և իր մյուս երկերում, ազգային հարցի պրոլետարական լուծումը, միակ լուծումը տեսնում է ոչ թե ազգերի լուծման (ազգալուծման) մեջ, ինչպես փորձում են ներկայացնել կոմունիզմի հակառակորդներն ու թշնամիները, այլ տարբեր ազգերի առաջադեմ բանվորների միասնության, միասնական հեղափոխական կազմակերպություններում նրանց համաձուլման մեջ, կապիտալի դեմ, հանուն սոցիալիզմի պայքարում նրանց համագործակցության ու եղբայրության մեջ։

Կապիտալիզմի դեմ մղվող հեղափոխական պայքարում զգալի չափով իրականանում է տարբեր ազգությունների պատկանող բանվորների գաղափարական և բաղաքական համագործակցությունը, այսինքն՝ նրանց բարեկամությունն այդ պայմաններում, բխելով սոցիալական վիճակի նույնությունից, ընդունում է գաղափարական և քաղաքական միասնության ձև։ Այդ պայքարում է սկսվում նաև բանվոր դասակարգի ազատագրումն այն գարշելիություններից, աղտեղություններից, որոնցով նրան պատում են մասնավոր սեփականատիրական կարգերը։ «Հեղափոխությունն անհրաժեշտ է ոչ միայն

այն պատճառով,— նշել են Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը,— որ ոչ մի այլ միջոցով հնարավոր չէ տապալել տիրապետող դասակարգը, այլև այն պատճառով, որ տապալող դասակարգը միայն հեղափոխությամբ կարող է ազատագրվել բոլոր հին գարշելիություններից և ընդունակ դառնալ նոր հասարակություն ստեղծելու» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. IV, стр. 60):

Տարբեր ազգությունների բանվորների կողմից այդ ազատագրության առաջին մոմենտներից մեկը հենց բուրժուական նացիոնալիզմի՝ ազգային մեկուսացածության, հակադրության, թշնամության հաղթահարումն ու ինտերնացիոնալ համախմբումն է: Դրանով իսկ այլ, արդեն հավասարների փոխհարաբերություն է ստեղծվում տիրապետող և ենթարկվող ազգությունների աշխատավորների միջև: Հենց սա է ժողովուրդների հետագա լայն համագործակցության և բարեկամության իսկական սաղմը:

Երկրում տիրող բուրժուական քաղաքական կարգերի բուռն հեղաշրջման պրոցեսում, Հոկտեմբերյան հեղափոխության և նրա հիման վրա սոցիալիստական-սովետական կարգերի հաստատման ընթացքում, քաղաքական և գաղափարական համագործակցությանն ավելացավ նաև ռազմական համագործակցությունը:

Հոկտեմբերյան հեղափոխությունը ծնեց սկզբունքորեն նոր երևույթ՝ խոշոր և մինչ այդ ճնշող ազգության աշխատավոր զանգվածների, հիմնականում պրոլետարիատի, ռազմական համագործակցությունը մյուս ազգությունների լայն զանգվածների հետ: Առաջին անգամ մարդկային պատմության մեջ խոշոր ազգության զինված բանակները գնում էին ոչ թե նվաճելու, այլ ազատագրելու, ոչ թե ճնշելու, այլ օգնելու փոքր ազգերին: Եվ քաղաքացիական պատերազմի, այսինքն՝ տեղական և օտարերկրյա կապիտալիստների զինված ուժերի դեմ բանվորների ու գյուղացիների մղած պատերազմի ընթացքում ավելի լայն մասշտաբներով ու նոր ուժով դրսևորվեց Փարիզի կոմունայի և 1905—1907 թթ. հեղափոխության կյանքի կոչած այն տակտիկան, որ սոցիալիստական կարգերի համար մղվող պայքարը ոչ միայն հնարավոր, այլև անխուսափելի է դարձնում տարբեր ազգությունների պատկանող աշխատավոր ամենալայն զանգվածների ինտերնացիոնալ համախմբումը և պրոլետարական համագործակցությունը: Լիովին հաստատեց մարքսիզմ-լենինիզմի առաջ քաշած այն թեզի ճշմարտացիությունը, որ մասնավոր սեփականատիրական, շահագործողական կարգերի կործանումը հանգեցնում է նաև ժողովուրդների հակադրության և թշնամության հաղթահարմանը:

Տարբեր ազգությունների աշխատավորների ռազմական համագործակցության սկզբունքային նոր բնույթը դրսևորվեց նրանում, որ դա հանգեցրեց ցարական Ռուսաստանի բազմաթիվ ժողովուրդների ազգային ազատագրությանը, նրանց քաղաքական-պետական ինքնուրույնության հաստատմանը և, մյուս կողմից, հնարավորություն տվեց մի շարք երկրներում (Ադրբեջան, Վրաստան, Հայաստան, Ուկրաինա և այլն) Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո հաստատված բուրժուական անկախ պետականությունից անցնել սոցիալիստական պետականության՝ հաստատել սոցիալիստական սովետական ինքնուրույն պետականություն:

Նախկին ցարական կայսրության մեջ մտնող երկրների մեծ մասում սովետական սոցիալիստական կարգերի հաստատումով սկիզբ է առնում տարբեր ազգությունների աշխատավորների համագործակցության նոր փուլ. Նրանց պետական համագործակցությունը, որն իրենից ներկայացնում է ժողովուրդ-



ների քաղաքական և դիվանագիտական, տնտեսական և մշակութային ամենալայն համագործակցություն: Այդ համագործակցության հիման վրա առաջացան ժողովուրդների կամավոր պետական միավորման այնպիսի ձևեր, ինչպիսին սոցիալիստական ֆեդերացիան է (ԱՍՍՖՀ, ՌՍՖՍՀ) և Միությունը (ՍՍՀՄ):

Ազգությունների մի մասի (առաջավոր պրոլետարիատի) համագործակցությունն, այսպիսով, վերածվում է ամբողջական ազգությունների համագործակցության, որովհետև սովետական սոցիալիստական կարգերի հաղթանակից հետո պրոլետարիատը՝ հաստատելով իր քաղաքական դիկտատուրան, ազգի ճնշված մասից վերածվում է ղեկավարող ուժի, հանդես է գալիս ամբողջ ազգության անունից, այնուհետև, քաղաքացիական պատերազմի ընթացքում փոխվում է ազգությունների դասակարգային կազմը՝ խոշոր բուրժուազիան և կալվածատերերը որպես դասակարգ դադարում են գոյություն ունենալուց և, վերջապես, բանվոր դասակարգն ամուր դաշինք է հաստատում մյուս աշխատավոր դասակարգերի և խավերի (գյուղացիություն, արհեստավորություն, մտավորականություն) ճնշող մեծամասնության հետ: Դրանով իսկ սկսվեց համաշխարհային պատմության նոր էջը՝ ժողովուրդների ազատ համագործակցության և եղբայրական բարեկամության դարաշրջանը, որի սոցիալական հիմքը սոցիալիստական արտադրահարաբերություններն են և բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության դաշինքը, քաղաքական հիմքը՝ պրոլետարիատի դիկտատուրան և ազգերի ինքնորոշման հետևողական իրականացումը, գաղափարական հիմքը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը, իսկ կազմակերպող գործուն սոցիալ-քաղաքական ուժը՝ կոմունիստական կուսակցությունը:

Առանձնապես կարևոր է կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության դերն ազգային հարաբերությունների վերափոխման բնագավառում: Այդ քաղաքականությունը, որի մշակման գործում Վ. Ի. Լենինի վիթխարի ներդրման համար այն իրավացիորեն անվանվում է լենինյան, հասարակության կոմունիստական կազմակերպման մասին ուսմունքի՝ գիտական կոմունիզմի բաղկացուցիչ տարր հանդիսացող պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների գործնական իրականացման միջոցառումների կուռ սիստեմ է:

Լենինյան ազգային քաղաքականության հիմնական կողմն ազգերի իրավական և փաստական (տնտեսական, քաղաքական, մշակութային) հավասարության հաստատման միջոցառումների իրականացումն է: Սակայն դրա հետ միասին ոչ պակաս կարևոր կողմ է այդ հիմքերի վրա ժողովուրդների փոխադարձ վստահության, բարեկամության ու եղբայրության գիտակցության համար մղվող պայքարը: Հատկանշական է, այդ տեսակետից, որ Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո ընկած ժամանակաշրջանում, մասնավորապես 1918—1923 թթ. ընթացքում Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և նրա առաջնորդ Վ. Ի. Լենինը վիթխարի ջանքեր էին թափում մեր երկրի ժողովուրդների լայն զանգվածների մեջ անցյալի անվստահության և թշնամության մնացուկները հաղթահարելու համար: Մշակելով ՌԿ(բ)Պ նոր ծրագիր, Վ. Ի. Լենինը Ռուսաստանում պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական խնդիրներից մեկն էր համարում ազգային իրական հավասարության հաստատումը և «ցարական ու բուրժուական վելիկոռուսական իմպերիալիզմի դարաշրջանից ժառանգություն մնացած»՝ վելիկոռուսների հան-

դեպ անվստահության մնացորդների հաղթահարումը, որի համար անհրաժեշտ
էր համարում «...առանձնահատուկ զգուշություն ցուցաբերել ազգային զգաց-
մունքի նկատմամբ, հոգատարությամբ կիրառել ազգերի հավասարությունը և
իրականում անջատվելու ազատությունը, որպեսզի վերացնենք այդ անվստա-
հության հողը և ձեռք բերենք բոլոր ազգերի սովետական ռեսպուբլիկաների
ամենասերտ կամավոր միությունը» (Երկեր, հ. 29, էջ 118)։ Թուրքեստանի կո-
մունիստներին, Ուկրաինայի բանվորներին և գյուղացիներին, Ադրբեջանի,
Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կո-
մունիստներին 1919—1921 թթ. գրած նամակներում և իր բազմաթիվ ելույթ-
ներում Վ. Ի. Լենինը միշտ ընդգծում էր սովետական ազգերի միջև սերտ դա-
շինք ստեղծելու անհրաժեշտությունը, որը «կստեղծի ազգային խաղաղության
մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին
է բուրժուական հասարակարգում» (Նույն տեղը, հ. 32, էջ 402)։

ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման ընթացքում իրականություն դարձավ
այդ ազգային խաղաղությունը, ընդ որում իրականացավ ոչ թե որպես ժամա-
նակավոր, անցողիկ երևույթ, այլ որպես ժողովուրդների բնական ու տևական
վիճակ՝ հաղթանակած սոցիալիզմի պայմաններում։ Եվ դա ոչ թե սոսկ խաղաղ
գոյակցություն է, որը քիչ թե շատ երկարատև ժամանակաշրջանում հնարա-
վոր է նաև տարբեր սոցիալական կարգ ունեցող երկրների համար, այլ ամե-
նասերտ համագործակցության և եղբայրական փոխադարձ օգնության վրա
հիմնվող գործուն խաղաղություն։

Սովետական Միության հանրապետությունների համագործակցությունն,
առաջին հերթին, անշահախնդիր է։ Եվ դա ոչ թե այն իմաստով, որ տվյալ
հանրապետությունը ինքը ոչինչ չի տալիս մյուսներին և միայն ստանում է,
այլ այն իմաստով, որ արտադրանքի փոխադարձ մատակարարումը լրացու-
ցիչ շահույթ կորզելու նպատակ չի հետապնդում, քաղաքական և այլ նախա-
պայմաններ չի առաջադրում, իրականացվում է պլանային կարգով, այսինքն՝
հաշվի է առնում այս կամ այն հանրապետության զարգացման շահերը, բնա-
կլիմայական պայմանների տարբերությունը և, ի վերջո, նպատակ է դնում
հասնել ամբողջ Միության մեջ արտադրվող բարիքների ըստ հնարավորին
հավասարաչափ բաշխման բոլոր ազգությունների միջև։ Այսպիսով, սոցիա-
լիզմի տնտեսական համագործակցությանը բնորոշ է ոչ թե մյուսների հաշվին
մի քանի երկրների հարստացումը, նրանցից լրացուցիչ շահույթ կորզելը, այլ
փոխադարձ համաձայնությամբ իրար շահերի հաշվառումը և պահանջների
միասնական ուժերով բավարարումը։ Ընդ որում, անհրաժեշտության դեպ-
քում, սոցիալիստական մի հանրապետությունը մյուսին նյութական արժեք-
ներ է տալիս, դրա փոխարեն չստանալով համարժեքը և դա հենց փոխադարձ
օգնության կարևոր կողմերից մեկն է։ Այսպես, սոցիալիստական կարգերի
արշալույսին ՌՍՖՍՀ-ն մյուս, մասնավորապես արդյունաբերական տեսակե-
տից ետ մնացած հանրապետություններին մեքենաներ, նույնիսկ ամբողջ գոր-
ծարաններ և լայն ֆինանսական օգնություն էր տրամադրում, տեղը ոչինչ
չստանալով, իսկ Հայրենական պատերազմից հետո մյուս հանրապետու-
թյուններն էին նման անվերադարձ օգնություն ցույց տալիս պատերազմից
ավերված Բելոռուսիային, Ուկրաինային, Մերձբալթյան հանրապետություն-
ներին, Մոլդավիային և Ռուսաստանին։

Եվ որքան ավելի լիակատար է դառնում տնտեսական զարգացման հավա-
սարությունը, այնքան ավելի լայն չափեր է ընդունում այդ համագործակցու-



թյունը և վերածվում հավասարների փոխադարձ օգնության։

Ահա հենց այս կողմերն են, որ սոցիալիստական երկրների տնտեսական
համագործակցությունը դրսևորում են որպես փոխադարձ օգնություն, որպես
ժողովուրդների բարեկամություն։

Դրա հետ միասին կարևոր է բացահայտել նաև ժողովուրդների հարա-
բերության հոգեբանական, գիտակցական կողմը։

Սովետական Միության հանրապետությունների գործարաններում ու կա-
ռույցներում տարբեր ազգերի ներկայացուցիչների համատեղ աշխատանքը
բնութագրվում է նրանց հավասարությամբ կյանքի բոլոր բնագավառներում և
նրանց միջև գոյություն ունեցող բարեկամական հարաբերություններով։ Ծագ-
ման կամ ազգային պատկանելության պատճառով արհամարհական վե-
րաբերմունքը, ծաղրը, վիրավորանքը այստեղ միայն և միայն բացառություն-
ներ կարող են լինել, բացառություններ, որոնք անմիջապես աչք են ծա-
կում և դատապարտվում թե՛ բարոյական տեսակետից (իրենց՝ աշխատա-
վորների կոլեկտիվների կողմից), թե՛ օրենքի կողմից, որը նույնպես հա-
տուկ պատիժ է սահմանում ազգային զգացմունքը վիրավորելու համար։
Կրկնում ենք, սակայն, որ նման երևույթները (որոնք կապիտալիզմի ժամա-
նակ օրինաչափություն էին), հաղթանակած սոցիալիզմի պայմաններում դառ-
նում են հազվագյուտ բացառություններ, իսկ օրինաչափություն են դառնում
տարբեր ազգերի պատկանող մարդկանց համերաշխությունը, եղբայրական
օգնությունը և բարեկամությունը։ Այսինքն՝ ինչպիսին են հարաբերություններն
ամբողջ ազգությունների միջև, այնպիսին էլ նրանց առանձին ներկայացու-
ցիչների հարաբերություններն են։

Ազգերի բարեկամության տեսակետից հատկանշական է և այն, որ այժմ
համերաշխ ու եղբայրաբար են իրար հետ վերաբերվում նախկինում այս կամ
այն պատմական հանգամանքների բերումով միմյանց նկատմամբ թշնա-
մաբար տրամադրված ազգությունները։ Այսպես, նախկինում հայ ժողովրդի
նկատմամբ թուրքական նվաճողների դարավոր հայաջինջ քաղաքականու-
թյունը թշնամության զգացմունք էր սերմանել թուրք և հայ աշխատավորնե-
րի միջև։ Այդ զգացմունքը դրսևորվում էր նաև հայ և ադրբեջանցի ժողովուրդ-
ների միջև և, գրգռվելով ցարական սատրապների կողմից, հասցնում էր
նույնիսկ հայ-ադրբեջանական կոտորածների։ 1918—1920 թթ. մուսավաթա-
կանների և դաշնակցականների ազգայնական քաղաքականության և նոր կո-
տորածների հետևանքով թշնամության այդ զգացմունքն ավելի խորացավ ու
լայն ծավալ ստացավ։ Սակայն հենց այդ շրջանում բանվոր դասակարգի առա-
ջավոր մասը՝ կոմունիստների ղեկավարությամբ ցույց տվեց, որ թշնամության
աղբյուրը շահագործողների քաղաքականության արդյունք է, որ նրանց լուծը
թոթափած աշխատավորները կարող են ամենալավ բարեկամներ լինել։ Դա
ապացուցվեց 1918 թ. Բաքվի հերոսական կոմունայի փորձով, իսկ Ադրբե-
ջանում և Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո այդ
թշնամությունն անցյալի հուշ դարձավ, որովհետև չկան այլևս թշնամություն
ու կոտորած հարուցող ուժերը՝ խաները, բուրժուաները, բեգերը, աղաները, և
նրանց ծնող մասնավոր սեփականատիրական ու գաղութակալական կար-
գերը։ Եվ ահա ամբողջ կես դար հայ և ադրբեջանցի ժողովուրդներն ապրում
ու համագործակցում են եղբայրաբար։

Նույն բանը կարելի է ասել միջինասիական ազգությունների մասին։ Անգ-
լիական հայտնի գրող Ջ. Պրիստլին, որը մի տասնյակ տարի առաջ կասկա-

ժամտությամբ էր վերաբերվում սովետական երկրի նվաճումներին, 1962 թ. վերջերին ՍՍՀՄ այցելելուց հետո հայտարարեց. «Ես նկատեցի այս բազմազգ երկրի մարդկանց միասնությունն ու համերաշխությունը, որն առանձնապես ակնհայտ է Տաշքենդում, Կենտրոնական Ասիայի մայրաքաղաքում... Այստեղ ռասայական տարբեր ծագում ունեցող մարդիկ, որոնցից ոմանք ամբողջ հազար տարի ավանդական թշնամիներ են եղել, ապրում են այժմ մի քաղաքում երջանիկ ու համերաշխ»:

Սոցիալիզմի ժամանակ ազգերի իրավական և փաստական հավասարության հաստատման, փոխադարձ օգնության ծավալման շնորհիվ հաղթահարվում է ազգերի հարաբերությունների նախկին հակասականությունը: Այսպես, անցյալում մյուս ազգերի մոտ ռուս ժողովրդի նկատմամբ գոյություն ուներ երկակի վերաբերմունք. մի կողմից, մասնավորապես Արևելքի ետ մնացած ազգությունների համար ռուսական տնտեսական կյանքի ու մշակույթի, ինչպես և առաջադիմական հասարակական-քաղաքական հոսանքների հետ շփվելը նպաստում էր նրանց զարգացմանը և բնականորեն ծնում բարեկամության զգացմունք ինչպես մշակույթի գործիչների, այնպես էլ աշխատավորական զանգվածների մեջ, մյուս կողմից, ռուսական ցարական ու բուրժուական ապարատի, բանակի ու ոստիկանության գաղութակալական իշխանությունը, ազատագրական շարժումների վայրագ ճնշումը հակակրանք ու ատելություն էին ծնում ոչ միայն ռուսական կալվածատերերի ու կապիտալիստների, այլև ռուս ժողովրդի նկատմամբ:

Սոցիալիզմի նվաճման ու կառուցման ընթացքում հիմնովին փոխվեց ռուս ժողովրդի պատմական դերը մյուս ժողովուրդների կյանքում: Ազատագրվելով մասնավոր սեփականատիրության ու ցարիզմի կապանքներից, սոցիալապես վերակառուցվելով, ռուս ժողովուրդը դարձավ մյուս ժողովուրդներին ազատագրող և բարեկամորեն օգնող համաշխարհային-պատմական վիթխարի գործոն: Այդ հանգամանքը ճիշտ գնահատելը չափազանց կարևոր է, որովհետև այն վճռական ազդեցություն ունի ամբողջ համաշխարհային զարգացման վրա:

Մարքսիզմը, անվերապահորեն կանգնած լինելով բոլոր՝ փոքր ու մեծ ժողովուրդների լիակատար հավասարության դիրքերի վրա, չի կարող, միաժամանակ, չտեսնել տարբեր ժողովուրդների ավանդների և դերի տարբերությունը համաշխարհային տնտեսության ու մշակույթի զարգացման, ինչպես և մյուս ժողովուրդների պատմական զարգացման մեջ: Այս տեսակետից աներկբա է, որ թվապես մեծ, մասնավորապես 50 մլն. և ավելի մարդ միավորող բարձր զարգացած ազգությունները առանձնահատուկ դեր են խաղում պատմության մեջ, իրենց ազդեցությամբ զգալիորեն պայմանավորելով նաև շատ ու շատ այլ, ավելի փոքրաթիվ ժողովուրդների պատմական առաջընթացը կամ ետ մնալը: Մինչև սոցիալիզմի հաստատումը նրանց ազդեցությունը հենց այդպես հակասական է և երբեմն դժվար է նույնիսկ որոշել, թե նրանց դրական ավանդն է մեծ, թե՞ բացասական դերը: Այսպես, օրինակ, Միացյալ նահանգների, Անգլիայի, Ֆրանսիայի ժողովուրդները հսկայական դեր են խաղացել համաշխարհային քաղաքակրթության զարգացման մեջ և նպաստել են շատ ու շատ ժողովուրդների պատմական առաջընթացին, բայց և միաժամանակ իրենց շահագործող դասակարգերի ձեռքին ծառայել և այժմ էլ ծառայում են որպես այլ ժողովուրդների գաղութակալման, ճնշման, նրանց հետամնացության մեջ պահելու միջոց:



Հոկտեմբերյան հեղափոխությունը ռուս ժողովրդին դուրս բերեց այդ հակասական վիճակից: Մի փոքր ձևափոխելով Մարքսի հայտնի արտահայտությունը, կարելի է այժմ ասել, որ «շահագործումից ազատագրված ժողովուրդը չի կարող չնպաստել մյուս ժողովուրդների ազատագրմանը»: Հենց այդպիսին դարձավ ռուս ժողովուրդը, որն ազատագրվելով մասնավոր սեփականատիրական կարգերից, օգնության ձեռք մեկնեց բոլոր ճնշված ժողովուրդներին և արժանացավ նրանց վստահությանն ու օգնությանը: Մյուս ժողովուրդներին օգնելու համար ռուս ժողովուրդը հաճախ նույնիսկ զոհողությունների էր դիմում, տալով նրանց իրեն իսկ անհրաժեշտ ռազմական ուժերը, մթերքները, կադրերը, լրացուցիչ միջոցներ տրամադրելով նրանց ավելի արագ զարգացման համար:

Այդ բոլորը չէր կարող նոր վերաբերմունք չծնել ռուս ժողովրդի նկատմամբ: Եվ հատկանշական է, որ Սովետական Միության բոլոր ժողովուրդների մոտ առաջացել ու ամրապնդվել է հարգանքի, եղբայրության ու սիրո զգացմունք ռուս ժողովրդի նկատմամբ. այժմ արդեն ռուս անունը և՛ բաշկիրների, և՛ մյուս սովետական ժողովուրդների համար հավասարազոր է եղբայր, բարեկամ անուններին, դրա համար էլ բնական է, որ փոքր ժողովուրդները ռուսներին սովորաբար կոչում են «ավագ եղբայր»:

Պատահական չէ նաև, որ անցյալի վերագնահատման ժամանակ մեր երկրի ժողովուրդները իրենց երկրները Ռուսաստանի հետ միավորելու տարեթվերը նշելիս, ձգտում են ցարական իշխանության գաղութակալական նպատակներն ու վայրագ ճնշումը սահմանազատել ռուս ժողովրդի պատմականորեն առաջադիմական դերից և հատկապես շեշտում են ժողովուրդների բարեկամությունն ու փոխադարձ օգնությունը խորհրդանշող կողմերը՝ ռուսական բանվոր դասակարգի և առաջավոր մտածողների համերաշխությունը ցարիզմի ու կապիտալիստների կողմից ճնշվող այլազգի աշխատավոր զանգվածների հետ: Օրինակ, հայ աշխատավորը խոսելով հայ և ռուս ժողովուրդների բարեկամության մասին, նկատի ունի ոչ միայն 1917 թվականի հոկտեմբերից հետո ռուս ժողովրդից ստացած անգնահատելի օգնությունը և՛ նրա անկախության ապահովման, և՛ ժամանակակից արդյունաբերության ստեղծման, և՛ մշակույթի զարգացման ասպարեզում, այլև XIX դարի սկզբին Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, որով հայ ժողովրդի մի զգալի հատվածը փրկվեց օտարների բնաջնջումից:

Ահա այսպես, սոցիալիզմը ոչ միայն նոր դերով է օժտում խոշոր ժողովրդին, այլև նոր վերաբերմունք է հարուցում նրա նկատմամբ մյուս բոլոր ժողովուրդների մոտ:

Սոցիալիզմի այդ մեծագույն նվաճումներից մեկի՝ ժողովուրդների եղբայրական ամրակուռ բարեկամության հիմնական ու վերջնական լինելը ստուգվեց Հայրենական մեծ պատերազմի դժնի օրերին: Պատերազմը հանդիսացավ սովետական սոցիալիստական հասարակարգի և այդ թվում մասնավորապես սոցիալիստական կյանքով ապրող ժողովուրդների միասնության ու բարեկամության ամրության խստագույն ստուգումը: Չնայած այն բանին, որ պատերազմի ընթացքում ֆաշիստական Գերմանիայի բանակները ժամանակավորապես կարողացան գրավել 6 միութենական հանրապետությունների՝ Լատվիայի, Լիտվայի, Էստոնիայի, Մոլդավիայի, Բելոռուսիայի և Ուկրաինայի ամբողջ տերիտորիաները, ՌՍՖՍՀ տերիտորիայի մի զգալի մասը, այդ թվում մի շարք ինքնավար հանրապետությունների ու մարզերի ամբողջ տե-

րիտորիաները, նրանց չհաջողվեց գրաված մարզերում վերականգնել կապիտալիստական կարգերը։ Այդ մարզերի աշխատունակ բնակչության ճնշող մեծամասնությունը սովետական բանակի հետ հեռացավ Միության արևելյան շրջանները, իսկ մնացածները չընդունեցին գերմանացիների ստեղծած կարգերը, հրաժարվեցին համագործակցել զավթիչների հետ։ Հատկանշական է, որ գերմանական բանակների գրաված շրջաններում մնացած 70 միլիոն սովետական մարդկանցից նրանց հետ կամավոր համագործակցեցին միայն մի քանի հարյուր հազար հոգի՝ մեկ տոկոսից էլ պակաս։ Դրա հետ միասին հատկանշական է, որ մի քանի միլիոն մարդ ակտիվորեն մասնակցեցին գերմանական զավթիչների դեմ մղվող պարտիզանական պատերազմին։

Այս բոլորն անվերապահորեն ապացուցեցին, որ սոցիալիստական հասարակարգն արդեն անվերադարձ հաղթանակել է և սովետական մարդկանց կյանքում սոցիալիզմը դարձել միս ու արյուն, իսկ ինչպես Մարքսն է ասում, լայն զանգվածներին տիրապետած գաղափարը նյութական ուժ է դառնում։

Գերմանական իմպերիալիստները գերագույն ճիգեր թափեցին խարխլելու համար սոցիալիստական կարգերի մյուս մեծ նվաճումը՝ ժողովուրդների բարեկամությունը, ավելի ճիշտ կլինի ասել, նրանք փորձեցին սովետական ժողովուրդներին իրար հակադրելու միջոցով լրացուցիչ ուժեր ստանալ սոցիալիստական կարգերը կործանելու համար։ Սակայն այս բնագավառում էլ նրանց փորձերը լիովին ձախողվեցին։

Գերությունից ազատագրված սովետական տարբեր ազգությունների մարտիկները Ուկրաինայի և Բելոռուսիայի անտառներում կազմակերպեցին ինտերնացիոնալ պարտիզանական ջոկատներ, ինչպես և ակտիվորեն մասնակցեցին եվրոպական գերված ժողովուրդների դիմադրական շարժմանը։ Վերջին տարիներին սովետական և արտասահմանյան առաջավոր հետազոտողների ջանքերով պարզված են նաև Ֆրանսիայի, Իտալիայի, Հարավսլավիայի, Չեխոսլովակիայի, Բելգիայի, Նորվեգիայի հակաֆաշիստական դիմադրական-պարտիզանական շարժմանը սովետական ռազմագերիների ակտիվ մասնակցության բազմաթիվ փաստեր։ Ընդ որում, մասնակիցների թվում եղել են Սովետական Միության համարյա բոլոր ազգությունների ներկայացուցիչներ, որոնք որպես կանոն միավորվել են միասնական ինտերնացիոնալ պարտիզանական ջոկատներում։ Ֆրանսիայի ազատագրմանը մասնակցել են ռազմագերիներից կազմված ռուսական և հայկական պարտիզանական գնդերը, բազմաթիվ ռուս, ուկրաինացի, հայ, ադրբեջանցի, թաթար, բելոռուս և այլ ազգությունների ռազմագերիներ։ Իտալիայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի ազատագրական շարժման հերոսներ են հռչակված, օրինակ, ռուս Պոլետաևը, հայ Դաշտոյանը, ադրբեջանցի Հուսեյին-Զադեն և շատ ուրիշներ։

Ահա այս փաստերում մի անգամ ևս դրսևորվեց սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը, նրանց անսասանելի միասնությունը և կապիտալիզմի ու ճնշման դեմ պայքարող բոլոր առաջավոր ուժերի հետ նրանց պրոլետարական ինտերնացիոնալ համերաշխությունը, որն սկիզբ առավ Փարիզի կոմունայից և այնուհետև լայնորեն դրսևորվեց Հոկտեմբերյան հեղափոխության և 1936—1939 թթ. իսպանական հեղափոխության պաշտպանության ժամանակ։ Հետպատերազմյան տարիներին սոցիալիստական ժողովուրդների նոր փոխհարաբերությունների այդ կարևոր կողմը՝ ինտերնացիոնալ համերաշխությունը բոլոր առաջադեմ և կապիտալիզմի լծից իրենց ազա-



տագրման համար պայքարող ուժերի հետ, իր փայլուն դրսևորումն է գտել Կորեայի, Վիետնամի, Չինաստանի և Կուբայի ժողովուրդների հեղափոխությունները պաշտպանելու, Ինդոնեզիայի, Եգիպտոսի, Սիրիայի, Եմենի, Հնդկաստանի, Բիրմայի և Ասիայի ու Աֆրիկայի շատ ու շատ այլ երկրների ազատագրական շարժումներին ցույց տված քաղաքական և նյութական օգնության բազմաթիվ փաստերում և այժմ էլ հստակորեն արտահայտվում է ամերիկյան ագրեսիայի դեմ հերոսաբար պայքարող Վիետնամի ժողովրդին ցույց տրվող եղբայրական ամենալայն օգնության մեջ։

Սովետական իշխանության տարիներին կյանքի են կոչվել բարեկամության այնպիսի նոր կապեր, որոնք խորթ են կապիտալիստական աշխարհի ազգերին։ Մենք ի նկատի ունենք արվեստի տասնօրյակները, կուլտուր-գիտական մերձեցման բազմաթիվ ձևեր, որոնք վաղուց ի վեր հանդիսանում են սովետական քաղաքացիների հոգևոր սննդի անհրաժեշտ աղբյուրներ։ Սովետական Միության տարբեր ժողովուրդների գրականության և արվեստի լավագույն երկերը սիստեմատիկորեն հրամցվում են մեր քաղաքացիներին, առանց որևէ շահադիտական միտումի, առանց բիզնեսի խոտելի նպատակների։ Ու եթե այժմ սովետական ժողովուրդները լավ ճանաչում են միմյանց, ընդօրինակում են եղբայրների դրական նվաճումները՝ դա պարտական ենք սովետական ազգերի ինտերնացիոնալ կապերին ու նրանց մասսայական շփումներին։

Եզրափակելով, կարող ենք ընդգծել, որ սոցիալիստական հասարակական-տնտեսական կարգի, սկզբունքային նոր հիմքի՝ արտադրամիջոցների համաժողովրդական և խմբային սեփականության հիմքի վրա արմատապես վերափոխելով մարդկանց սոցիալական հարաբերությունները, հաղթահարելով մարդկանց սոցիալական խմբերի և անհատների տնտեսական ու քաղաքական հակամարտությունը, սոցիալիզմը փոխում է նաև նրանց գիտակցությունն ու հոգեբանությունը, ստեղծում նոր, սոցիալիստական մարդուն և որպես այդ պրոցեսի անմիջական արդյունք, նա արմատականորեն փոխում է և մարդկանց սոցիալ-էթնիկական համախմբումների՝ ազգությունների և ազգային խմբերի փոխհարաբերությունները։ Հաստատելով ազգերի իրավական և փաստական հավասարություն, սոցիալիզմը ապահովեց նրանց բուռն ծաղկման ու մերձեցման պրոցեսը, նրանց ընկերական համագործակցությունն ու եղբայրական բարեկամությունը կյանքի բոլոր բնագավառներում։ Ահա սա է ազգերի սոցիալիստական զարգացման և այդ բնագավառում սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մեծագույն նվաճումը։



Մ. ԵԳԱՆՅԱՆ

# ԱՆՀԱՏԻ ԵՎ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՇԱՀԵՐԻ ԶՈՒԳԱԿՑՄԱՆ ՀԱՐՑԻ ԼՈՒԾՈՒՄԸ

Շահ հասկացությունը վերին աստիճանի ընդարձակ և ընդհանուր բնույթ ունի: Այն շոշափում է ինչպես անհատի, այնպես էլ հասարակության կյանքի ամենաբազմազան կողմերը: Այդ բազմազանության մեջ յուրահատուկ տեղ են գրավում մարդկանց նյութական շահերը, որոնք իրենց հերթին տիրող արտադրական հարաբերությունների արդյունք են: Հենց որ փոխվում են մարդկանց արտադրական հարաբերությունները, փոխվում են նաև նրանց շահերի բնույթը և արտահայտման ձևերը:

Ներկա հոդվածով մենք խնդիր չենք դնում հետազոտելու շահերի բազմազան դրսևորումները և դրանց փոփոխման պրոցեսը պատմական առումով: Մեր նպատակն է լուսաբանել միայն անհատի և հասարակության նյութական շահերը՝ սոցիալիստական արտադրական հարաբերությունների ֆոնի վրա և ցույց տալ դրանց մերձեցման ու համընդհանուր շահերի փոխարկման հնարավոր ուղիները:



Սոցիալիզմը կապիտալիզմին փոխարինող սոցիալ-տնտեսական ֆորմացիայի՝ կոմունիզմի ստորին աստիճանն է: Այստեղ մարդկանց արտադրական հարաբերությունները հանդես են գալիս մի կողմից որպես արտադրության միջոցների հանրային սեփականությամբ պայմանավորված շահագործումից ազատ հարաբերություններ և, մյուս կողմից, որպես սոցիալ-տնտեսական տեսակետից ոչ հավասար հարաբերություններ:

Որպես արտադրության միջոցների հանրային սեփականության վրա խարսխված հարաբերություններ, սոցիալիստական արտադրական հարաբերություններն իրենց միասնության մեջ հակասական չեն. դրանք համագործակցության և փոխադարձ օգնության հարաբերություններ են, իսկ որպես սոցիալ-տնտեսական առումով ոչ հավասար հարաբերություններ, դրանք դրսևորվում են իբրև տարբեր պայմաններում աշխատող, տարբեր ունակություններ գործադրող և այդ հիման վրա ընդհանրական հասարակական արդյունքից տարբեր բաժին ստացող մարդկանց հարաբերություններ:

Սոցիալիզմի ժամանակ մարդկանց միջև տնտեսական այդպիսի անհա-



վասարությունը մարքսիզմի կլասիկները նախատեսել ու գնահատել են որպես կոմունիստական ֆորմացիայի դեռևս ոչ լիակատար հասունության արդյունք և այն որակել են որպես բուրժուական իրավունքի գոյություն՝ բաշխման բնագավառում: Երբ հասարակության արտադրողական ուժերը կզարգանան այն աստիճան, որ հնարավոր կդառնա լիակատար ձևով բավարարել նրա անդամների պահանջները և երբ դրան զուգընթաց աստիճանաբար կվերանան մարդկանց միջև սոցիալ-տնտեսական տարբերությունները, ինքնըստինքյան կվերանա նաև բուրժուական իրավունքը բաշխման բնագավառում:

Սոցիալիզմի ժամանակ աշխատանքը անմիջականորեն հասարակական աշխատանք է, բայց բոլոր դեպքերում այն տրոհվում է անհրաժեշտ ու հավելյալ մասերի: Անհրաժեշտ աշխատաժամանակում արտադրողն արդյունք է ստեղծում իր, իսկ հավելյալ աշխատաժամանակում՝ հասարակության համար: Եվ քանի որ մարդկանց աշխատաժամանակը, աշխատանքը և աշխատանքի արդյունքը տրոհվում են երկու մասի՝ իր և հասարակության համար, ապա անհրաժեշտաբար առաջանում է նաև անհատի և հասարակության շահերի հարցը: Անհատը շահագրգռված է իր սեփականությունը կազմող աշխատուժը ծախսել ռացիոնալ կերպով և հասնել բարձր արտադրական ցուցանիշների այն պայմանով, որ դրան զուգընթաց բարձրանա աշխատավարձը, իսկ հասարակությունը մտահոգված է, որ իր սեփականությունը հանդիսացող արտադրության միջոցները օգտագործվեն բարձր արդյունավետությամբ և արտադրվեն ավելի շատ ու որակյալ նյութական բարիքներ՝ իր աճող պահանջները բավարարելու համար:

Առաջին հայացքից թվում է, թե ըստ աշխատանքի բաշխումը և աշխատանքի տրոհումը անհրաժեշտ ու հավելյալ մասերի, շոշափում են միանգամայն տարբեր խնդիրներ և, հետևապես, դրանք իրար հետ առնչություն չունեն: Մինչդեռ դա այդպես չէ. դրանք միևնույն մեդալի երկու կողմերն են: Եթե բաշխումը չկատարվի ըստ աշխատանքի, բոլորովին անհրաժեշտություն չի լինի բանվորական օրը տրոհել երկու մասի: Միայն այն պատճառով, որ սոցիալիզմի ժամանակ մարդիկ աշխատում են ըստ իրենց ընդունակությունների և նյութական բարիքներ ստանում ըստ կատարած աշխատանքի քանակի ու որակի, անհրաժեշտ է դառնում աշխատանքի արդյունքը բաժանել երկու մասի, հսկողություն սահմանել աշխատանքի վրա և աշխատանքի արդյունքի ավելացման համեմատ մեծացնել աշխատողների վարձատրությունը:

Սոցիալիզմի առանձնահատուկ գծերից մեկն էլ այն է, որ, չնայած արտադրության միջոցների հանրային բնույթին, նյութական բարիքներ արտադրող ձեռնարկություններն իրար հետ տնտեսական հարաբերությունների մեջ են գտնվում որպես հարաբերականորեն ինքնուրույն միավորներ, ըստ որում այդ հարաբերությունները իրացվում են ապրանքա-դրամական ձևով: Ինքնին հասկանալի է, որ նրանցից յուրաքանչյուրը շահագրգռված է իր ծախքերը լրիվ չափով հատուցել արտադրանքի իրացումից ստացվող միջոցներով և ստանալ բավականաչափ շահույթ ինչպես արտադրությունը զարգացնելու ու կատարելագործելու, այնպես էլ իր կոլեկտիվի կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու համար: Այստեղից էլ բխում է ձեռնարկության, որպես ինքնուրույն տնտեսական միավորի, և հասարակության շահերի ճիշտ զուգակցման հարցը: Անհրաժեշտ է ձեռնարկությունների փոխադարձ հարաբերությունները և յուրաքանչյուր ձեռնարկության ու պետության (որն անձնավորում է սովետական հասարակությունը) հարաբերությունները կարգավորել

այնպես, որ բոլոր ձեռնարկությունները հնարավորություն ունենան և շահագրգռված լինեն արտադրությունը ռացիոնալ վարելու:

Մարդկանց միջև գոյություն ունեցող տնտեսական տարբերությունները, ինչպես նաև անհատի, ձեռնարկության և հասարակության առանձին շահերը սոցիալիզմի ժամանակ ոչ միայն չեն հակադրվում միմյանց, այլև իրենց փոխադարձ ներգործությամբ հնարավորություններ են տալիս ստեղծելու սոցիալ-տնտեսական այնպիսի հիմքեր, որոնց վրա մերձենում, ներդաշնակորեն զուգորդվում են դրանք:

Քանի դեռ այդ հիմքերը լիովին չեն ստեղծված, անհրաժեշտ է ամբողջ հասարակական արտադրության և նրա յուրաքանչյուր ստորին օղակի աշխատանքները կազմակերպել նյութական շահագրգռվածության սկզբունքից ելնելով, այնպես, որ յուրաքանչյուր անհատի, ձեռնարկության ու նրա կոլեկտիվի եկամուտները աճեն արտադրական նվաճումների համեմատ: Միայն այս դեպքում է հնարավոր մշտապես զարգացնել ու կատարելագործել արտադրությունը և ապահովել նրա արդյունավետության բարձրացումը: Պետք է նկատի ունենալ, ինչպես Էնգելսն է նշել, որ յուրաքանչյուր հասարակարգի տնտեսական հարաբերությունները դրսևորվում են, ամենից առաջ, որպես շահեր: Իհարկե, սոցիալիստական արտադրությունը հիմնված է արտադրության միջոցների հանրային սեփականության վրա և այդ հանգամանքը ստեղծում է շահերի միասնություն: Բայց այդ միասնությունը չի կարող իրագործվել այլ կերպ, քան ձեռնարկության, նրա կոլեկտիվի և յուրաքանչյուր անհատի պահանջմունքների բավարարումը կախման մեջ դնելով նրանց ձեռք բերած արտադրական հաջողություններից:

Քանի որ անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերը դրսևորվում են որպես հարաբերականորեն ինքնուրույն շահեր, քննենք դրանց հարաբերությունների հարցը:



Անհատի շահն իրագործվում է նրա նպատակասլաց գործունեության միջոցով: Եթե նա աշխատում է արտադրության մեջ և գործում է որոշակի ուղղությամբ, ապա այդ գործողությունը հարուստ դրսևորում կունենա միայն այն դեպքում, եթե այն պսակվում է նրա պահանջմունքների ավելի լավ բավարարմամբ: Հենց պահանջմունքների բավարարման շահն է, որ նրան մղում է ավելի ակտիվ գործողության: ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. սեպտեմբերյան պլենումը նշեց, որ մինչև այժմ ձեռնարկություններում, որպես կանոն, աշխատանքի վարձատրման չափը չի կապվել ձեռնարկության եկամտաբերության մակարդակի ու չափի հետ: Եվ իրոք, 1959—63 թթ. ընթացքում արդյունաբերության ընդհանուր շահույթն ավելացել է 84 տոկոսով, իսկ մեկ աշխատողի հաշվով՝ 44 տոկոսով, այնինչ այդ ժամանակամիջոցում ձեռնարկության ֆոնդը մեկ աշխատողի հաշվով աճել է ընդամենը 10 տոկոսով, իսկ զանազան տեսակի լրացուցիչ վարձատրումները՝ 2 տոկոսով:

Հասկանալի է, որ այդպիսի պայմաններում աշխատողները իրենց առաջադրանքների կատարման գործում բարձր ակտիվություն չեն ցուցաբերի: Աշխատանքը խրախուսելու և ավելի մեծ արտադրական արդյունքի հասնելու գլխավոր պայմանը մարդկանց վարձատրումն է ըստ նրանց կատարած աշխատանքի քանակի ու որակի: «Անձնական շահագրգռվածությունը,— ասում է Վ. Ի. Լենինը,— բարձրացնում է արտադրությունը. մեզ ամենից առաջ պետք



է, ինչ գնով էլ որ լինի, արտադրության բարձրացում» (В. И. Ленин, Полн. соб. соч., т. 44, стр. 152):

Որպեսզի վարձատրությունը կատարվի յուրաքանչյուր անհատի գործադրած ջանքերին համապատասխան, պահանջվում է մի կողմից նկատի ունենալ գործադրվող աշխատանքի վերարտադրության կենսական պահանջները և, մյուս կողմից՝ աշխատանքի պայմանները: Առանց հաշվի առնելու աշխատողի մասնագիտական որակը և աշխատանքի պայմանները (ծանրությունը, վնասակար ազդեցությունը, բնակլիմայական պայմանները և այլն), անհնար է սոցիալիստական սկզբունքով բաշխում սահմանել:

Աշխատուժի վերարտադրությունը չափվում է բանվորի և նրա ընտանիքի կողմից գործադրվող նվազագույն կենսամիջոցների արժեքով: Դրա համար էլ պահանջվում է նվազագույն աշխատավարձը սահմանել՝ ելնելով այդ արժեքից:

Սովետական պետությունը, ելնելով այդ պահանջներից, վերջին տասը տարում կարգավորեց աշխատավարձը՝ կուրս ընդունելով աստիճանաբար բարձրացնել ցածր և միջին վարձատրվող աշխատողների աշխատավարձը: Այդ միջոցառումների կենսագործման շնորհիվ յոթնամյակի ընթացքում միջին աշխատավարձը բարձրացավ 19 տոկոսով, այդ թվում նվազագույն աշխատավարձը՝ 33 տոկոսով: Նոր հնգամյա պլանում նախատեսվում է միջին աշխատավարձը բարձրացնել ևս 20 տոկոսով, իսկ նվազագույն աշխատավարձը հասցնել 60 ռուբլու: Գյուղի աշխատավորների շահագրգռվածությունը բարձրացնելու համար կարևոր նշանակություն ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումի որոշումները: Կոլտնտեսություններին և սովխոզներին գյուղատնտեսական մթերքների գնման ռեալ պլանների իջեցումը, պետական գնման գների բարձրացումը, կոլտնտեսություններին վաճառվող արտադրամիջոցների գների իջեցումը և բազմաթիվ այլ միջոցառումներ ռեալ պայմաններ ստեղծեցին գյուղի աշխատավորության եկամուտները բարձրացնելու համար:

Արտադրության մեջ աշխատավորների շահագրգռվածությունը բարձրացնելու հիմնական պայմաններից մեկն էլ վարձատրության ձևերի կատարելագործումն է: Եթե աշխատավարձի չափը սահմանվում է ելնելով յուրաքանչյուր աշխատողի կատարած աշխատանքի քանակից ու որակից, ապա դա չի նշանակում, որ պետք է հաշվի առնել միայն նրանց պրոֆեսիան և դրա շրջանակներում յուրաքանչյուրի մասնագիտական կարգը կամ աստիճանը: Անհրաժեշտ է դրան զուգընթաց նկատի ունենալ արտադրանքի որակը, այլապես շահագրգռվածությունը կլինի թերի, ոչ լիակատար:

Նույն մասնագիտության սահմաններում մարդկանց աշխատանքի գնահատումն ըստ արտադրանքի պետք է կատարվի ոչ թե վերևից, կենտրոնացված կարգով, այլ յուրաքանչյուր արտադրական օբյեկտում առանձին վերցրած, կամ էլ ելնելով ստանդարտից, ճյուղային մասշտաբով: Պետք է ասել, որ նման ձևով աշխատավարձի կարգավորումը տակավին դեռ չի լուծված:

Ելնելով ըստ աշխատանքի որակի վարձատրման տեսակետից, պետք է անբավարար համարել նաև առ այսօր կիրառվող անհատական անսահմանափակ գործարքային սիստեմը: Այդ սիստեմի դեպքում աշխատողն իր հիմնական ուշադրությունը բևեռում է արտադրանքի քանակական կողմի վրա, որովհետև նա վարձատրվում է քանակի համար: Նշանակում է, պետք է վարձատրման գործարքային սիստեմը կատարելագործել այնպես, որ արտա-

դրողները հավասարապես ուշադրություն դարձնեն նաև արտադրանքի որակի վրա։ Արտադրանքի որակի բարձրացմանը չի նպաստում և այն, որ ինժեներատեխնիկական անձնակազմը պրեմիալ վարձատրություն է ստանում միայն ինքնարժեքի իջեցման և պլանների կատարման ու գերակատարման համար, մինչդեռ անհրաժեշտ է այդ շաղկապել նաև որակական ցուցանիշների բարձրացման հետ։

Սրանք են, մեր կարծիքով, անձնական շահագրգռվածության բարձրացման հիմնական գործոններից մի քանիսը։

Ըստ աշխատանքի վարձատրությունը արտադրողների շահագրգռվածության բարձրացման միակ գործոնը չէ։ Սոցիալիզմի ժամանակ կարևոր նշանակություն է ստացել նաև բարոյական գործոնը, այն գիտակցությունն ու համոզմունքը, որ իրենց աշխատանքի արդյունքը բոլոր դեպքերում օգտագործվում է ամբողջ հասարակության, այդ թվում և իրենց բարօրության համար։



Անհատը գործում է կոլեկտիվում։ Սոցիալիզմի ժամանակ անհատի և կոլեկտիվի միջև ստեղծվել են նոր փոխհարաբերություններ։ Քանի որ արտադրության միջոցների հանրայնացման ու շահագործման վերացման բազայի վրա վերացվել է անտագոնիստական հակասությունը անհատի և հասարակության միջև և նրանց շահերը զուգակցվում են ներդաշնակ ձևով, ապա հասկանալի է, որ կոլեկտիվը, որպես հասարակությանստորին բջիջ, պետք է հավասարապես շահագրգռված լինի պաշտպանելու թե՛ անհատի և թե՛ հասարակության շահերը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. սեպտեմբերյան պլենումը նշեց, որ ձեռնարկություններում աշխատավարձի մակարդակը պետք է սերտորեն կապվի արտադրության եկամտաբերության հետ։ Այդ կապակցությամբ պլենումը խնդիր դրեց՝ ձեռնարկություններում ստեղծել խրախուսանքի ֆոնդեր, ստացվող շահույթից հատկացում կատարելով այդ նպատակով։ Ահա հենց այդ ֆոնդից է, որ պետք է վճարվեն բոլոր տեսակի պրեմիաները։ Այդ պրեմիաները կազմում են աշխատավորների աշխատավարձի մի մասը, այն մասը, որը չի կարող սահմանվել վերևից, կենտրոնացած կերպով։ Որպես արտադրության միջոցների համաժողովրդական սեփականությունն անձնավորող սուբյեկտ՝ պետությունը վերևից, կենտրոնացած կարգով սահմանում է յուրաքանչյուր աշխատողի աշխատավարձի չափը, բայց լրացուցիչ աշխատավարձը վերջինս ստանում է աշխատանքի անմիջական վայրում։ Հարց է ծագում. ի՞նչ միջոցներից նա կարող է ստանալ պրեմիալ վարձատրություն, որպես աշխատավարձի ավելացում։ Բնական է, որ պրեմիայի միակ աղբյուրը կարող է լինել ձեռնարկության զուտ եկամուտը կամ շահույթը։ Հենց այստեղ էլ անհրաժեշտաբար հանդես է գալիս կոլեկտիվի ու ձեռնարկության շահերի զուգակցման խնդիրը։ Ձեռնարկությունը շահագրգռված է արտադրության արդյունավետության բարձրացման միջոցով մեծացնել իր շահույթը, իսկ շահույթի մեծացումը իր հերթին նպաստում է աշխատավարձի բարձրացմանը։ Որքան մեծ լինի ձեռնարկության ստացած շահույթը, այնքան մեծ կլինի նրա մասը կազմող պրեմիալ աշխատավարձի ֆոնդը։ Բայց այս կապակցությամբ ծագում է մի նոր հարց, այն, որ ձեռնարկությունն այդ շահույթն ստանում է ոչ միայն արտադրողների անհատական ջանքերի հետևանքով, այլև գերազանցապես կոլեկտիվի ընդհանուր ջանքերի շնորհիվ։ Իսկ կոլեկտիվ աշխատանքը անհատական աշխատանքի մեխանիկական գումարը չէ, այն, ինչպես Մարքսն է նշում, ծնում է նոր արտադրողական ուժ։ Հենց դրա համար էլ պրեմիալ վարձատրությունը պետք է կախման մեջ դնել ձեռնարկության, նրա կոլեկտիվի կողմից ձեռք բերվող ընդհանուր արդյունքից։ Որքան համախմբված լինի կոլեկտիվը, բարձրացնի իր աշխատանքային հմտությունը, կրճատի ամեն տեսակի պարապուրդները, աշխատանքի պրոցեսը կազմակերպի գիտական հիմունքներով և այդ բոլորով ավելի մեծ և որակյալ արդյունք ստեղծի հասարակության համար, այնքան կմեծանա նրա լրացուցիչ վարձատրության ֆոնդը։

Կոլեկտիվը բացառիկ դեր է խաղում անհատի դաստիարակման, նրա արտադրական ունակությունների կատարելագործման և կարգապահության բարձրացման գործում։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը դեռ իրենց գործունեության վաղ շրջանում գրում էին, որ միայն կոլեկտիվում է անհատն ստանում միջոցներ՝ բազմակողմանիորեն զարգացնելու իր ունակությունները (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 75)։

Ներդաշնակորեն զուգակցելով անհատի ու հասարակության շահերը, սոցիալիզմը բոլոր աշխատավորների համար լայն հնարավորություններ ստեղծեց դրսևորելու իրենց ստեղծագործական եռանդն ու ընդունակությունները։ Դրա հետ մեկտեղ նա բարձրացրեց անհատի հասարակական պարտքի զգացումը և առաջադրեց՝ «Մեկը բոլորի համար, բոլորը մեկի համար» սկզբունքը։ Բայց այդ ամենը դեռևս չի նշանակում, որ արտադրության բոլոր աշխատողները լիովին ձերբազերծվել են հին սովորություններից ու տրադիցիաներից, որ նրանց մեջ չկան այնպիսիները, որոնք գերադասում են գլուխ պահել, քիչ արդյունք տալ և շատ ստանալ, խախտում են աշխատանքային կարգապահությունը և այլն։ Սոցիալիզմի զարգացման արդի էտապում, դժբախտաբար, այդպիսի մարդիկ դեռ կան և նրանք խանգարում են մեր առաջընթացին։ Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունը պահանջում է ուժեղացնել պայքարը լոդրերի, ծույլերի, աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահությունը խախտողների դեմ, և նոր մարդու դաստիարակության համար լիովին օգտագործել ներգործության բոլոր միջոցները։

Անհատի և կոլեկտիվի շահերի միասնությունը արտահայտվում է նաև այն բանում, որ ձեռնարկության կողմից ստացվող շահույթի մի մասն առանձնացվում է կոլեկտիվի և նրա անդամների կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու համար։ Քանի որ շահույթի այդ մասը նոր տնտեսական ռեֆորմի համաձայն նույնպես որոշվում է նախօրոք սահմանվող նորմատիվով, ապա պարզ է, որ այդ ֆոնդի աճն ամբողջապես կախված է ձեռնարկության ընդհանուր շահույթի աճից։

Վերջապես, անհատի և կոլեկտիվի շահերի ընդհանրությունը բխում է ժամանակակից արտադրության բնույթից։ Արտադրության պրոցեսն ընթանում է որպես հաջորդաբար մի օղակից մյուսն անցնող և իրար հետ շաղկապված աշխատանքային պրոցես։ Եվ եթե նրա որևէ օղակում առաջանում է խափանում, ապա այն անխուսափելիորեն ազդում է նաև մյուս օղակների աշխատանքի վրա։ Դրա համար էլ կոլեկտիվը և, հատկապես, նրա ղեկավար կորիզը պետք է ամբողջ աշխատանքի պրոցեսը պլանավորեն գիտականորեն և խիստ հսկողություն սահմանեն յուրաքանչյուր օղակի աշխատանքի վրա։

Այսպիսով, անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերը հանդես են գալիս միասնաբար, միևնույն տնտեսական հիմքի վրա։

Անհատի և հասարակության շահերի միասնության լրիվ պատկերը տա-
լու համար անհրաժեշտ է գեթ համառոտակիորեն կանգ առնել նաև ձեռնար-
կության, որպես հարաբերականորեն ինքնուրույն տնտեսական միավորի, շա-
հերի վրա:
Յուրաքանչյուր արտադրական ձեռնարկություն որոշակի հարաբերու-
թյունների մեջ է գտնվում ինչպես պետության, այնպես էլ մյուս ձեռնարկու-
թյունների ու առաքող կազմակերպությունների հետ: Այդ հարաբերություն-
ները, ինչպես նշել ենք, իրացվում են ապրանքա-դրամական ձևով: Որպեսզի
ձեռնարկությունը շահագրգռված լինի անընդհատ մեծացնել և բարձրացնել
արտադրանքի չափը, նա պետք է հնարավորություն ունենա մի կողմից զար-
գացնելու և կատարելագործելու արտադրությունը և, մյուս կողմից, մեծաց-
նելու լրացուցիչ վարձատրման և աշխատավորների կուլտուր-կենցաղային
պայմանների բարելավման ֆոնդերը: Իսկ այդ կախված է այն հանգաման-
քից, թե նրա արտադրանքի ռեալիզացիայի համար վաճառքի ինչ գներ կսահ-
մանի պետությունը, ինչ նորմաներով կգանձի ձեռնարկությունում ստեղծվող
շահույթի մի մասը՝ և, վերջապես, ինչ հնարավորություններ կստեղծվեն ընդ-
լայնելու ձեռնարկության իրավունքները արտադրության կազմակերպման
գործում:
ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը արձանագրեց, որ մինչև այժմ
ձեռնարկության տնտեսական հաշվարկը մեծ չափով նորմալ բնույթ չի կրել,
նրան չեն թողնվել բավականաչափ միջոցներ՝ արտադրության զարգացման
ու ռացիոնալացման համար, անհրաժեշտ չափով միջոցներ չի ունեցել լրա-
ցուցիչ վարձատրության համար և այլն: Այդ պատճառով էլ անհրաժեշտ չա-
փով չի դրսևորվել ձեռնարկության, նրա կոլեկտիվի շահագրգռվածությունը՝
արտադրության արդյունավետության բարձրացման գործում: Պետք է նշել
արտադրության արդյունավետության բարձրացման գործում: Պետք է նշել
նաև այն, որ արդյունաբերության կառավարման բնագավառում ավելի մեծ
դեր է խաղացել վարչարարությունը, քան տնտեսական խթանումը:
Նոր տնտեսական ռեֆորմի էությունը հենց նրանումն է, որ տնտեսական
հաշվարկը դրվի իր կոչման բարձրության վրա, ընդլայնվեն ձեռնարկության
իրավունքները, կարգավորվեն ձեռնարկության և կոլեկտիվի, ձեռնարկության
և պետության հարաբերությունները՝ ելնելով տնտեսական խթաններից:
Տնտեսական ռեֆորմի համաձայն ձեռնարկությունը շահագրգռված է ար-
տադրական ֆոնդերը ռացիոնալ օգտագործել, որովհետև նրանց համար նա
պետք է պետությանը վճարի արտադրվող զուտ եկամտի մի մասը: Ձեռնար-
կությունը շահագրգռված է արտադրանքի որակը բարձրացնել, որովհետև նրա
զուտ եկամտի աճը, ֆոնդերի մեծացումը կախված են ոչ թե համախառն ար-
տադրանքի ծավալից, այլ իրացված արտադրանքի չափից: Վերջապես, ձեռ-
նարկությունը շահագրգռված է բարձրացնել եկամտաբերությունը և իր եկա-
մուտների հաշվին ապահովել արտադրության կատարելագործումը և շրջանա-
ռու միջոցների մեծացումը, որովհետև նրա այդ ծախսերը այլևս չեն կատար-
վելու պետական բյուջեի հաշվին:
Այսպիսով, տնտեսական խթանները, տնտեսական մեթոդներով արդյու-
նաբերության կառավարումը բարձրացնում են յուրաքանչյուր ձեռնարկության
պատասխանատվությունը արտադրական ֆոնդերի ռացիոնալ օգտագործման,
արտադրանքի որակի բարձրացման և պետական առաջադրանքների կատար-
ման գործում: Ըստ որում այդ պատասխանատվության բարձրացումը սերտո-
րեն առնչվում է ձեռնարկության շահագրգռվածության բարձրացման հետ,



որովհետև արտադրանքի քանակական ու որակական աճը զուգորդվում է նրա եկամուտների աճով:

Արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից մեկն էլ ձեռնարկության իրավունքների ընդլայնումը և ձեռներեցության բարձրացումն է: Տնտեսական ռեֆորմով արգելվում է միջամտել ձեռնարկության արտադրական պրոցեսի կազմակերպման հարցերին, նրա վզին փաթաթել արտադրության միջոցներ, որոնց կարիքը նա չի զգում, արտակարգ հանձնարարություններ տալ նրան՝ առանց հատուցելու դրա հետ կապված լրացուցիչ ծախսերը, բոլոր պլանային ցուցանիշները իջեցնել վերևից և այլն: Ձեռնարկությունը արտադրության պրոցեսի կազմակերպման, պլանավորման ու կատարելագործման, ինչպես նաև իր միջոցների նպատակահարմար օգտագործման ասպարեզներում միանգամայն ինքնուրույն է:

Ինչ վերաբերում է ձեռնարկությունների, նրանց և առաքող կազմակերպությունների փոխհարաբերություններին, ապա այդպիսիք կարգավորվում են պետության կողմից՝ ելնելով տնտեսական խթաններից: Պետությունը, ելնելով ժողովրդական տնտեսության զարգացման և հասարակության սպառողական պահանջների բավարարման շահերից, սահմանում է ձեռնարկությունների հիմնական պլանային ցուցանիշները, արտադրանքի գինը, մշակում է արտադրական ֆոնդերի օգտագործման համար պետությանը վճարվող շահույթի նորմատիվները, աշխատավարձի չափը և ձեռնարկությունների ֆոնդերի նորմատիվները: Այդ ամենով պետությունը ապահովում է հասարակության և ձեռնարկության շահերի զուգորդումը:

***

Մասնավոր սեփականատիրական հարաբերությունների վրա հենված դասակարգային հասարակություններում հանդես էին գալիս միմյանցից մեկուսացած և իրար հակադրված մասնավոր շահեր: Կապիտալիզմի ջատագովները, գործադրելով բոլոր միջոցները, ջանում են ապացուցել, որ բուրժուական պետությունը անձնավորում է ժողովրդի շահերը, որ մոնոպոլիաների ստեղծումը, այսպես կոչված կապիտալի դեմոկրատացումը, մոնոպոլիայի և պետության սերտաճումը հետզհետե ստեղծում են շահերի ընդհանրություն և այլն: Մարքսիզմի կլասիկները վաղուց են ապացուցել, որ այն հասարակությունում, որտեղ մեկը արտադրության միջոցների ու արտադրվող բոլոր բարիքների տերն է, իսկ մյուսը զուրկ, որտեղ կան շահագործողներ և շահագործվողներ և, վերջապես, որտեղ տիրում է գայլային օրենքը, այնտեղ չի կարող գոյություն ունենալ շահերի ընդհանրություն: Մարքսը դեռ պետական իրավունքի Հեգելի փիլիսոփայական իր քննադատության շարադրանքում նշել է, որ համընդհանուր շահը հնարավոր է դարձնել առանձնահատուկ միայն այն պայմանում, երբ առանձնահատուկ շահը դառնա իրոք համընդհանուր, իսկական պետության մեջ խոսքը կլինի ոչ թե այն մասին, որ յուրաքանչյուր քաղաքացի իրեն նվիրի համընդհանուր վիճակին, այլ այդ վիճակի ընդհանրության մասին, որ այդ վիճակը լինի համընդհանուր, այսինքն՝ դառնա յուրաքանչյուր քաղաքացու վիճակը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 1, стр. 273—276):

Բուրժուազիան չի կարող այդպիսի համընդհանուր վիճակ ստեղծել և այդ հիման վրա զուգորդել անհատի ու հասարակության շահերը:

Միայն սոցիալիզմն է, որ ստեղծում է շահերի ընդհանրության սոցիալ-տնտեսական պայմանները: Վերացնելով արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը և այդ հիման վրա մարդու կողմից մարդու շահագործումը, սոցիալիզմն իրոք բոլորի համար համընդհանուր գոյավիճակ կամ կացություն ստեղծելու ուղի հարթեց:

Սոցիալիզմը և կոմունիզմը ինքնաբերաբար չեն ծագում և զարգանում, այլ ստեղծվում են գիտակցորեն, պլանաչափորեն և կազմակերպված հասարակական ջանքերի գործադրումով: Այնքանով, որքանով սոցիալիստական պետությունը պաշտպանում, կատարելագործում է ու զարգացնում հասարակական արտադրությունը և այդ հիման վրա ապահովում հասարակության բոլոր անդամների բարեկեցության բարձրացումը, դասակարգերի վերացումը և մարդկանց սոցիալ-տնտեսական հավասարեցումը, նա արտահայտում է ժողովրդի ընդհանուր շահերը: Բայց այնքանով, որքանով դեռ պահպանվում են մարդկանց դասակարգային և սոցիալ-տնտեսական տարբերությունները, պետությունը նյութական բարիքների բաշխումը կատարում է ելնելով սոցիալ-տնտեսական տեսակետից ոչ հավասար մարդկանց շահերից: Հետևապես, որպեսզի շահերի տնտեսական հավասարեցում ստեղծվի մարդկանց միջև, անհրաժեշտ է վերացնել նրանց սոցիալ-տնտեսական տարբերությունները: Այդ պետք է կատարվի աստիճանաբար, արտադրողական ուժերի զարգացման, միասնական կոմունիստական սեփականության և նյութական բարիքների առատության ստեղծման հիման վրա:

Քանի դեռ այդ պրոցեսը չի ավարտված, պետք է հասարակության զարգացումը խարսխել անհատի և հասարակության շահերի ճիշտ զուգակցման վրա:

МЕК ՇՆՉԻՆ ԸՆԿՆՈՂ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԹՈՂԱՐԿՈՒՄԸ ՍՍՀՄ-ՈՒՄ ԵՎ ՈՐՈՇ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ 1965 ԹՎԱԿԱՆԻՆ

| | Չափի միավոր | ՍՍՀՄ | ԱՄՆ | Անգլիա | Ֆրանսիա |
|---|---|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա (համախառն արտադրանք) | կվտ. ժամ | 2198 | 6270 | 3572 | 2165 |
| Նավթ | կգ | 1053 | 1978 | — | — |
| Գազ | մ$^3$ | 561 | 2344 | 272 | 181 |
| Քարածուխ | կգ | 2506 | 2450 | 3489 | 1105 |
| Չուգուն | կգ | 287 | 444 | 322 | 321 |
| Պողպատ | կգ | 395 | 626 | 503 | 401 |
| Երկաթաքար | կգ | 665 | 468 | 276 | 1229 |
| Հանքային պարարտանյութեր (պայմ. միավոր) | կգ | 136 | 257 | 92,9[1] | 301 |
| Անտառանյութ (փոխադրում) | խտ մ$^3$ | 1,6 | 1,6[1] | 0,06[1] | 0,9[1] |
| Ցեմենտ | կգ | 314 | 334 | 311 | 462 |
| Բամբակե գործվածքեղեն | մ$^2$ | 25,9 | 46,4 | 17,3 | 23,6 |
| Բրդյա գործվածքեղեն | մ | 1,6 | 1,3 | 3,8 | 2,3 |
| Շաքարավազ | կգ | 38,7 | 23,6 | 15,8 | 43,8 |
| Կենդանական յուղ (ներառյալ բնակչության անհատական տնտեսություններում արտադրվածը) | կգ | 5,1 | 3,2 | 0,5[1] | 9,4 |

[1] 1964 թ.

Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ

# ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԸ ԵՎ ՏԻԵԶԵՐՔԸ

Բնության ուսումնասիրման պրոցեսում ամենից առաջ աչքի են ընկնում առարկաների և երևույթների շարժումն ու փոփոխությունը, նրանց մի ձևից մյուսին անցնելը: Մատերիայի յուրաքանչյուր կոնկրետ ձևի, տիեզերական յուրաքանչյուր մարմնի փոփոխությունը հանգեցնում է նրան, որ այդ ձևը դրսևորի, ծավալի իր որակական ողջ հարստությունը, դրանով սպառի ինքն իրեն և, որպես այդպիսին, դադարի գոյություն ունենալուց:

Կոնկրետ երևույթների ու առարկաների ծնվելու, զարգացման ու մահացման այս անվերջ հերթափոխությունը, բնականաբար, հարուցում է այն հարցը, թե ամբողջությամբ վերցրած տիեզերքի համար էլ գոյություն ունի՞ արդյոք շարժման, զարգացման որևէ ուղղություն, թե՞ ոչ: Դեպի ո՞ւր է ընթանում ողջ տիեզերքի փոփոխությունը, արդյոք զարգացման գաղափարը կիրառելի՞ է տիեզերքի նկատմամբ, թե ոչ:

Այս հարցը հառնել է մարդկության առջև դեռևս նրա գոյության արշալույսին: Հունական փիլիսոփա և մաթեմատիկոս Պյութագորասի կարծիքով տիեզերական զարգացումն ընթանում է փակ շրջանով: Նա գտնում էր, որ գոյություն ունի տիեզերական տարի, որը հավասար է 1080 երկրային տարվա: Ինչպես որ մեկ երկրային տարում Երկրի վրա տեղի է ունենում եղանակի որոշ պարբերական հերթափոխություն, այնպես էլ մեկ տիեզերական տարում տիեզերքը, ամբողջությամբ վերցրած, կատարում է մեկ լրիվ պտույտ և վերադառնում իր նախնական վիճակին:

Նոր ժամանակաշրջանում մեխանիկայի և աստղագիտության զարգացումը հնարավորություն ընձեռեց բավականին ճշգրիտ նկարագրելու երկնային մարմինների շարժման օրինաչափությունները, էներգիայի պահպանման օրենքի հայտնագործմամբ մշակվեց մեխանիկական շարժման ընդհանուր տեսություն, մասնավորապես բացահայտվեց ջրի շրջապտույտը երկրի վրա և այլն: Սակայն գիտական մտածելակերպի վրա մետաֆիզիկական հայացքների ազդեցության հետևանքով այս նվաճումները դիտվեցին որպես փաստական ապացույց այն բանի, որ իրոք տիեզերքը, ամբողջությամբ վերցրած, ժամանակի մեջ կրկնում է ինքն իրեն:

Դիալեկտիկական մատերիալիզմը, հենվելով գիտության հետագա նվաճումների վրա, ցույց տվեց, որ տիեզերական շարժումը չի ընթանում փակ

շրջանով։ Հավերժ փոփոխվող մատերիան ժամանակի ընթացքում ոչ թե կրկնում է ինքն իրեն, այլ դրսևորում իր որակական անսահման բազմազանությունն ու հարստությունը, երբեք չվերադառնալով իր անցած վիճակին, երբեք չսպառելով ինքն իրեն։

Սակայն դիալեկտիկական մատերիալիզմի այս հանրահայտ դրույթը իր որոշ կողմերով դեռևս կարիք ունի լուսաբանման։ Հարցը նրանում է, որ առաջին հայացքից միանգամայն ակնհայտ թվացող զարգացման գաղափարը ինքնին կապվում է որոշ տրամաբանական բնույթի դժվարությունների հետ։ Դրանք ավելի են մեծանում, երբ փորձում ենք զարգացման գաղափարը կիրառել ողջ տիեզերքի վրա։

Նախ՝ ի՞նչ ենք հասկանում վերընթաց զարգացում կամ, պարզապես, զարգացում ասելով։ Ամենապարզ և տարածված ըմբռնման համաձայն զարգացումը հասկացվում է որպես երևույթի, առարկայի անցումը **ցածր** վիճակից **բարձր** վիճակի։ Իսկ ի՞նչ է նշանակում «ցածր» և «բարձր». ի՞նչ չափանիշով են նրանք զատվում միմյանցից։ Որոշ երևույթների նկատմամբ այս չափանիշը ակնհայտ է թվում։ Օրինակ, այն պնդումը, որ մարդն ավելի զարգացած է, քան երեխան, հիմնավորվում է նրանով, որ մարդու՝ աշխարհը ճանաչելու և վերափոխելու հնարավորությունները ավելի շատ են, քան երեխայինը։ Այս նույն անալոգիան, թերևս, հնարավոր լինի տարածել նաև որոշ կենդանի օրգանիզմների վրա, սակայն այն անիմաստ է դառնում, երբ փորձում ենք տարածել անօրգանական մատերիայի վրա։

Իրոք, ենթադրենք, թե արեգակնային համակարգությունն առաջացել է ըստ Կանտի-Լապլասի հիպոթեզի։ Ի՞նչ չափանիշով մենք կարող ենք երկրի գազային վիճակը համարել ցածր աստիճան, իսկ պինդը՝ ավելի բարձր և դրանով պնդել, որ երկիրն իրոք զարգացել է։ Գուցե ելնելով նրանից, որ տեղի է ունեցել նյութի կառուցվածքի բարդացո՞ւմ, առաջացել են մոլեկուլյար միացություննե՞ր և, վերջապես՝ կյա՞նք։ Բայց այս չափանիշն ինքնին երկրի նկատմամբ բացարձակ չափանիշ չէ։ Նյութի ամեն մի որոշակի վիճակ, որքան էլ այն պարզ թվա, օժտված է անվերջ հատկություններով։ Յուրաքանչյուր ատոմ նույնքան բարդ է, որքան բարդ է ամբողջ տիզերքը։ Այդ պատճառով էլ նյութի անցումը գազային վիճակից պինդ վիճակի, բացարձակ իմաստով չի կարող զարգացում համարվել։

Սակայն, եթե բացարձակ իմաստով զարգացումը զուրկ է կոնկրետ բովանդակությունից, ապա հարաբերական իմաստով այն ունի որոշակի ռեալ բովանդակություն։ Նկատենք, որ բնությունը ոչ թե սոսկ առանձին, կոնկրետ ծնվող ու մեռնող առարկաների ամբողջություն է, այլ ավելի շուտ, հարաբերականորեն կայուն սիստեմների ներդաշնակություն։ Ուստի, յուրաքանչյուր երևույթի ուսումնասիրման համար անհրաժեշտ է այն մտքով կտրել, անջատել անսահման երևույթներից ու հարաբերություններից և դիտել որևէ հարաբերականորեն կայուն սիստեմի մեջ, միայն այդ սիստեմի շրջանակներում խոսել նրա զարգացման մասին։ Այս դեպքում արդեն զարգացում ասելով հասկացվում է այն փոփոխությունը, որի ընթացքում տվյալ երևույթը տվյալ հարաբերականորեն կայուն սիստեմի մեջ դրսևորում, ծավալում է իր որակական որոշակիությունը։

Այսպիսով, զարգացման գաղափարը քննարկելիս, նախ պետք է սահմանվեն այն սիստեմի շրջանակները, որի օբյեկտների վրա կիրառվում է այդ հասկացությունը։ Այս տեսակետից որոշակի իմաստ է ստանում, օրինակ,



այն պնդումը, որ երկիրը զարգացել է։ Սա նշանակում է՝ այն զարգացել է ոչ թե որպես ինքնին երկնային մարմին, ոչ թե մատերիա ընդհանրապես, այլ որպես արեգակնային համակարգության անդամ։ Մեկ այլ օրինակ. հին հունական մտածող Արիստոտելը մարդուն սահմանում էր որպես անփետուր երկոտանի կենդանի։ Սրանով մարդը չի անջատվում կենդանական աշխարհից, չի նշվում նրա էական որակական որոշակիությունը։ Ուստի, այս ըմբռնմամբ միանգամայն անիմաստ է դառնում խոսել մարդու զարգացման մասին, քանի որ մարդը իր փոփոխության ընթացքում չի ծավալում ոչ իր երկոտանի, և ոչ էլ անփետուր լինելու հատկությունը։ Դիալեկտիկական մատերիալիզմը մարդուն բնորոշում է որպես հասարակական կենդանի, բնությունը ճանաչող ու վերափոխող կենդանի։ Այս տեսակետից լիովին հասկանալի է դառնում այն պնդումը, որ մարդը զարգանում է վերընթաց գծով։ Որքան զարգանում է հասարակական արտադրությունը, այնքան մեծանում է մարդու իշխանությունը բնության վրա, այդքան էլ զարգանում է մարդը։ Ուրեմն, զարգացման գաղափարը որոշակի իմաստ է ստանում միայն այն ժամանակ, երբ այն կիրառվում է կոնկրետ, հարաբերականորեն կայուն սիստեմների նկատմամբ, քանի որ միայն այդ դեպքում իմաստ ունի խոսել որակական որոշակիության ու նրա ծավալման մասին։

Այս ամենից կարելի է եզրակացնել, որ զարգացման գաղափարն իր սովորական ըմբռնմամբ չի կարելի տարածել ողջ տիեզերքի վրա։ Տիեզերքը տրված է մեզ միայն մեկ օրինակով։ Այն չի կարելի համեմատել մեկ այլ օբյեկտի հետ, չի կարելի դիտել որպես հարաբերականորեն կայուն սիստեմ, ուստի և չի կարելի նրա փոփոխությանը որևէ ուղղություն վերագրել։ Անհեթեթ է պնդել, որ այսօր տիեզերքը գտնվում է զարգացման ավելի բարձր աստիճանում, քան անցյալում էր։

Հարց է առաջանում, թե կոնկրետ նյութական սիստեմների ծագման, զարգացման ու մահացման այս անվերջ պրոցեսում չկա՞ արդյոք մի ընդհանուր օրինաչափություն, մի ընդհանուր տենդենց, որը հատկանշական լինի բոլոր փոփոխությունների համար, որը հատուկ լինի ո՛չ միայն կոնկրետ երևույթներին, այլ ամբողջ տիեզերքին։

XIX դարում ջերմային պրոցեսների ուսումնասիրությունները մի շարք մտածողների հանգեցրին այն սխալ տեսակետին, որ այդպիսի ընդհանուր տենդենց կա և այդ տանում է տիեզերքում ներքին շարժման հնարավորությունների, ներքին կենսունակության մարման և, ի վերջո, հասցնելու է տիեզերքի ջերմային մահվան։ Ըստ թերմոդինամիկայի 2-րդ օրենքի յուրաքանչյուր փակ (շրջապատի միջավայրից մեկուսացած) սիստեմում տեղի ունեցող պրոցեսները տանում են դեպի սիստեմի մեջ եղած էներգիաների մակարդակների տարբերության վերացում։ Այլ կերպ ասած՝ փակ սիստեմը, բնականաբար, ձգտում է հավասարակշռության, գնալով նրա մեջ կուտակվում է աշխատանք կատարելու անընդունակ էներգիան, որը կոչվում է սիստեմի **էնտրոպիա**։ Միանգամայն անթույլատրելի կերպով տիեզերքը դիտելով որպես փակ սիստեմ և նրա վրա տարածելով թերմոդինամիկայի նշված սկզբունքը, իդեալիստական մտածելակերպի տեր շատ գիտնականներ շտապեցին հայտարարել, որ տիեզերքը գնում է դեպի ջերմային մահ։ Ըստ նրանց, տիեզերքում, ամենուրեք տեղի է ունենում էներգիայի ցրում, քայքայում, բայց ոչ կուտակում ու վերականգնում, և եթե մինչև այսօր այդ պրոցեսը շարունակ-

վում է, ապա ըստ նրանց, դա բացատրվում է նրանով, որ տիեզերքը սկիզբ է ունեցել։

Այս տեսակետը ընդհանուր փիլիսոփայական դիրքերից հետևողական քննադատության է ենթարկվել Ֆ. Էնգելսի կողմից, նրա Բնության դիալեկտիկա աշխատության մեջ։ Նա նշում է, որ էներգիայի պահպանման օրենքը պետք է հասկանալ ո՛չ միայն քանակապես, այլև որակապես։ Ո՛չ միայն էներգիայի մի ձևը փոխարկվում է համապատասխան քանակով մի այլ ձևի էներգիայի, այլև այդ փոխարկման պրոցեսն անվերջ է։ Չկա էներգիայի մի այնպիսի վիճակ, որն այլ վիճակի անցնելու հնարավորությամբ օժտված չլինի։ Այս ընդհանուր փիլիսոփայական քննադատության հետ մեկտեղ սույն հարցն ունի նաև զուտ բնագիտական կողմ, որին ցանկանում ենք անդրադառնալ։

Ավստրիացի նշանավոր ֆիզիկոս Լ. Բոլցմանը ցույց տվեց, որ թերմոդինամիկայի 2-րդ օրենքը ունի ոչ թե դինամիկ, այլ վիճակագրական բնույթ, այսինքն՝ փակ սիստեմի ջերմային հավասարակշռության վիճակի հասնելը ոչ թե միակ հնարավոր, այլ ամենահավանական ուղին է։ Սկզբունքորեն չի ժխտվում հնարավորությունն այն բանի, որ հավասարակշռված սիստեմը ներքին, սպոնտան ձևով խախտի իր հավասարակշռությունը, ստեղծվի էներգիաների մակարդակների տարբերություն, և սիստեմը ձեռք բերի կրկին աշխատանք կատարելու կարողություն։ Այդ կարելի է ցույց տալ հետևյալ վերացական օրինակով։ Պատկերացնենք մի անոթ, որը միջնապատով բաժանված է երկու մասի և մի մասում լցված է որևէ գազ։ Այս վիճակում գազն ունի աշխատանք կատարելու զգալի կարողություն։ Հեռացնելով միջնապատը, գազը կտարածվի ամբողջ անոթում և կհասնի հավասարակշռության վիճակի։ Կարո՞ղ է արդյոք այն ինքն իրեն դուրս գալ այդ հավասարակշռված վիճակից և ձեռք բերել էներգետիկ մակարդակների տարբերություն, առավել ևս՝ կրկին հավաքվել անոթի մի մասում։ Տեսականորեն դա հնարավոր է։ Եթե գազի մասնիկները միմյանց հետ կապված չեն, ապա նրանց բաշխումը կարելի է դիտել խիստ պատահական, որը որոշվում է հավանականության միջոցով։ Մեկ մասնիկի անոթի տվյալ կեսում գտնվելու հավանականությունը հավասար է 1/2-ի։ Երկու մասնիկի գտնվելու հավանականությունը կլինի $1/2^2$, երեքինը՝ $1/2^3$ և այլն։ Եթե գազը բաղկացած է $n$ թվով մասնիկներից, ապա հավանականությունն այն բանի, որ ինչ-որ ժամանակ այդ բոլոր մասնիկները կհավաքվեն անոթի մեկ կեսում, կլինի $1/2^n$։ Գազի որոշ քանակի համար այս թիվը թեև շատ փոքր է, բայց զրո չէ, ուստի սկզբունքորեն այդպիսի բան կարող է տեղի ունենալ։

Այսպիսով ստացվում է, որ յուրաքանչյուր փակ սիստեմ ժամանակի ընթացքում կարող է ինքն իրեն դուրս գալ հավասարակշռության վիճակից։ Եթե սա կիրառելու լինենք տիեզերքի վրա, ապա կստացվի, որ էներգիայի ցրման ու քայքայման պրոցեսի հետ միասին կարող է տեղի ունենալ նաև կուտակման ու վերականգնման պրոցես։ Սակայն սա դեռևս քիչ է, որ տիեզերքը կարողանա խուսափել «ջերմային մահից»։ Քանի որ փակ սիստեմի հավասարակշռության վիճակից դուրս գալու հավանականությունը շատ չնչին է, ապա դա կարող է նշանակել, որ տիեզերքը ընդհանուր առմամբ գնում է դեպի «ջերմային մահ», թեև հազվագյուտ դեպքերում այն շեղվում է այդ ուղուց և հնարավորություն է ստանում, այսպես ասած՝ «ինքն իր մեխանիզմը լարելու»։

Սակայն, հետագա ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ Բոլցմանի



նշած մեխանիզմը կիրառելի չէ, մի կողմից՝ մեկ մասնիկ պարունակող սիստեմի, մյուս կողմից՝ այնպիսի սիստեմի համար, որը պարունակում է անվերջ թվով մասնիկներ։ Ինչպես որ մեկ մասնիկի համար չկա բաշխման ամենահավանական վիճակ, քանի որ այդ մասնիկը անոթի միայն մեկ մասում կարող է լինել, այնպես էլ ամենահավանական բաշխում գոյություն չունի անվերջ թվով մասնիկներ պարունակող սիստեմի համար։ Երբ մասնիկների թիվն անվերջ է, ապա սիստեմն ունի զարգացման անսահման հնարավորություններ, որոնք բոլորն էլ օժտված են միևնույն հավանականությամբ։ Քանի որ յուրաքանչյուր փոխազդեցություն կարող է տարածվել միայն վերջավոր արագությամբ, հետևաբար սիստեմը յուրաքանչյուր կոնկրետ վիճակում կարող է գտնվել վերջավոր ժամանակամիջոցում։ Ուստի, անվերջ ժամանակամիջոցում անվերջ թվով մասնիկներ պարունակող սիստեմը կարող է իրականացնել իր հնարավոր վիճակների միայն չնչին մասը, երբեք չսպառելով ինքն իրեն։ Այստեղից էլ բխում է, որ թերմոդինամիկայի 2-րդ օրենքը կիրառելի չէ ողջ տիեզերքի վրա և, հետևաբար, տիեզերքին անհնար է վերագրել զարգացման որևէ ուղղություն։

Այն պնդումը, որ հավասարակշռության հասած փակ սիստեմը ներքնապես օժտված է հավասարակշռությունից դուրս գալու և աշխատանք կատարելու հատկությամբ, սկզբունքորեն հնարավոր է համարել նաև անգլիացի նշանավոր ֆիզիկոս Մաքսվելը։ Այդ հնարավորությունը նա հիմնավորում էր հետևյալ մտացածին փորձով։ Ենթադրենք մտքով երկու մասի բաժանված անոթը լցված է որևէ իդեալական գազով։ Չնայած այդ գազի առանձին մասնիկներն ունեն տարբեր արագություններ, բայց գազը, ընդհանուր առմամբ, կարող է գտնվել հավասարակշռված վիճակում։ Ենթադրենք անոթի երկու մասերը բաժանված են միմյանցից փականներով, որոնց աշխատանքը կարգավորվում է ինչ-որ գերմարդու կողմից։ Գերմարդը սկզբունքորեն կարող է բացել և փակել փականներն այնպես, որ անոթի մեկ մասում հավաքվեն բոլոր մեծ, իսկ մյուս մասում՝ փոքր արագություն ունեցող մասնիկները։ Այսպիսով կրկին կստացվի էներգետիկ մակարդակների տարբերություն, և, փաստորեն, սիստեմն ինքն իրեն շարժման մեջ կդնի։

Երկար ժամանակ գիտության մեջ Մաքսվելի դրած այս խնդիրը ոչ թե պատասխան էր ստանում, այլ, պարզապես, մերժվում էր այն փաստարկով, որ այդպիսի գերմարդ գոյություն չունի։ Սակայն, հասկանալի է, որ այս ձևով չէր կարող մերժվել փակ մեխանիկական սիստեմի ներքին կենսունակության սկզբունքային հնարավորությունը։ Միայն կիբեռնետիկայի զարգացման շնորհիվ հնարավորություն ստեղծվեց ըստ էության պատասխանել այդ հարցին և ցույց տալ, որ փակ սիստեմը ի վիճակի չէ վերականգնել իր կենսունակությունը։

Բանը նրանումն է, որ Մաքսվելի գերմարդը որպեսզի կարողանա կատարել իր պարտականությունը, նա պետք է ինֆորմացիա (տեղեկություն) ստանա սիստեմում շարժվող մասնիկների արագության մասին։ Իսկ յուրաքանչյուր ինֆորմացիա կարող է հաղորդվել ոչ այլ կերպ, քան էներգիայի միջոցով։ Նշանակում է՝ Մաքսվելի գերմարդը որպեսզի գործի, պետք է որևէ էներգիա ընդունի սիստեմից։ Դրանով իսկ սիստեմը դադարում է փակ լինելուց և դրանով է միայն վերանում նրա «ջերմային մահվան» հնարավորությունը։

Սակայն, անկախ այս բոլորից, միայն տիեզերքի անվերջությունը բավական է, որ բացառվի նրա մեջ շարժման ուղղության գաղափարն ընդհան-

*րապես։ Նույնիսկ եթե սահմանափակվենք միայն Բոլցմանի դատողություններով, ապա կստացվի, որ տիեզերքում ինչ-որ որոշակի ընդմիջումներով տեղի է ունենում շեղում «ջերմային մահից»։ Անվերջ ժամանակի և անվերջ տարածության մեջ այդ որոշակի շեղումների թիվն էլ անվերջ կլինի և որոշ իմաստով հավասար կլինի դեպի «ջերմային մահ» ընթանալու քայլերի թվին։*

*Այսպիսով, բոլոր դեպքերում գալիս ենք այն եզրակացության, որ տիեզերքում տեղի ունեցող փոփոխությունների համար չկա նախընտրելի ուղղություն, չկա ամենահավանական վիճակ։ Ամբողջությամբ վերցրած տիեզերքի համար կոնկրետ սիստեմների ծնվելն ու մահանալը, էներգիայի ցրումն ու կուտակումը, հավասարակշռության վիճակի ձգտելն ու այդ վիճակից դուրս գալը, այս բոլորն էլ օժտված են հավասար հավանականությամբ, հավասարապես իրականացվող են։ Սրանով մերժվում է տիեզերքի սկզբի և վախճանի գաղափարը, սակայն սրա հետ մեկտեղ բացառվում է այն, որ զարգացման սովորական ըմբռնումը կիրառելի է տիեզերքի նկատմամբ։*

*Իսկ ի՞նչ պետք է հասկանալ տիեզերքի զարգացում կամ ավելի փիլիսոփայական լեզվով ասած՝ մատերիայի զարգացում ասելով։ Ֆ. Էնգելսը դրա տակ հասկանում է մատերիայի հավերժ շրջապտույտ։ Սա նշանակում է, որ մատերիան իր անվերջ հատկություններով անվերջ տարածության ու ժամանակի մեջ դրսևորում է իր անվերջ հարստությունն ու բազմազանությունը, չկրկնելով ինքն իրեն, չսպառելով ինքն իրեն։ Ընդ որում նկատենք, որ այս հավերժ շրջապտույտի մեջ չի բացառվում կրկնողության մոմենտը առհասարակ։ Քանի որ մենք տիեզերքը դիտում ենք ոչ թե որպես առարկաների ու երևույթների կոնգլոմերատ, այլ որպես սիստեմների ներդաշնակություն, ապա, բնականաբար, տարբեր սիստեմներ պետք է ունենան ընդհանրական գծեր և այս իմաստով միայն պետք է կրկնեն միմյանց։ Ահա այս կրկնողության մոմենտն է, որ դեռևս իր ժամանակին նկատել է Պյութագորասը, բայց, ինչպես նշեցինք, նա բացարձականացրել է այդ մոմենտը և ներկայացրել այն որպես ընդհանրական տենդենց։*

*Այսպիսով, տիեզերքին հատուկ է՝ 1) շարժման, զարգացման (կամ ավելի ճիշտ՝ փոփոխության) որևէ նախընտրելի ուղղության բացակայություն և 2) այդ հավերժ շրջապտույտի մեջ կրկնողության մոմենտի առկայություն։ Այս չափազանց բարդ իրավիճակը կարելի է նկարագրել երկրաչափական ակնհայտ մոդելների օգնությամբ։ Սովորաբար որպես այդպիսի մոդել ընդունված է վերցնել սպիրալաձև կորը, որը բավարարում է վերը նշված երկու պայմաններին՝ 1) նրա մեջ բացակայում է որևէ կոնկրետ ուղղություն և 2) նրա մեջ նկատվում է պարբերականություն։ Այս իմաստով էլ հաճախ փիլիսոփայության մեջ ընդունված է ասել, որ զարգացումն ընթանում է սպիրալաձև։ Ուրեմն, սպիրալաձև կորը շարժման նկարագրման համար սոսկ մոդել է և ոչ ավելին։*





# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

Հ. ԱՍԼԱՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պատճառների ու նախադրյալների, նրա բնույթի ու նշանակության, համաշխարհային պատմության ընդհանուր օրինաչափությունների հետ նրա ունեցած առնչության հարցերը մշտապես գտնվել են ու գտնվելու են մարքս-լենինյան սոցիալական փիլիսոփայության կենտրոնում։ Եվ ոչ միայն մարքս-լենինյան։ Այդ հարցերը շարունակ մտատանջել են կապիտալիզմի, հին աշխարհի բոլոր գաղափարախոսներին։ Մասնավորապես վերջին տարիներին բուրժուական մամուլը, փիլիսոփայական ու սոցիոլոգիական գրականությունը պարբերաբար անդրադառնում են այդ հարցերին։ Լեռ գրականություն է կուտակված դրանց շուրջը։ Լրջմիտ մտածողները՝ պատմաբանները, սոցիոլոգները, փիլիսոփաները, հրապարակախոսները ջանալով կողմնորոշվել մեր դինամիկ դարաշրջանի բարդ ու խճճված իրադարձությունների մեջ, հաճախ դիմում են մարքսիզմին, նրա գաղափարներին, փորձում են բացատրել դրանց ուժի գաղտնիքը։ Այլ կերպ են մոտենում հակակոմունիզմի ասպետները, մարքսիզմի անբարիշտ հակառակորդները։ Քննարկելով սոցիալիստական հեղափոխության և համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետ կապված եղելությունները ու թեորիաները, նրանք ամեն կերպ ձգտում են կեղծել, աղավաղել մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը, Հոկտեմբերի մարդասիրական իդեալները։

Հոկտեմբերյան հեղափոխության բնույթի, նշանակության, հետևանքների շուրջը կոմունիզմի և հակակոմունիզմի միջև հայացքների այդ սուր բախումները պատահական չեն։ Այդ հեղափոխությունը պատմության դիալեկտիկայի մեծագույն ակտը լինելով, բաց արեց մարդկության ու քաղաքակրթության պատմության նոր դարագլուխ՝ կապիտալիզմի կործանման ու կոմունիզմի հաստատման դարագլուխը, հասարակության զարգացումը տարավ ժողովրդական հոծ մասսաների տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր ազատագրման, ամեն տեսակի ճնշման ու շահագործման վերացման հունով։

Մեծ հեղափոխությունը պատմական ինքնուրույն ստեղծագործության բարձրացրեց ոչ միայն Ռուսաստանի ժողովուրդներին, այլև հարյուր միլիոնավոր մարդկանց ամբողջ աշխարհում: Հոկտեմբերը վիթխարի չափով խթանեց հասարակական մտքի բոլոր բնագավառների զարգացումը, խորտակեց հին փիլիսոփայական, սոցիոլոգիական, բարոյական ու իրավական ֆետիշները, հաստատեց ու հարստացրեց պատմական պրոցեսի գիտական, մարքսիստական ըմբռնումը: Հոկտեմբերյան հեղափոխությունը նշեց համաշխարհային պատմության ամբողջ ընթացքով առաջադրված մեծագույն պրոբլեմների լուծման ուղիները:

Ռուսական հեղափոխությունը վառ ճառագայթներով լուսավորեց մարդկության պատմական ճանապարհը, նրա անցյալը, ներկան, գծագրեց նրա ապագա հորիզոնները, կախարդական ուժով կյանքի կոչեց մարդկանց միջև նոր հարաբերություններ, բարոյական նորմեր, հասարակության զարգացման նոր օրենքներ: Հոկտեմբերը նոր լույս սփռեց համաշխարհային պատմության ընթացքի, իմաստի, ձևերի ու օրենքների վրա, նոր աստիճանի բարձրացրեց մարդկության հասարակական գիտակցությունը:

Մեր հեղափոխությունը նոր ուժով հաստատեց ու հարստացրեց պատմության մարքս-լենինյան ըմբռնման արմատական դրույթները, մասնավորապես օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների հարաբերակցության, ընդհանուրի և առանձնահատուկի, էկոնոմիկայի, քաղաքական ու գաղափարական գործոնների դիալեկտիկան. դրանք նոր, փայլուն հաստատում ստացան, խթանելով մարքս-լենինյան ամբողջ ուսմունքի զարգացումը: Միևնույն ժամանակ սոցիալիստական մեծ հեղափոխությունը խորտակիչ հարված հասցրեց հին աշխարհի քուրմերի ու ջատագովների չարախինդ մարգարեություններին:

Հին հայացքներն ու մարգարեություններն անհիմն դուրս եկան նախ և առաջ պատմության մեջ հեղափոխական դարաշրջանների գնահատման հարցում: Մարքս-լենինյան հայացքների հակառակորդների կոմպանիան հեղափոխության բուն օրերին և նրա հաղթանակից հետո տասնյակ տարիներ շարունակ բազմաձայն վայնասուն բարձրացրեց այն մասին, թե հեղափոխությունը շեղումն է մարդկային պատմության «նորմալ» ճանապարհից, թե այն անօրինական է, սոցիալական հիվանդության դրսևորումն է, կամայականությունների, ծայրահեղությունների ու սխալների տխուր հետևանք և այլն, և այլն: Այս էր նրանց կոնցեպցիան:

Այլ է հեղափոխական դարաշրջանների պատմական դերի մարքս-լենինյան գնահատականը: Այդ գնահատականը հենվում է պատմության դիալեկտիկա-մատերիալիստական, խորապես գիտական ըմբռնման վրա, բխում է մարքսիզմի պատմա-փիլիսոփայության բուն էությունից և ոչ թե մի մասնակի ասույթ է: Հենց հեղափոխական էպոխաներում է, որ լուծվում են նախորդ ժամանակաշրջաններում կուտակված բազմաթիվ հակասությունները, հատուկ ուժով հանդես է գալիս մասսաների պատմական ստեղծագործությունը, արագանում են հասարակության զարգացման տեմպերը, հստակորեն դրսևորվում են յուրաքանչյուր դասակարգի դեմքն ու դիրքը: Մարքսի խոսքերով ասած՝ հեղափոխությունը պատմության լոկոմոտիվն է: Հեղափոխական էպոխաները մարդկության պատմության ամենաէական, ամենակենսական, ամենակարևոր ու վճռական մոմենտներն են՝ այսպես է այն հիմնավորում Վ. Ի. Լենինը: Հեղափոխական էպոխաների մի օրը հաճախ հավասար է լինում կյանքի գորշ ընթացքի տարիներին: «Տասը օր, որ ցնցեցին աշխարհը», բաց արեցին մարդ-



կության պատմության նոր դարագլուխ՝ կոմունիզմի դարագլուխը: Ուստի այդ տասը օրերն իրենց բովանդակությամբ, հետևանքներով ու նշանակությամբ հավասար են ոչ թե տարիների, այլ դարերի: Հենց հեղափոխական էպոխաներն են, որ ծնում են ժողովրդի պատմական ստեղծագործության բովանդակությամբ հարուստ, իրենց նշանակությամբ ու հետևանքներով մասսայական բազմապիսի ձևեր ու մեթոդներ:

Սոցիալական հեղափոխություններից ամենավիթխարին՝ Հոկտեմբերյան հեղափոխությունը, որը ցնցեց ամբողջ հին աշխարհը և դրեց մարդկության իսկական պատմության սկիզբը, չէր կարող պատահականությունների, կամայականությունների, կամ սխալների հետևանք լինել: Անհույս և անհեռանկար կլիներ կոմունիզմի գործը, եթե այն չհիմնվեր հասարակության զարգացման հաստատուն օբյեկտիվ օրենքների վրա: Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը պատմական մեծագույն անհրաժեշտության անմիջական արգասիքն էր, որ նախապատրաստվել էր Ռուսաստանի և համաշխարհային պատմության, մասնավորապես կապիտալիզմի տնտեսական ու սոցիալական զարգացման ամբողջ ընթացքով:

Ընդհանրապես պատմական պրոցեսի, մասնավորապես հեղափոխությունների օրինաչափ բնույթի նկատմամբ առաջավոր մարդկության համոզմունքը մարքսիստների հորինածը չէ: Այդ համոզմունքը գոյացել է մտածող մարդկության երկարատև մտորումների, առանձին իդեաների, պատկերացումների, կռահումների գիտական մշակման վրա: Մարքսիզմը տվեց այդ գաղափարի խիստ գիտական հիմնավորումը, բացահայտեց նրա խոր բովանդակությունը: Սոցիալիստական հեղափոխությունը Ռուսաստանում բխեց համաշխարհային պատմական ընդհանուր օրինաչափության ու Ռուսաստանի կոնկրետ պայմանների առանձնահատուկ խաչաձևման հետևանքով, համաշխարհային իմպերիալիզմի հակասությունների սրման հանգուցակետում: Ռուսաստանն առաջին համաշխարհային պատերազմ մտավ որպես իմպերիալիստական տերություն: Արտադրության գլխավոր ճյուղերը գտնվում էին խոշոր կորպորացիաների ձեռքում, արտադրության կենտրոնացումն ու հանրայնացումը բավական բարձր աստիճանի էին հասել: Ճիշտ է, Ռուսաստանը բարձր զարգացած կապիտալիստական երկրներից չէր. այստեղ կային ֆեոդալիզմի շատ խոշոր մնացորդներ՝ կալվածատիրություն, ինքնակալություն, բանվոր դասակարգի բարբարոսական շահագործում, ազգերի ու ժողովուրդների իրավազրկություն և ճնշում: Բայց դրանք, կաշկանդելով հասարակության պրոգրեսը, միայն խստացնում էին շահագործման դաժան ձևերը և սրում պրոլետարիատի, գյուղացիության, ճնշված ազգերի պայքարն ու հեղափոխական վրդովմունքը: Ռուսաստանը պատկանում էր միջին զարգացած կապիտալիստական երկրների տիպին: «Առանց կապիտալիզմի որոշ մակարդակի,— գրում էր Լենինը,— մեզանում ոչինչ չէր ստացվի» (Լենինյան ժողովածու, XI, էջ 397): Հենց այս հողի վրա էր բորբոքվում, հզոր թափով ծավալվում Ռուսաստանի պրոլետարիատի պայքարը սկսած XIX դարի վերջին տասնամյակներից: Այդ պրոլետարիատը Հոկտեմբերից առաջ արդեն անցել էր երկու հեղափոխությունների բովով, կոփվել ու կուտակել հեղափոխական տրադիցիաներ: 1917 թվականին Ռուսաստանի առջև կանգնած խնդիրները կարող էին լուծվել միայն սոցիալիստական հեղափոխության միջոցով: Լենինը նշում էր, որ կապիտալիստական երկրում XX դարում չի կարելի լինել հեղափոխական, դեմոկրատ՝ չընդունելով դեպի սոցիալիզմը տանող ուղին:

Հիմնավորելով այս եզրակացությունը, նա ցույց տվեց մենշևիկների, Երկրորդ ինտերնացիոնալի մյուս գործիչների հայացքների ամբողջ ողորմելիությունն ու խախուտությունը: Նրանք իրենց մարքսիստ են համարում, բայց չեն հասկացել վճռականը մարքսիզմի մեջ՝ նրա հեղափոխական դիալեկտիկան: Նրանք վախկոտություն են հանդես բերում պատմության սուր բեկումների, շրջադարձերի, հեղաբեկումների հանդեպ, հեռու լինելով Ռուսաստանի հեղափոխության կոնկրետ յուրահատկությունը մարքսիստորեն ըմբռնելու կարողությունից: Նրանք շարունակ կրկնում էին մի ֆորմուլ, թե հեղափոխության համար հարկավոր է արտադրողական ուժերի շատ բարձր մակարդակ, թե Ռուսաստանը չի հասունացել սոցիալիստական հեղափոխության համար, թե մեզանում դրա համար չկան օբյեկտիվ տնտեսական պայմաններ և այլն: Ահա թե ռուս մենշևիկներից մեկը՝ Կիբրիկը ինչ էր գրում 1917 թվականին. «Մենք գտնում ենք, որ բուրժուական աշխարհի կործանումը—տիրող դասակարգի նկատմամբ տարվելիք հաղթանակը--կարող է վրա հասնել միայն երկրի արտադրողական ուժերի համապատասխան զարգացման, կապիտալիստական հասարակարգի համապատասխան զարգացման պայմաններում, երբ այդ հասարակությունը կհասնի իր ժխտմանը, երբ միջին դասակարգը կքայքայվի, երբ գագաթնակետում իրոք կմնա մի աննշան խումբ, որի ձեռքում կկենտրոնանա աշխարհի հզորությունը» («Вопросы истории», 1966, № 10, էջ 42—43): Սա մարքսիզմ չէ, այլ «էկոնոմիկական մատերիալիզմ», «էկոնոմիզմ», գռեհիկ մատերիալիզմ: Մարքսիզմի հակառակորդները հենց այդպես էլ ներկայացնում են մարքսիզմը, այն անվանելով էկոնոմիկայի ավտոմատիկ գործողության թեորիա:

Մարքսիզմի արդի բուրժուական մեկնաբանները հենց նույն միտքն են զարգացնում: Նրանք Լենինին վերագրում են այն կոնցեպցիան, թե իբր սոցիալիստական հեղափոխությունները կարող են տեղի ունենալ միայն և միայն տնտեսապես հետամնաց երկրներում: «Լենինիզմը պնդում է,— գրում է նրանցից մեկը,— թե հետամնացությունը վճռական գործոն է, և այդ ֆորմուլի օգնությամբ վերականգնում ու հիմնավորում է մարքսյան հին պատկերացումը հեղափոխության անխուսափելիության մասին» (A. Mayer, Leninism, p. 259): Ուշագրավ է մի այլ հակամարքսիստի՝ Ջ. Սեբայնի դատողությունը, այսպես կոչված, «մարքսիզմի պարադոքսի» մասին: Մարքսիզմը, նրա ասելով, հաղթանակ տարավ «այնտեղ, որտեղ իր իսկ սեփական իդեաների համաձայն պետք է անհաջողության մատնվեր, և անհաջողության մատնվեց այնտեղ, ուր պետք է հաջողության հասներ» (George Sabine, Marxism, N. Y., 1958, p. 3): Ինչպես տեսնում ենք, այստեղ մենշևիկյան և հակակոմունիստական հայացքների լիակատար համերաշխություն կա: Այսպես գռեհկացնելով պրոբլեմը, նրանք փորձում են ժխտել Հոկտեմբերյան հեղափոխության տնտեսական, նյութական նախապայմանների առկայությունը Ռուսաստանում, հայտարարելով թե ընդհանրապես սոցիալիստական հեղափոխությունները ոչ մի պատմական անհրաժեշտություն չեն ներկայացնում:

Լոնդոնի համալսարանի պրոֆեսորներից մեկը առանց այլևայլության դեկրետավորում է. «Կոմունիստական բոլոր առասպելներից ոչ մեկն այնքան անհեթեթ չէ, որքան կոմունիզմի պատմական անխուսափելիության և անկանխելիության վերաբերյալ առասպելը: Կոմունիստները հաղթանակ տարան քաղաքական ու սոցիալական որոշ պայմանների հետևանքով: Նման պայմանների ծագումը կարելի է կանխել, իսկ բուն այդ պայմանները՝ վերացնել»



(H. Seton-Watson, Trom Lenin to Malenkov. N. Y., 1955, p. 348):

Շատ սուր միտք հարկավոր չէ այս ձևակերպման անհիմնությունը նկատելու համար: Այս տողերի հեղինակը բաց դռներ է թակում: Իհարկե, Հոկտեմբերյան հեղափոխությունը տեղի ունեցավ որոշակի սոցիալական և քաղաքական պայմաններում. ո՞վ է ժխտում այդ: Բայց դրանով անգլիացի հեղինակը խոստովանում է (կամա թե ակամա), որ այդ հեղափոխությունը մարդկանց կամայականությունների, սխալների կամ սոցիալական հիվանդությունների հետևանք չէր, այլ միանգամայն օբյեկտիվ «սոցիալական և քաղաքական պայմանների» արդյունք: Մարքսիստները ավելին չեն ասում: Դրանով հերքվում է բուրժուական բազմաթիվ սոցիոլոգների և պատմաբանների այն պնդումը, թե Հոկտեմբերյան հեղափոխությունը դեպքերի զուտ պատահական ծնունդ է, պատմության օրենքների խախտում: Իհարկե, դժվար է հակակոմունիզմի թույնով վարակված հեղինակից սպասել փաստերի անաչառ իմաստավորում: Ուոտսոնը իրարամերժ դատողություններ է անում, իր իսկ ընդունած նախադրյալներից հանելով ոչ այն եզրակացությունը, որ բխում է այդ նախադրյալներից: Մի կողմից նա ընդունում է որոշակի «սոցիալական և քաղաքական» պայմանների առկայությունը, բայց մյուս կողմից եզրակացնում է, թե հեղափոխությունը պատմական անհրաժեշտություն չէր, թե այն ծնող պայմանները կարելի էր կանխել, իսկ բուն հեղափոխությունը՝ վերացնել:

Հարց է ծագում. եթե կարելի էր «կանխել և վերացնել», ապա ինչո՞ւ չարվեց այդ: Ցանկությո՞ւն չկար: Ո՛չ, ցանկություն, ճիգ ու ջանքեր շատ կային: Փետրվարյան հեղափոխությունից սկսած ռուսական բուրժուազիան, կալվածատերերը, նրանց ժամանակավոր կառավարությունը, միջազգային իմպերիալիստների պահանջով դիվային ջանքեր էին գործադրում «կանխելու և վերացնելու» հեղափոխությունը ծնող պայմաններն ու «բուն հեղափոխությունը»: Ի՞նչ ստացվեց դրանից. հայտնի է ամենքին: Ավելին, ամբողջ աշխարհին հայտնի է, որ Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո 14 իմպերիալիստական տերություններ, միացած սպիտակգվարդիական սև ուժերին, երեք տարի շարունակ կրակե օղակի մեջ էին առել երիտասարդ Սովետական հանրապետությունը, չորս կողմից հարվածում էին, բզկտում, ձգտում էին խեղդել, ոչնչացնել աշխատավորների առաջին պետությունը: Ի՞նչ ստացվեց. նույնպես հայտնի է բոլորին: Այժմ, մեր օրերում, կապիտալիզմի շատ գաղափարախոսներ ու քաղաքական գործիչներ, սոցիոլոգներ ու փիլիսոփաներ ստիպված են դառնությամբ խոստովանել, որ իմպերիալիզմի գործիչների այն համոզմունքը, թե ռուսական հեղափոխությունից հետո էլ աշխարհում իշխելու են այն կարգերը, որոնք հիմնված են իմպերիալիզմի սկզբունքների ու իդեալների վրա՝ ցնորամիտ դուրս եկան:

Երևույթի խոր բացատրությունը կարող է տրվել միայն պատմության դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնման դիրքերից: Մարքսիզմը չի բավարարվում միայն սոցիալական և քաղաքական որոշակի պայմանների առկայությունը մատնանշելով. նա ավելի խորն է թափանցում դեպքերի կապակցությունների ու օրինաչափությունների մեջ, բացատրելով դրանց հիմքը՝ արտադրաուժերի ու արտադրահարաբերությունների կոնֆլիկտը, որը կարելի է հաստատել, Մարքսի խոսքերով ասած՝ բնագիտական ճշգրտությամբ: Մարդիկ չեն կարող կամայաբար ընտրել ոչ մեկը, ոչ մյուսը և ոչ էլ նրանց կոնֆլիկտի աստիճանը: Հետևաբար և չեն կարող կամայաբար ընտրել պատմու-

թյան ընդհանուր ուղղությունն ու տենդենցը: Սա պատմության մատերիալիստական ըմբռնման հիմնադրույթներից մեկն է:

Երբ Ռուսաստանի պրոլետարիատը 1917 թվականին հեղափոխություն կատարեց, ինքը կամովին չէր ընտրել երկրի էկոնոմիկայի զարգացման մակարդակը, դասակարգային ուժերի հարաբերակցությունը, սոցիալական հակասությունների բնույթը: Նա այդ բոլորը պատմականորեն «դասավորված» գտավ և ստիպված էր գործել իր կամքից անկախ դասավորված այդ օբյեկտիվ պայմաններում: Սակայն մարդիկ կարող են ըմբռնել, ճանաչել այդ օբյեկտիվ պայմաններն ու օրենքները, հասարակության զարգացման ուղղությունն ու տենդենցը և իրենց կազմակերպվածությամբ, կամքով ու գիտակցականությամբ վճռականորեն ներգործել այդ օրենքների ու պայմանների դրսևորման ձևերի վրա: Հոկտեմբերյան հեղափոխությունը հանդիսացավ պատմության մարքսիստական ըմբռնման փայլուն հաստատումը այն ժամանակ, երբ բուրժուական ուսմունքներն ու մարգարեությունները պատմական ստուգման չդիմացան:

Այնուհետև՝ բավական չէ ընդունել հեղափոխության նյութական նախադրյալների առկայությունն ընդհանրապես: Մատերիալիստական դիալեկտիկան պահանջում է դեպքերը հասկանալու ու ճիշտ գնահատելու համար կիրառել դրանց պատմականորեն կոնկրետ մոտենալու կարևորագույն սկզբունքը, այսինքն՝ հետևել դրանց (տվյալ դեպքում հեղափոխության) ծագման, առաջխաղացման էտապներին, հաշվի առնել երևույթի բոլոր կապակցություններն ու առնչությունները, հակասական տենդենցները:

Հեղափոխության համար տնտեսական մակարդակ Ռուսաստանում ընդհանրապես կար: Սակայն նյութական նախադրյալների առկայությունն ավտոմատիկ կերպով չէր կարող ապահովել սոցիալիստական հեղափոխության իրագործումը: Այստեղ հրապարակ եկան մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ կարգի արագացնող հանգամանքներ: Լենինը պահանջում է հաշվի առնել հետևյալը. համաշխարհային պատերազմի սարսափները, Ռուսաստանի էկոնոմիկայի քայքայումը, սովը, վերահաս կատաստրոֆի ու քաոսի վտանգը, համազգային ճգնաժամը, երբ վերևում չեն կարողանում հին ձևով կառավարել, իսկ ներքևում չեն ցանկանում ըստ հնի ապրել: Լենինի գրվածքներում և ելույթներում կարդում ենք այն մասին, որ ոչ թե այն պատճառով պետք է հաղթանակի պրոլետարիատը, որ երկիրը կատաստրոֆի եզրին է կանգնած, այլ այն պատճառով, որ կատաստրոֆից երկիրը կարող է փրկվել միայն պրոլետարիատի հաղթանակով և այդ հաղթանակը կարող է լինել միայն սոցիալիզմին դիմելով: Հետևաբար, տնտեսական քայքայումը, կատաստրոֆի վտանգը՝ այդ հանգամանքները չէին, որ որոշում էին հեղափոխության բնույթը, ներքին բովանդակությունն ու հեռանկարները, բայց դրանք արագացնում էին հեղափոխական պրոցեսը: Լենինն իր արծվային հայացքով ամենից ավելի հեռու և խոր ընկալեց համաշխարհային իմպերիալիզմի զարգացման ընթացքը, դեպքերի օբյեկտիվ տրամաբանությունը, Ռուսաստանի տեղը համաշխարհային սիստեմում և սահմանեց վճռական գրոհի ժամը:

Պատմական այդ իրադրության մեջ հատուկ նշանակություն ստացավ սուբյեկտիվ ֆակտորը: Ինչպես ասացինք, հեղափոխության օբյեկտիվ, նյութական հասունությունն ինքնին չէր կարող ապահովել հեղափոխության իրականացումը: Մարքսիզմին միանգամայն խորթ է տնտեսական ֆակտորին ավտոմատիկ գործողություն վերագրելը, տնտեսական ֆատալիզմը, մինչդեռ



հենց այդ ոգով է մեկնաբանվում մարքսիզմը նրա քննադատների կողմից: Ասացինք, որ մարդիկ ազատ չեն հասարակության զարգացման հիմնական ուղղությունն ընտրելու գործում, սակայն, բացի պատմության ընդհանուր ուղղությունից գոյություն ունի այդ զարգացման այս կամ այն ձևը, կարգը, տեմպը: Իսկ այստեղ վճռական դեր են խաղում հեղափոխական դասակարգի և նրա ավանգարդի գիտակցականությունը, կազմակերպվածությունն ու վճռականությունը, ինչպես և քաղաքական ու իդեոլոգիական գործոնները: 1917 թվականին այդ բոլորը առկա էին: Ռուսաստանում գոյություն ուներ առաջավոր բանվոր դասակարգ, որն ընդունակ էր իր շուրջը համախմբելու ժողովրդի մեծամասնությունը, լի էր հաղթանակի հասնելու վճռականությամբ: Փետրվարյան հեղափոխությունից սկսած երկիրն ապրում էր հեղափոխական անզուսպ տենդ, գործն անկասելի անհրաժեշտությամբ ընթանում էր դեպի բուրժուա-դեմոկրատական հեղափոխության վերածումը սոցիալիստականի:

Այստեղ մեծ ուժով դրսևորվեց այն ճշմարտությունը, որ լայն մասսաների պայքարը կյանքի հին ձևերի արմատական վերափոխման համար, տնտեսական առաջադիմության մեխանիկական կցորդը չէ, այլ դրա իրականացման վճռական գործոնը: Ժողովրդական մասսաների պատմական ստեղծագործությունը, Լենինի բնորոշմամբ, գլխավոր գործոնն է քաղաքակրթության պտուղները կործանումից փրկելու, պահպանելու և զարգացնելու գործում: Միայն սոցիալիստական հեղափոխությունը կարող էր այդ անել: Փայլուն կերպով հաստատվեց պատմության մարքսիստական ըմբռնման ամենահիմնական, ամենակարևոր դրույթներից մեկը, ըստ որի որքան հիմնավոր է պատմական գործողությունը, այնքան ավելի մեծ է այն իրագործող մասսայի դերը: Սուբյեկտիվ գործոնների շարքում պետք է դասել Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական վառ տրադիցիաները: Իսկ ամենավճռականը լենինյան, բոլշևիկյան կուսակցության առկայությունն էր, որը զինված էր ամենահեղափոխական և ամենագիտական ուսմունքով՝ մարքսիզմով, գիտեր, թե ինչպես և ուր պետք էր վարել մասսաներին, ուներ հեղափոխության հաղթանակից հետո սոցիալիստական էկոնոմիկայի կազմակերպման հստակ ծրագիր: Այդ կուսակցությունն էր, որ հաղթանակի ճանապարհին գլխավորեց բանվորների և գյուղացիության, ճնշված ազգությունների հեղափոխական շարժումը և այն ուղղեց հիմնական նպատակին: Այստեղ փայլուն կերպով դրսևորվեց սուբյեկտիվ գործոնի դերը, երբ նա զուգակցվում է պատմության օբյեկտիվ օրինաչափության հաշվառման հետ: «Մարքսիզմը,— գրում է Լենինը,— մյուս բոլոր սոցիալիստական թեորիաներից տարբերվում է նրանով, որ նա իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման մեջ լիակատար գիտական լրջությունը երևելի կերպով միացնում է մասսաների հեղափոխական եռանդի, հեղափոխական ստեղծագործության, հեղափոխական ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ, ինչպես նաև, իհարկե, այն առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների, կուսակցությունների նշանակության ճանաչման հետ, որոնք կարողանում են շոշափել և իրացնել կապն այս կամ այն դասակարգի հետ» (Երկեր, հատոր 13, էջ 29):

Օբյեկտիվ և սուբյեկտիվ ֆակտորների այս դիալեկտիկական զուգակցումը ոչ մի ընդհանուր բան չունի ո՛չ վուլգար էկոնոմիզմի և ոչ էլ վոլյունտարիզմի հետ: Բայց ահա տեսեք, թե ինչպես են մեկնաբանում մարքսիզմ-լենինիզմի այս դրույթը նրա հակառակորդներն ու քննադատները: Աղավաղումը

կատարվում է երկակի ձևով: Մարքսիզմը ներկայացնում են մերթ որպես տնտեսական ֆատալիզմ, մերթ որպես վոլյունտարիզմ: Մատերիալիզմն ու հեղափոխականությունը անհամատեղելի բան են, պնդում են հակառակորդները: Մարքսիզմը, շարունակում են քննադատները, անընդհատ տատանվում է դետերմինիզմի և վոլյունտարիզմի միջև. կամ կապիտալիզմը օբյեկտիվ օրինաչափությամբ տեղը զիջելու է սոցիալիզմին, այդ դեպքում մարքսիստները պետք է ձեռք քաշեն պատմության ընթացքին միջամտելուց: Կամ, երբ նրանք հույսը դնում են հեղափոխական գործունեության վրա, ուրեմն նրանք համոզված չեն սոցիալիզմի անհրաժեշտության մեջ: Կա՛մ–կա՛մ:

Առաջին դեպքում մարքսիստներին ներկայացնում են որպես տնտեսական ֆատալիստներ: Ահա դրա մի նմուշը. «Երբ համաշխարհային հեղափոխությունը անկանխելի տնտեսական օրենքների անխուսափելի հետևանքն է, այդ դեպքում որևէ երկրի հեղափոխականների համար անհրաժեշտություն չկա ձգտել դրան և դրա համար արյուն թափել. նրանք կարող են նույն հաջողությամբ սպասել» (Robert Daniels, The Nature of Communism, N. Y., 1962, p. 172): Անցյալ դարից եկած այս դատողությունը շատերին խելոք միտք է թվացել և նրանք մինչև այսօր էլ այդ երգն են երգում: Մինչդեռ պարզ է, որ պատմության տնտեսական օրենքները պատմությունից դուրս չեն գտնվում, իսկ վերջինս մարդիկ են կերտում: Հասարակական առաջադիմությունը հեղափոխական դասակարգերի ձեռքի գործն է, և շատ բան կախված է այդ դասակարգերի գիտակից, կազմակերպված ու վճռական գործունեությունից, երբ դա հիմնվում է պատմական անհրաժեշտության վրա:

Զավեշտականն այն է, որ բուրժուական մեկ այլ խումբ գաղափարախոսներ մարքսիզմին վերագրում են հակառակ ծայրահեղությունը՝ սուբյեկտիվիզմը, այն տարբերությամբ միայն, որ երբ առաջին տիպի մտածողները տնտեսական ֆատալիզմը Մարքսին էին վերագրում, ապա երկրորդները՝ վոլյունտարիզմը Լենինին են վերագրում: Մարքսին և Լենինին միմյանց հակադրելը, իհարկե, մարքսիզմ-լենինիզմի ֆալսիֆիկացիաներից մեկն է: Ահա ձեզ մի քանի նմուշ: Ըստ ամերիկյան սոցիոլոգ Ա. Մեյերի, վաղ մարքսիզմի համար բնորոշ է մարտնչող օպտիմիզմը, իսկ լենինիզմի համար բնորոշ է մարտնչող պեսիմիզմը: Մեյերը հայտարարում է, որ Լենինը կարծում էր, թե կամքն ու գիտակցությունը կարող են փոխարինել օբյեկտիվ օրենքներին, կատարել այն աշխատանքը, որը վերագրվում էր պատմության օբյեկտիվ օրենքներին: Ամերիկյան մի ուրիշ փիլիսոփա լուրջ կերպարանք ընդունած՝ հայտարարում է, թե հեղափոխության գլխավոր պատճառն այն է, որ կուսակցությունը որոշում է կայացնում. «Ճիշտ է,— գրում է նա,— տեսականորեն կուսակցությունն այդ որոշմանը չի հանգում այնքան ժամանակ, քանի դեռ հեղափոխության համար «օբյեկտիվ պայմաններ» չեն ստեղծվել: Բայց հեղափոխության հաջողությունը, բնականաբար, ընկալվում է որպես ապացույց այն բանի, որ որոշումը ճիշտ է եղել» (R. Carew Hunt, A guide to Communist jargon, N. Y., 1957, p. 164): Լենինիզմի հակառակորդ, արևմտագերմանական պատմաբան Ֆոն Ռաուխը առանց քաշվելու հայտարարում է, թե Լենինի ուսմունքի առանցքը ոչ թե պատմական մատերիալիզմն է, այլ վոլյունտարիզմը» (G. von Rauch. Lenin Grundlegung des Sowjetsustems. Göttingen—Berlin—Frankfurt, a. M., 1958, S. 24): Ըստ Լենինի, գրում է Փարիզի համալսարանի պրոֆեսոր Անդրե Պիետրը, «...պետք է ավելի քիչ հույս դնել տնտեսական հակասությունների տարերային բռնկման վրա և



ավելի շատ հիմնվել քաղաքական գործողության վրա. դետերմինիզմը տեղը զիջում է վոլյունտարիզմին... հեղափոխությունն այլևս իր մեջ ոչինչ տարերային չի պարունակում: Այն պատրաստում են, ինչպես պատրաստում են պատերազմը» (André Piettre, Marx et marxism. Paris, 1962, p. 102):

Այսպիսի, թող ներվի ասել, գնահատականներ շատ կան: Մարքսիստներին վոլյունտարիզմ վերագրողները կարծես թե աչքերը փակել են և ականջները խցանել, չտեսնելու և չլսելու համար Լենինի վճռական պայքարը ամեն տեսակ վոլյունտարիստների, ձախ ֆրազաբանների, ավանտյուրիստների դեմ (անարխիստներ, էսեռներ, «ձախ» կոմունիստներ, տրոցկիստներ), որոնցից շատ բան փոխ են առել չինական ներկայիս ղեկավարները: Սրանց վերցրած «մեծ թռիչքների» ու «ժողովրդական կոմունաների» ավանտյուրիստական կուրսը սուբյեկտիվիստների այն թեզիսի իրագործման փորձն է, թե կարելի է գործել տնտեսական օրենքների դեմ և դրանց հակառակ:

Իր առանձնահատկություններով հանդերձ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հասարակության առաջադիմական զարգացման ընդհանուր օրինաչափության, մասնավորապես սոցիալական հեղափոխությունների օրենքի վառ դրսևորումն է: Անգամ մարքսիստների բանակին չպատկանող շատ զգոն ու լրջմիտ մտածողներ մտորումների մեջ են ընկնում, ջանալով հասկանալ պատմության զարգացման հակասությունները, ընդհանուր օրինաչափությունների և դրանց առանձնահատուկ դրսևորման դիալեկտիկան: Ամերիկյան պատմաբան Մենդելը մեկնաբանելով Հոկտեմբերյան հեղափոխության առանձնահատկությունը (այն, որ դա տեղի ունեցավ ոչ ամենազարգացած կապիտալիստական երկրում) այն միտքն է արտահայտում, թե դա բացառիկ, եզակի, անկրկնելի երևույթ է: «Այսպիսով,—գրում է նա,— դուրս է գալիս, որ մարքսիզմի ընդհանուր թեորիան հաստատվում է մի բացառիկ դեպքով» (տե՛ս նրա նամակը սովետական պատմաբաններին, «Вопросы истории», 1966, № 10, էջ 40):

Հարց է ծագում՝ ինչո՞ւ բացառիկ: Երբ դա բացառիկ դեպք է, ապա ո՞րն է կանոնը, օրենքը: Իհարկե, երբ մակերեսորեն, միակողմանի դիտենք պատմական դեպքերը, դրանցից յուրաքանչյուրը մեզ կերևա որպես բացառիկ, անկրկնելի, պատահական: Իսկ այստեղից դժվար չէ եզրակացնել, թե ամբողջ պատմությունը եզակի դեպքերի պատահական, քաոսային կուտակումն է և որ պատմության մեջ չկա ոչ մի կանոնավորություն, օրինաչափություն, ուրեմն և հեղափոխությունների օրինաչափություն: Բայց դարձյալ նույն հարցն է ծագում. հապա որտեղ փնտրել օրինաչափությունը: Ըստ երևույթին, այն պետք է փնտրել պատմությունից դուրս: Ուրեմն ստացվում է, որ պատմության օրենքները պետք է փնտրել պատմությունից դուրս, ինչ-որ միստիկական արժեքների աշխարհում: Սա բուրժուական պատմա-փիլիսոփայության հին մեթոդոլոգիական սկզբունքն է. պատմությունը հայտարարվում է անկրկնելի, եզակի դեպքերի պատահական մի քաոս, իսկ օրենքը հայտարարվում է կամ սուբյեկտիվ, տրանսցենդենտալ աշխարհի կատեգորիա, կամ վերագրվում է բացարձակին, համաշխարհային ոգուն, գերագույն արարչին և այլն:

Հոկտեմբերյան հեղափոխությունը պատմական մեծագույն անհրաժեշտություն էր: «Անհնարին կլիներ վերջ տալ կապիտալիզմի տիրապետությանը, երբ դեպի այդ չտաներ կապիտալիստական երկրների ողջ տնտեսական զարգացումը... Ոչ մի ուժ չէր խորտակի կապիտալիզմը, երբ նրան հիմքից չքլատեր և չքայքայեր պատմությունը» (Լենին, հատ. 24, էջ 527): Սա ամ-

բողջապես վերաբերում է նաև Ռուսաստանին: Չնայած Ռուսաստանի և Արևմուտքի կապիտալիզմի ինկայական տարբերություններին, այն ընթանում էր կապիտալիզմի ընդհանուր հունով՝ իր բոլոր հակասություններով հանդերձ: Մարքսիստները վաղուց բացատրել են, որ Ռուսաստանը անխուսափելիորեն պիտի *կրկնի* (իհարկե, իրեն սպեցիֆիկ ձևով և պայմաններով) այդ ֆորմացիային հատուկ բոլոր սոցիալական և քաղաքական պրոցեսները: Մարքսիզմ-լենինիզմը գիտականորեն լուծեց պատմության մեջ *կրկնելիության* պրոբլեմը: Դրան իր ժամանակին անդրադարձել է Մարքսը: Երբ լույս տեսավ *Կապիտալ*-ի առաջին հատորը, որտեղ ինկայական ուժով բացահայտված է այդ ֆորմացիայի ծագման, զարգացման ու կործանման օբյեկտիվ օրինաչափությունը, գերմանական բուրժուազիայի ջատագովները իրենց մխիթարում էին այն հույսով, թե «փա՞ռք աստծո, Մարքսի դատավճիռը անգլիական կապիտալիզմի նկատմամբ է արված և Գերմանիային չի վերաբերում»: Մարքսը պատասխանեց, թե մի ուրախացեք պարոննե՛ր, նույն պատմությունը ձեզ հետ էլ է կատարվելու: Ճիշտ է, Գերմանիան կապիտալիստորեն ավելի թույլ է զարգացած, բայց, բացատրում էր Մարքսը, խնդիրը զարգացման ճշգրիտ մակարդակը չէ, այլ հասարակական-տնտեսական *հարաբերությունների տիպը*: Երբ երկիրը մտել է որոշ հարաբերությունների հունը, նա չի կարող իր ազատ կամքով դուրս ցատկել դրանից, նա պետք է *անխուսափելիորեն* անցնի այդ հարաբերություններից բխող պրոցեսները, բայց նա կարող է կրճատել երկունքի ժամը:

Լենինը այդ հարցին շատ անգամ է անդրադառնում: Նա բազմիցս ընդգծում է պատմական պրոցեսի բարդությունը, հարստությունը, հակասականությունը, զգուշացնում է միակողմանի, վերացական, դոգմատիկ մոտեցումից: Վերացական ճշմարտություն չկա, ճշմարտությունը կոնկրետ է: Յուրաքանչյուր երկիր, ժողովուրդ ընդհանուր օրինաչափության մեջ իր առանձնահատկությունը, Մարքսի խոսքերով ասած, վարիացիան ու գրադացիան է մտցնում: Լենինը բացատրում է, որ մարքսիզմի հակառակորդների համար խորթ է եզակիի և ընդհանուրի միահյուսման դիալեկտիկան: «Նրանց համար միանգամայն օտարոտի է ամեն մի միտք այն մասին, որ ամբողջ համաշխարհային պատմության զարգացման ընդհանուր օրինաչափությամբ բոլորովին չեն բացառվում, այլ, ընդհակառակը, ենթադրվում են զարգացման առանձին ժամանակաշրջաններ, որոնք ներկայացնում են այդ զարգացման կամ ձևի, կամ կարգի յուրատեսակությունը» (Լենին, հ. 33, էջ 567—568):

Եվ իրոք, ընդհանուր օրենքը այլ կերպ չի կարող դրսևորվել, քան այս կամ այն սպեցիֆիկ ձևով: Այդ ձևերից յուրաքանչյուրը մյուսից իր առանձնահատկությամբ անպայման տարբերվելու է, տարբերվելու է իր այս կամ այն անկրկնելի յուրահատկությամբ և հանդես է գալու որպես եզակի: Բայց այդ եզակիները չեն խախտում համաշխարհային պատմության զարգացման ընդհանուր գիծը, այլ հաստատում, բարդացնում են համաշխարհային պատմական պրոցեսի հիմնական գիծը, հանդիսանալով նրա դրսևորման ձևը: Այսպես է մարքսիզմ-լենինիզմը լուծում պատմության բնագավառում ընդհանուրի և առանձնահատուկի դիալեկտիկան:

***

Լենինը նշում էր Հոկտեմբերյան հեղափոխության նշանակության երկու ասպեկտը: Առաջին, լայն իմաստով՝ այդ հեղափոխությունը վիթխարի ազդեցություն գործեց համաշխարհային պատմության ամբողջ ուղղության և ընթացքի վրա. երկրորդ, նեղ իմաստով՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնող բոլոր երկրները այս ու այն չափով պետք է կրկնեն Հոկտեմբերյան հեղափոխության *որոշ գծերը*: Այստեղ չի կարելի բացարձականացնել ճշմարտությունը: Մեր հեղափոխության և մեր երկրի սոցիալիստական վերափոխումների վրա անդրադարձան այն առանձնահատկությունները, որ՝ 1) Հոկտեմբերյան հեղափոխությունը կատարվեց կապիտալիստորեն ոչ ամենազարգացած երկրում, որի էկոնոմիկան առանձնապես քայքայվեց իմպերիալիստական պատերազմի, ինտերվենցիայի և քաղաքացիական կռիվների հետևանքով. 2) մենք միակ երկիրն էինք, որ առաջին անգամ ռահվիրա հանդիսացանք և ճանապարհ հարթեցինք դեպի պատմության անծանոթ ուղիները. 3) սոցիալիզմի բնորիայից սոցիալիզմի գործնական կառուցման խնդրին անցնելու ընթացքում մեր երկիրը ստիպված էր հաղթահարել բազմաթիվ խոչընդոտներ և սխալներ: Հոկտեմբերը, նրան հաջորդող շինարարության ամբողջ ընթացքը բացահայտեցին հասարակության առաջադիմության պրոցեսի բարդ, դիալեկտիկորեն հակասական բնույթը: Սովետական ժողովուրդը ստիպված էր հաղթահարել անհաշիվ դժվարություններ և տալ ինկայական զոհեր:

Ուստի և կոմունիստական ու բանվորական կուսակցությունները այն երկրներում, որոնք ոտք են դնում սոցիալիստական վերափոխումների ճանապարհը, բոլորովին էլ կանոնիզացիայի չեն ենթարկում հոկտեմբերի որոշ առանձնահատուկ գծեր, մեխանիկորեն չեն ընդօրինակում, դոգմայի չեն վերածում: Այդ կուսակցությունները հաշվի են առնում իրենց երկրների կոնկրետ պատմական պայմանները՝ էկոնոմիկայի մակարդակը, դասակարգային ուժերի հարաբերակցությունը, անցած պատմական ուղին, պետությունների սիստեմում իրենց երկրի գրաված դիրքը, և դրանց համապատասխան մշակում իրենց ծրագրերն ու պլանները, տակտիկան ու ստրատեգիան: Սոցիալիզմին անցնելու ձևերի բազմապիսության լենինյան սկզբունքը վառ կերպով հաստատվեց ժողովրդական դեմոկրատիայի երկրների հարուստ փորձով:

Սակայն ինչպիսիք էլ որ լինեն պատմության խոտորումներն ու «խորամանկությունները», դրա մայրուղին Հոկտեմբերի հարթած ուղին է:



# ՆՈՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

Ա. ՊՈՂՈՍՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը պայմաններ ստեղծեց պրոլետարական գաղափարախոսության լայն տարածման և սովետական պատմագրության կարգացման համար, պատմագրություն, որը նախապատրաստված էր Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի մշակած պատմության մատերիալիստական ըմբռնմամբ, առաջավոր հասարակական մտքի մինչ այդ ձեռք բերած նվաճումներով:

Ռուսաց պատմության *Համառոտ ակնարկի* հեղինակ Մ. Ն. Պոկրովսկին մեծ հեղափոխության առաջին օրերին անդրադառնալով նրա պատմության հարցին, ընդգծում էր, որ Հոկտեմբերյան հեղափոխության պատմությունն սկսել է գրվել ավելի շուտ, քան այն տեղի է ունեցել: Մ. Պոկրովսկին իր այդ եզրակացության համար բավականաչափ ամուր հիմքեր ուներ: Նա, ամենից առաջ, նկատի ուներ պրոլետարական հեղափոխության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի այն աշխատությունները, որոնք գրվել են մինչև Հոկտեմբերի հաղթանակը և ընդգրկել մարդկության պատմության ամենամեծ տարեթվին՝ 1917 թվականին տեղի ունեցած դեպքերից շատերը: 1927 թվականին լուսժողկոմատի պետական գիտական խորհրդի պլենումում Պոկրովսկին նշեց, որ «Վ. Ի. Լենինն արդեն դրել էր բոլշևիկյան գիտության ամուր հիմքերը, և մենք Հոկտեմբերյան հեղափոխությունն սկսեցինք գերազանց պինվածությամբ»:

Նախահեղափոխական տարիներին Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց սոցիալիստական հեղափոխության անխուսափելիությունը, մշակեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու թեորիան, հիմնավորեց մեկ, առանձին վերցրած, երկրում հեղափոխության հաղթանակի հնարավորությունը, հայտնագործեց սովետները որպես պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն ձև: Նրա շատ աշխատություններում բացահայտվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության համաշխարհային պատմական նշանակությունը:

Աշխարհում սոցիալիստական առաջին հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինը, միաժամանակ, նրա առաջին պատմագիրն էր: «Վ. Ի. Լենինը հիանալի պատմաբան էր,— ասում էր Ա. Վ. Լունաչարսկին,— և շատ նրբազգաց էր պատմական գործերի հեղինակների նկատմամբ» (**История СССР** 1964, № 2, стр. 8): Նրա աշխատություններն անսպառ գանձարան են Հոկտեմբերյան հեղափոխության պատմության ուսումնասիրության, հիանալի օրինակ և ուղեցույց մարքսիստական պատմագրության համար: Նրա բազմաթիվ աշխատությունները սովետական պատմագիրների համար հիմք են ծառայում ճշգրտելու հեղափոխության ամբողջական պատմության ուսումնասիրության խիստ կարևոր նշանակություն ունեցող շատ հարցեր:



Սովետական իշխանության գոյության առաջին տարիներին ռուսական պատմագրության մեջ դեռևս գոյություն ունեին իրարամերժ, միմյանց թշնամի երկու հիմնական ուղղություններ՝ մարքսիստական և իր դարն ապրող բուրժուական ու նրան հարող մանրբուրժուական ուղղությունները: Հոկտեմբերի հաղթանակից անմիջապես հետո մարքսիստական պատմագրությունն առաջադրեց հայրենական և համաշխարհային պատմության կարևորագույն պրոբլեմների ուսումնասիրության հույժ կարևոր խնդիրը: Առանձնակի ուշադրություն նվիրվեց Հոկտեմբերյան հեղափոխության պատմության ուսումնասիրությանը:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմագրության ստեղծման առաջին շրջանում մարքսիստ պատմաբանները ստիպված էին հաղթահարել գաղափարական բնույթի շատ դժվարություններ ու խոչընդոտներ, դիմակայել հարձակումները Հոկտեմբերյան հեղափոխության և դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի սկզբունքների վրա, պաշտպանել մարքսիզմի անաղարտությունը: Այս կապակցությամբ մեր պատմաբաններին օգնության եկան Վ. Ի. Լենինի *Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին*, *Պետության մասին* և մի շարք այլ աշխատություններ, որոնք բուրժուական պատմագրության դեմ սկզբունքային պայքարի անգնահատելի օրինակ դարձան:

Հոկտեմբերյան հեղափոխությունը շրջադարձային կետ հանդիսացավ մարքսիստական պատմական գիտության կարգացման համար և, միաժամանակ, նոր ուժով բացահայտեց ազնվականական-բուրժուական պատմագրության մեթոդոլոգիայի և պատմական ըմբռնումների հակագիտականությունը: Հեղափոխության կրակներում լիբերալ-բուրժուական պատմագրության բոլոր հոսանքները գաղափարապես սնանկացան: Հոկտեմբերի հաղթանակն անհերքելիորեն ցույց տվեց, որ Ռուսաստանի պատմական մտքի բոլոր հոսանքներից միայն մարքս-լենինյան ուղղությունն է մինչև վերջ գիտական, քանի որ միայն այն կարողացավ ո՛չ միայն բացահայտել համաշխարհային պատմության և նրա մասը կազմող Ռուսաստանի պատմության օրինաչափությունները, այլև հենվելով այդ օրինաչափությունների իմացության վրա, կանխատեսել կարգացման գալիք էտապները:

Սովետական իշխանության հենց առաջին տարիներին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ հիմնադրվեց Մարքսի-Էնգելսի ինստիտուտը (1920), Կարմիր պրոֆեսուրայի ինստիտուտը (1921), Սոցիալիստական ակադեմիան, հատկապես Հոկտեմբերյան հեղափոխության պատմության ուսումնասիրության համար՝ Իստպարտը, Հոկտեմբերյան հեղափոխության կենտրոնական արխիվը: Լենինի անմիջական նախաձեռնությամբ են սկսել հրատարակվել «Պրոլետարական հեղափոխություն», «Կարմիր արխիվ», «Կարմիր տարեգիր» և այլ գիտական ամսագրեր: Խոսելով Հոկտեմբերյան հեղափոխության պատմության ուսումնասիրության հարցերում Լենինի ծառայությունների մասին, Մ. Ն. Պոկրովսկին նշում է, որ Վ. Ի. Լենինն է իրեն և Վ. Ադորատսկուն հուշել որքան հնարավոր է կարճ ժամանակամիջոցում գրել Հոկտեմբերյան հեղափոխության

եթե ոչ ամբողջական, գոնե խրոնոլոգիական պատմությունը (տե՛ս **Пролетарская революция**, 1930, №№ 7, 8):

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին իսկ օրից նրա պատմության ուսումնասիրության հարցը գտնվում էր Վ. Ի. Լենինի սևեռուն ուշադրության կենտրոնում: Նա պահանջում էր խորապես ուսումնասիրել ու լուսաբանել հեղափոխության ընթացքը և նրա դասակարգային նշանակությունը, հավաքել ու խնամքով մշակել այդ մեծ տարեթվի վերաբերյալ գրականությունը: Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական արխիվում պահպանվում են հեղափոխության վերաբերյալ 900-ից ավելի գրքեր, բրոշյուրներ ու թերթեր՝ Վ. Ի. Լենինի նշումներով: Վ. Ի. Լենինին հետաքրքրում էին ո՛չ միայն սովետական, այլև բուրժուական այն հեղինակները, որոնք անդրադարձել են Հոկտեմբերյան հեղափոխության պատմությանը: Հոկտեմբերյան հեղափոխության վերաբերյալ բուրժուական գրականության մասին նա ասում էր, որ բուրժուական այդ ֆալսիֆիկատորների գործերն այնքան վտանգավոր չեն պրոլետարիատի համար, որքան մանրբուրժուական, Կաուցկի-մենշևիկյան և էսեռական գրականությունը: Սոցիալիստական հեղափոխության մանրբուրժուական կեղծարարությունն այնքանով էր վտանգավոր, որ այդ կոնցեպցիայի կոնկրետ կրողները քողարկվում էին մարքսիզմի դրույթներով. նրանք բացահայտորեն հանդես չէին գալիս ռուսական պրոլետարական հեղափոխության դեմ, այլ դեմ էին միայն հեղափոխության օրինաչափությանը և նրա հաղթանակին:

Վ. Ի. Լենինը ողջունել է ռուսական հեղափոխությանը վերաբերող արտասահմանյան մարքսիստների և պրոգրեսիվ մտածողների գործերը:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմության մշակման գործում Վ. Ի. Լենինի դերը ցույց տալու համար անհրաժեշտ է մի ծավալուն գործ, բայց մեկ ընձեռած հնարավորությունների սահմանում մենք միայն ընդհանուր գծերով կարող ենք ցույց տալ նրա տիտանական աշխատանքը այդ բնագավառում: Իլյիչը միանգամայն իրավացի էր, երբ առանձնակի ուշադրություն էր նվիրում հեղափոխության պատմության ուսումնասիրության հարցին, որովհետև այն հնարավորություն կտար հայտաբերել հասարակության կարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, բացահայտել նրա ուղղությունները, շարժիչ ուժերը, վերականգնել նրա շարժման պատկերը՝ բոլորին մատչելի մանրամասնություններով: Վ. Ի. Լենինը Մեծ հեղափոխության պատմագիրների ուշադրությունն էր հրավիրում նրա դասակարգային էության բացահայտման վրա, որը արտահայտում էր քաղաքական ազդեցությունների բարդ հյուսվածքը, տարբեր ուղղությունների ու հոսանքների վերաբերմունքը, նրանց դիրքը հեղափոխության նկատմամբ:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմագրությունն ստեղծվել է ծանր պայմաններում: Նախ՝ հեղափոխության հաղթանակից հետո շատ քիչ էր մարքսլենինյան տեսությամբ պինված պատմաբանների թիվը, այնուհետև ծանր էր երիտասարդ հանրապետության ինչպես ներքին, այնպես էլ արտաքին դրությունը: Իրավացի էր Մ. Ն. Պոկրովսկին, երբ 1927 թվականին գրում էր. «...Այն ժամանակվա գիտնական բոլշևիկները, մասնավորապես բոլշևիկ պատմաբանները, անհատներ էին և այնքան ծանրաբեռնված վարչական ու այլ աշխատանքներով, որ ըստ էության գիտությանը, նրա վերակառուցմանը կարող էին տրամադրել միայն շատ քիչ ժամանակ: Իսկ ընդհանուր առմամբ և ամբողջությամբ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո առաջին տարիներին կուսակցությունը պատմություն էր ստեղծում, այդ պատճառով էլ նա պատմու-



թյուն գրելու ժամանակ չուներ (Стенограмма речи М. Н. Покровского, цит. по документам архива наркомпроса, М. Н. Лукином):

Այդ օրերին հակահեղափոխության գաղափարախոսները ամենուր կեղծ վերսիաներ էին տարածում սովետների անպայման ու շուտափույթ կործանման մասին: Հակահեղափոխության այդ կարգի հերյուրանքներն իրենց արտահայտությունը գտան *Հոկտեմբերյան հեղաշրջում* փաստաթղթերի և նյութերի ժողովածուում, որի նախաբանը գրել է պատմաբան Ն. Ռաժկովը: Նա կարգացնում էր այն թեզը, թե Ռուսաստանը հեղափոխության համար պատրաստ չէ և նման ընթացքի գլխավոր պատճառը մասսաների անկուլտուրականությունն է, անգիտակից լինելը, տարերայնությունը, որոնք, իհարկե, իրենց՝ մասսաների մեղքը չեն, այլ նրանց և Ռուսաստանի դժբախտությունը: Հետագայում այդ թեորիան իրենց դավաճանական նպատակների համար օգտագործեցին ռեգենատ Կաուցկին՝ *Պրոլետարիատի դիկտատուրան*, մենշևիկ Ն. Սուխանովը՝ *Ռուսական հեղափոխության նշագրումները*, Պ. Միլյուկովը՝ *Ռուսական երկրորդ հեղափոխության պատմությունը* աշխատություններում: Հիշատակված և մի շարք այլ հեղինակներ ամեն կերպ ջանում էին հիմնավորել պրակտիկայի կողմից մերժված՝ Հոկտեմբերյան հեղափոխության «պատահական», «անօրինաչափ», «հակաժողովրդական» լինելը:

Հոկտեմբերյան հեղափոխության վերաբերյալ հակալենինյան կոնցեպցիայով հանդես եկան նաև տրոցկիստները, պրոպագանդելով լենինիզմին խորթ «պերմանենտ հեղափոխության» թեորիան, որը ժխտում է բանվորա-գյուղացիական դաշինքը և նրանում բանվոր դասակարգի ղեկավար դերը:

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ հեղափոխության պատմությունը սովետական պատմական գիտության կենտրոնական պրոբլեմներից մեկն է: Այդ պատմության ուսումնասիրության ընթացքում կադետա-մենշևիկյան պատմաբանների, տրոցկիստների, աջ օպորտունիստների դեմ մղված պայքարում դաստիարակվեց ու կոփվեց մարքսիստ-պատմաբանների մի հիանալի սերունդ:

Երիտասարդ սովետական պետությունը ծայրահեղ ծանր պայմաններում արեց հնարավորը մեր հայրենիքի պատմության ուսումնասիրության համար: Այդ ուղղությամբ առաջին քայլերից մեկը պատմական փաստաթղթերի և, առաջին հերթին *Հին արտաքին գործերի մինիստրության գաղտնի փաստաթղթերի ժողովածուի* հրապարակումն էր, որը Լենինի հանձնարարությամբ պատրաստել է Ն. Սարոկինը: Դա խիստ կարևոր էր, որովհետև այն լայն մասսաներին բացահայտում էր իմպերիալիստական պատերազմի թալանչիական նպատակները, իմպերիալիստական պետությունների մարդատյաց քաղաքականությունը: 1919—1920 թթ. հրապարակվեցին ռուս-լեհական հարաբերությունների փաստաթղթերի ժողովածուն, *Կարմիր գիրքը*, *Խաղաղության բանակցությունները Բրեստ-Լիտովսկում* և այլն:

Փաստական նյութի տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև 1920 թվականին հրատարակված ВЧК-ի *Կարմիր գիրքը*, ժողովրդական կոմիսարների սովետի որոշումները, ֆինանսների վերաբերյալ 1917—1918 թթ. դեկրետների և կարգադրությունների, ժողովրդական տնտեսության վերաբերյալ որոշումների և դեկրետների, ժողովրդական կրթության մասին բանվորագյուղացիական պետության որոշումների ու դեկրետների ժողովածուները և այլն:

Քաղաքացիական կռիվների տարիներին առանձնակի ուշադրություն նվիրվեց մասսայական գրականությանը, որովհետև անհրաժեշտ էր հեղափոխության շնորհիվ արթնացած բանվորներին ու գյուղացիներին բացատրել ու հասկաց-

եթե ոչ ամբողջական, գոնե խրոնոլոգիական պատմությունը (տե՛ս **Пролетарская революция**, 1930, №№ 7, 8):

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին իսկ օրից նրա պատմության ուսումնասիրության հարցը գտնվում էր Վ. Ի. Լենինի սևեռուն ուշադրության կենտրոնում: Նա պահանջում էր խորապես ուսումնասիրել ու լուսաբանել հեղափոխության ընթացքը և նրա դասակարգային նշանակությունը, հավաքել ու խնամքով մշակել այդ մեծ տարեթվի վերաբերյալ գրականությունը: Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական արխիվում պահպանվում են հեղափոխության վերաբերյալ 900-ից ավելի գրքեր, բրոշյուրներ ու թերթեր՝ Վ. Ի. Լենինի նշումներով: Վ. Ի. Լենինին հետաքրքրում էին ո՛չ միայն սովետական, այլև բուրժուական այն հեղինակները, որոնք անդրադարձել են Հոկտեմբերյան հեղափոխության պատմությանը: Հոկտեմբերյան հեղափոխության վերաբերյալ բուրժուական գրականության մասին նա ասում էր, որ բուրժուական այդ ֆալսիֆիկատորների գործերն այնքան վտանգավոր չեն պրոլետարիատի համար, որքան մանրբուրժուական, Կաուցկի-մենշևիկյան և էսեռական գրականությունը: Սոցիալիստական հեղափոխության մանրբուրժուական կեղծարարությունն այնքանով էր վտանգավոր, որ այդ կոնցեպցիայի կոնկրետ կրողները քողարկվում էին մարքսիզմի դրույթներով. նրանք բացահայտորեն հանդես չէին գալիս ռուսական պրոլետարական հեղափոխության դեմ, այլ դեմ էին միայն հեղափոխության օրինաչափությանը և նրա հաղթանակին:

Վ. Ի. Լենինը ողջունել է ռուսական հեղափոխությանը վերաբերող արտասահմանյան մարքսիստների և պրոգրեսիվ մտածողների գործերը:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմության մշակման գործում Վ. Ի. Լենինի դերը ցույց տալու համար անհրաժեշտ է մի ծավալուն գործ, բայց մեկ ընձեռած հնարավորությունների սահմանում մենք միայն ընդհանուր գծերով կարող ենք ցույց տալ նրա տիտանական աշխատանքը այդ բնագավառում: Իլյիչը միանգամայն իրավացի էր, երբ առանձնակի ուշադրություն էր նվիրում հեղափոխության պատմության ուսումնասիրության հարցին, որովհետև այն հնարավորություն կտար հայտաբերել հասարակության վարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, բացահայտել նրա ուղղությունները, շարժիչ ուժերը, վերականգնել նրա շարժման պատկերը՝ բոլորին մատչելի մանրամասնություններով: Վ. Ի. Լենինը Մեծ հեղափոխության պատմագիրների ուշադրությունն էր հրավիրում նրա դասակարգային էության բացահայտման վրա, որը արտահայտում էր քաղաքական ակդեցությունների բարդ հյուսվածքը, տարբեր ուղղությունների ու հոսանքների վերաբերմունքը, նրանց դիրքը հեղափոխության նկատմամբ:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմագրությունն ստեղծվել է ծանր պայմաններում: Նախ՝ հեղափոխության հաղթանակից հետո շատ քիչ էր մարքսլենինյան տեսությամբ պինված պատմաբանների թիվը, այնուհետև ծանր էր երիտասարդ հանրապետության ինչպես ներքին, այնպես էլ արտաքին դրությունը: Իրավացի էր Մ. Ն. Պոկրովսկին, երբ 1927 թվականին գրում էր. «...Այն ժամանակվա գիտնական բոլշևիկները, մասնավորապես բոլշևիկ պատմաբանները, անհատներ էին և այնքան ծանրաբեռնված վարչական ու այլ աշխատանքներով, որ ըստ էության գիտությանը, նրա վերակառուցմանը կարող էին տրամադրել միայն շատ քիչ ժամանակ: Իսկ ընդհանուր առմամբ և ամբողջությամբ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո առաջին տարիներին կուսակցությունը պատմություն էր ստեղծում, այդ պատճառով էլ նա պատմություն գրելու ժամանակ չուներ (Стенограмма речи М. Н. Покровского, цит. по документам архива наркомпроса, М. Н. Лукином):



Այդ օրերին հակահեղափոխության գաղափարախոսները ամենուր կեղծ վերսիաներ էին տարածում սովետների անպայման ու շուտափույթ կործանման մասին: Հակահեղափոխության այդ կարգի հերյուրանքներն իրենց արտահայտությունը գտան *Հոկտեմբերյան հեղաշրջում* փաստաթղթերի և նյութերի ժողովածուում, որի նախաբանը գրել է պատմաբան Ն. Ռաժկովը: Նա կարգացնում էր այն թեզը, թե Ռուսաստանը հեղափոխության համար պատրաստ չէ և նման ընթացքի գլխավոր պատճառը մասսաների անկուլտուրականությունն է, անգիտակից լինելը, տարերայնությունը, որոնք, իհարկե, իրենց՝ մասսաների մեղքը չեն, այլ նրանց և Ռուսաստանի դժբախտությունը: Հետագայում այդ թեորիան իրենց դավաճանական նպատակների համար օգտագործեցին ռեգենատ Կաուցկին՝ *Պրոլետարիատի դիկտատուրան*, մենշևիկ Ն. Սուխանովը՝ *Ռուսական հեղափոխության նշագրումները*, Պ. Միլյուկովը՝ *Ռուսական երկրորդ հեղափոխության պատմությունը* աշխատություններում: Հիշատակված և մի շարք այլ հեղինակներ ամեն կերպ ջանում էին հիմնավորել պրակտիկայի կողմից մերժված՝ Հոկտեմբերյան հեղափոխության «պատահական», «անօրինաչափ», «հակաժողովրդական» լինելը:

Հոկտեմբերյան հեղափոխության վերաբերյալ հակալենինյան կոնցեպցիայով հանդես եկան նաև տրոցկիստները, պրոպագանդելով լենինիզմին խորթ «պերմանենտ հեղափոխության» թեորիան, որը ժխտում է բանվորա-գյուղացիական դաշինքը և նրանում բանվոր դասակարգի ղեկավար դերը:

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ հեղափոխության պատմությունը սովետական պատմական գիտության կենտրոնական պրոբլեմներից մեկն է: Այդ պատմության ուսումնասիրության ընթացքում կադետա-մենշևիկյան պատմաբանների, տրոցկիստների, աջ օպորտունիստների դեմ մղված պայքարում դաստիարակվեց ու կոփվեց մարքսիստ-պատմաբանների մի հիանալի սերունդ:

Երիտասարդ սովետական պետությունը ծայրահեղ ծանր պայմաններում տրեց հնարավորը մեր հայրենիքի պատմության ուսումնասիրության համար: Այդ ուղղությամբ առաջին քայլերից մեկը պատմական փաստաթղթերի և, առաջին հերթին *Հին արտաքին գործերի մինիստրության գաղտնի փաստաթղթերի ժողովածուի* հրապարակումն էր, որը Լենինի հանձնարարությամբ պատրաստել է Ն. Սարոկինը: Դա խիստ կարևոր էր, որովհետև այն լայն մասսաներին բացահայտում էր իմպերիալիստական պատերազմի թալանչիական նպատակները, իմպերիալիստական պետությունների մարդատյաց քաղաքականությունը: 1919—1920 թթ. հրապարակվեցին ռուս-լեհական հարաբերությունների փաստաթղթերի ժողովածուն, *Կարմիր գիրքը*, *Խաղաղության բանակցությունները Բրեստ-Լիտովսկում* և այլն:

Փաստական նյութի տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև 1920 թվականին հրատարակված ВЧК-ի *Կարմիր գիրքը*, ժողովրդական կոմիսարների սովետի որոշումները, ֆինանսների վերաբերյալ 1917—1918 թթ. դեկրետների և կարգադրությունների, ժողովրդական տնտեսության վերաբերյալ որոշումների և դեկրետների, ժողովրդական կրթության մասին բանվորագյուղացիական պետության որոշումների ու դեկրետների ժողովածուները և այլն:

Քաղաքացիական կռիվների տարիներին առանձնակի ուշադրություն նվիրվեց մասսայական գրականությանը, որովհետև անհրաժեշտ էր հեղափոխության շնորհիվ արթնացած բանվորներին ու գյուղացիներին բացատրել ու հասկաց-

նել այն, ինչ տեղի էր ունեցել նրանց մոտ, համակել նրանց սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրով ու նվիրվածությամբ: Առաջին այդպիսի հանրամատչելի գործերի հեղինակներն էին ո՛չ թե մասնագետ պատմաբանները, այլ հեղափոխության ակտիվ մասնակիցները, բոլշևիկյան կուսակցության ու սովետական պետության գործիչներ՝ Ա. Ս. Բուբնովը, Ֆ. Է. Ձերժինսկին, Մ. Ի. Կալինինը, Ս. Մ. Կիրովը, Ա. Վ. Լունաչարսկին, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ս. Գ. Շահումյանը, Ա. Ի. Միկոյանը, Ս. Մ. Յարոսլավսկին, Վ. Ի. Նևսկին, Մ. Ն. Պոկրովսկին և ուրիշներ: Նման աշխատանքներն ունեցել են սուր հրապարակախոսական, քննադատական բնույթ: Թերևս հենց այդ տեսակետից էլ նրանք կարևոր նշանակություն ունեն Հոկտեմբերյան հեղափոխության պատմության գիտական մշակման համար: Նրանք են լայն մասսաներին հասցրել ճշմարտությունը հեղափոխության մասին և մերկացրել պատմության կեղծարարներին:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմագրության սկզբնական շրջանին են վերաբերում նաև Վ. Ա. Բիստրյանսկու *Գյուղացիական հեղափոխությունը Ռուսաստանում բուրժուական հրապարակախոսության գնահատմամբ*, Վ. Ա. Կարպինսկու *Պայքարի երկու տարին*, Վ. Ի. Նևսկու *Ինչպես է ստեղծվել սովետական իշխանությունը և ինչ է նա արել երեք տարում*, Մ. Ն. Պոկրովսկու *Պարոն Միլյուկովի հակասությունները* և այլն:

Սովետական իշխանության առաջին տարիներին հրապարակվել են հեղափոխության պատմության ուսումնասիրության համար կարևոր նշանակություն ունեցող մեմուարային գործեր: Դրանք հիմնականում նվիրված են անմոռանալի հոկտեմբերյան օրերին, որոնք Ջոն Ռիդի արտահայտությամբ, ցնցեցին աշխարհը:

20-ական թվականների սկզբներին առաջին փորձերը կատարվեցին կոմունիստական կուսակցության և Հոկտեմբերյան հեղափոխության պատմության վերաբերյալ հետազոտական աշխատություններ ստեղծելու բնագավառում: Այդպիսիներից են՝ Ա. Ս. Բուբնովի *ՌԿՊ-ի հիմնական հարցերը*, Վ. Ի. Նևսկու *ՌԿ(բ)Կ պատմություն*, Ս. Մ. Յարոսլավսկու *ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ ակնարկ*, Վ. Վոլինի *Հոկտեմբերյան դեկրետները* և այլն:

Նշված և նման կարգի այլ աշխատություններում դեռևս անբավարար էր կիրառվում պատմագրության մարքս-լենինյան մեթոդոլոգիան, սահմանափակ էին քննարկվող պրոբլեմների շրջանակները, երբեմն փաստաթղթերն անքննադատ էին օգտագործում, առանձին դեպքերում տեղ էին գտնում մեթոդոլոգիական ու փաստական սխալներ:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմությունն ընդհանրացնող առաջին փորձը կատարել է Ս. Ա. Պիոնտկովսկին իր *Հոկտեմբերյան հեղափոխությունը Ռուսաստանում, նրա նախադրյալներն ու ընթացքը* աշխատությամբ, որտեղ հեղինակը անդրադարձել է այդ էտապի սովետական պատմագրության հաջողություններին, սխալներին ու թերացումներին, բայց ինքը ևս մի շարք հարցերում թույլ է տվել լուրջ սխալներ: Խոսելով Հոկտեմբերյան հեղափոխության նախադրյալների մասին՝ նա գերագնահատում է Ռուսաստանի էկոնոմիկայում օտարերկրյա կապիտալի խաղացած դերը, ասելով թե այն «հրաշքներ է գործել», տուրք է տվել բուրժուական պատմագրության այն թեզին, թե Ռուսաստանը «հասունացած չէր սոցիալական հեղափոխության համար»: Բնութագրելով Հոկտեմբերյան հեղափոխությունը՝ Ա. Պիոնտկովսկին գրում է, թե «...այն միաժամանակ եղել է պրոլետարական և բուրժուա-դեմոկրատական» (տե՛ս նշված աշխատությունը, էջ 63, Մ., 1926):



Մեծ Հոկտեմբերի նման բնութագրումը ճիշտ չէ և չի համապատասխանում սոցիալիստական հեղափոխության լենինյան բնորոշմանը: Հեղինակն ավելի քան խորացնելով սխալը, հեղափոխության երկակի բնութագրության իր թեզը տարածում է նաև նրանից հետո սովետական կառավարության ձեռնարկած բոլոր վերափոխությունների վրա:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմության ուսումնասիրության բնագավառում նկատելի քայլ կատարվեց նրա տասնամյակի կապակցությամբ: Մեծ տպաքանակով լույս տեսան Վ. Ի. Լենինի բազմաթիվ գործերը, սկսվեց նրա երկերի ժողովածուի հրատարակությունը: Այնուհետև հրապարակվեցին Ա. Պիոնտկովսկու *1917 թ. հոկտեմբերը*, Ե. Մ. Յարոսլավսկու *Ինչպես բանվորներն ու գյուղացիները դեն շպրտեցին ցարին, կալվածատերերին ու կապիտալիստներին*, ինչպես նաև հեղափոխության տարբեր հարցերի ու էտապների վերաբերյալ մենագրություններ: Դրանցից հիշատակության են արժանի Ա. Մ. Պանկրատովայի՝ *Ակնարկներ Հոկտեմբերյան հեղափոխության մասին Մոսկվայում*, Ս. Մ. Դուբրովսկու՝ *Գյուղացիությունը 1917 թվականին*, Վ. Շեստակովի *Բոլշևիկները և գյուղացիությունը 1917 թվականի հեղափոխությունում*, Լ. Սիդորովի *Ակնարկներ 1917 թվականի հոկտեմբերյան հեղափոխության մասին* և այլն:

Այդ ժամանակաշրջանի գործերից առանձնապես ուշագրավ են Մ. Ն. Պոկրովսկու խմբագրությամբ հրապարակված *Ակնարկներ Հոկտեմբերյան հեղափոխության պատմության մասին* երկհատոր աշխատությունը, որն ընդգրկում էր հեղափոխության զարգացման ընդհանուր պատմությունը, և համեմատաբար, ամենածավալունն էր: Սակայն, ինչպես իրավացի նկատում է ինքը՝ Պոկրովսկին, այն դեռևս հեղափոխության լենինյան պատմությունը չէ: «Այն ինչ հիմա մենք անում ենք,— գրում է նա,— դա միայն այդպիսի աշխատանքի առաջին ուրվագիծն է»:

Մ. Ն. Պոկրովսկու այս գնահատականը կարելի է տարածել Հոկտեմբերյան հեղափոխության տասնամյակի կապակցությամբ հրատարակված մյուս բոլոր աշխատությունների վրա: Այսպիսով, Հոկտեմբերյան հեղափոխության պատմագրության համար կարևոր նշանակություն ունեցավ նրա առաջին տասնամյակի առթիվ հրապարակված գրականությունը, որը փաստական նյութ կուտակելու և հեղափոխության պատմությունն ընդհանրացնելու տեսակետից մեծ դեր խաղաց. սակայն պատմագրությանը դեռևս չհաջողվեց հաղթահարել կարևոր նշանակություն ունեցող բազմաթիվ ու բազմապիսի այն հարցերը, որոնց լուծմամբ միայն հնարավոր կդառնա տալ Մեծ հեղափոխության իսկական լենինյան պատմությունը: Այդ շրջանի աշխատություններում թույլ են լուսաբանվել բոլշևիկյան կուսակցության ղեկավար դերը, Ռուսաստանում հեղափոխության հաղթանակի պատմական օրինաչափությունը, շարժիչ ուժերի գնահատականը, սոցիալիստական վերափոխությունները, դրանց համաշխարհային պատմական նշանակությունը և մի շարք այլ կարևոր հարցեր:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմության ուսումնասիրության բնագավառում շոշափելի աշխատանք կատարվեց 30-ական թվականներին: Այդ գործում մեծ դեր խաղաց կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1931 թվականի հուլիսի 30-ի որոշումը, ըստ որի, պետք է ստեղծվեր *Քաղաքացիական կռիվները ՍՍՀՄ-ում* բազմահատորյակը: Այն պատրաստելու և հեղափոխության պատմությունն ըստ ամենայնի լուսաբանելու նպատակով այդ գործում ներգրավվեցին կուսակցության նշանավոր գործիչներ, հեղափոխու-

թյան դեպքերի մասնակիցներ, պատմաբաններ, տնտեսագետներ, կուլտուրայի և այլ բնագավառների աշխատողներ: Մեծ է Մ. Գորկու ծառայությունը այդ օգտակար գործին:

Այդ ժամանակաշրջանի սովետական պատմագրության հիմնական խնդիրներից էր պատմական հետազոտությունների մեթոդների, եղանակների ու տեխնիկայի, ինչպես նաև աղբյուրների մեկնաբանման ձևերի կարգացման պատմության ուսումնասիրությունը, որի միջոցով հեղինակները ձգտել են հասնել ժամանակաշրջանի օբյեկտիվ իմացությանը: Քաղաքացիական կռիվների պատմության հատորների նախապատրաստման տարիներին տեղի են ունեցել պատմական հետազոտության մեթոդների ճշտում ու կատարելագործում, ընդլայնվել է աղբյուրների ուսումնասիրության բնագավառը, ընդգրկվել են նոր նյութեր, պատմական աղբյուրներն ուսումնասիրվել են նոր տեսանկյունով, ուժեղացել է քննադատական մոտեցումն աղբյուրների նկատմամբ, նրանց ուսումնասիրության համար մշակվել են նոր մեթոդներ ու ձևեր:

Քաղաքացիական կռիվների պատմության առաջին հատորը հիմնականում նվիրված էր Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստմանը: Երկրորդ հատորը՝ 1917 թվականի հոկտեմբեր-նոյեմբերյան դեպքերին—հեղափոխության հաղթանակին Պետրոգրադում, Մոսկվայում: Երրորդը՝ հեղափոխության հաղթանակի, նրա հաղթարշավի, ինչպես նաև սովետական իշխանության ներքին ու արտաքին քաղաքականության առաջին քայլերի պատմությանը: Այդ հատորը, սակայն, վերծ չէր թերություններից: Հատորի հեղինակները թույլ են մեկնաբանում երկրի տարբեր շրջաններում ազգային հարցի բարդությունն ու տարբեր շրջանների առանձնահատկությունները, հստակ ու համոզիչ չեն տալիս Կարմիր բանակի ստեղծման հետ կապված հարցերը և այլն: Մինչ նախապատրաստվել են բազմահատորյակի հաջորդ հատորները, սովետական պատմագրությունը հրապարակի վրա է դրել հեղափոխության տարբեր հարցերի լուսաբանման վերաբերյալ մի շարք աշխատություններ: Դրանցից են՝ Ի. Ի. Մինցի *Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը*, Դ. Ա. Չաղաևի *Սովետական պետության առաջին սահմանադրությունը 1918 թվականին*, Մ. Պ. Կիմի *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը*, Օ. Ն. Չաղաևայի *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստումը*, Վ. Ջակլևի *Բոլշևիկների քաղաքականությունը գյուղացիության նկատմամբ սովետական իշխանության ստեղծման և ամրապնդման ժամանակաշրջանում*, Փ. Ռոմանովի *Պրոֆմիությունները հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում* և այլն: Այնուհետև մի շարք գործեր են հրապարակվել ազգային հանրապետություններում և պաշտպանվել բազմաթիվ դիսերտացիաներ՝ նվիրված հեղափոխության պատմության կանական հարցերին: Այդ տարիներին հրատարակվել են *Սովետական իշխանության ագրարային քաղաքականությունը 1917—1918 թթ.*, *ՍՍՀՄ արդյունաբերության ազգայնացումը*, *Հեղափոխության հաղթանակը Ուկրաինայում, Հայաստանում, Վրաստանում և այլ վայրերում* փաստաթղթերի ժողովածուները:

Սովետական պատմաբանները միշտ էլ չթուլացող եռանդով զբաղվել են հեղափոխության ընդհանուր պատմության ստեղծման գործով: Այդ բնագավառում ավելի հաստատուն քայլեր կատարվեցին 50-ական թվականներին: Հրապարակ են եկել բանվորա-գյուղացիական դաշինքի, պրոլետարիատի դիկտատուրայի առաջին էտապի, սոցիալիստական վերափոխությունների վերաբերյալ լուրջ, գիտական մեծարժեք գործեր:



Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ սոցիալիստական հեղափոխության մեջ ամենակարևորը բանվորների և գյուղացիների կողմից պետական իշխանության գրավումը և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումն է: Բնական է, որ մեր պատմագիրները, առաջին հերթին, ուշադրությունը պետք է նվիրեին հենց այդ հարցին, սակայն մինչև 1942 թվականը, այսինքն՝ մինչև Քաղաքացիական կռիվների պատմության 2-րդ հատորի հրատարակումը, մեր գրականության մեջ այդ հարցը, ըստ ամենայնի, չէր ուսումնասիրվել:

Պրոլետարիատի դիկտատուրայի առաջին էտապի պատմությանը վերաբերող աշխատությունների հիմնական թերությունն այն էր, որ նրանք սովետական օրգանների հանդես գալն ու զարգացումը ուսումնասիրում էին դրանց քաղաքական ու տնտեսական գործունեությունից կտրված: 50-ական թվականներին, հենվելով Վ. Ի. Լենինի աշխատությունների վրա, սովետական պատմագրությունը հրապարակի վրա դրեց սովետական օրգանների քաղաքական ու տնտեսական գործունեությունը լուսաբանող մի շարք լուրջ գործեր:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմագրությունն զգալի նվաճումների հասավ, հատկապես, Հոկտեմբերի քառասնամյակի առթիվ: Միայն 1957—1959 թթ. հրատարակվել է հեղափոխության տարբեր հարցերին նվիրված 7000 գործ: Այդ աշխատանքներից հիշատակության են արժանի՝ *Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմությունը* կոլեկտիվ աշխատանքը՝ ակադեմիկոս Ն. Պոնոմարյովի գլխավորությամբ, *Համաշխարհային պատմության* 8-րդ հատորը՝ ակադեմիկոս Ժուկովի խմբագրությամբ, *ՍՍՀՄ պատմության սոցիալիզմի շրջանը*՝ Պ. Կիմի խմբագրությամբ: Այդ տարիներին հրապարակված ժողովածուներից կարևոր են *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը*, *Հոկտեմբերյան մեծ հեղափոխության քառասնամյակը*, *Հոկտեմբերյան զինված ապստամբությունը Պետրոգրադում*, *Մեծ Հոկտեմբերը*, *Հեղափոխության հաղթանակը ազգային հանրապետություններում և շրջաններում* և այլն:

Կոլեկտիվ աշխատանքների հետ մեկտեղ 50-ական թվականներին հրապարակվել են նաև մի շարք հեղինակային, ընդհանրացնող գործեր. Ս. Գապոնենկոյի *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը*, Ի. Նովգորոդովի *Կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական մեծ հեղափոխության ոգեշնչող ու կազմակերպիչ*, Ֆ. Նայդայի *Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը*, Ն. Գոլիկովի *Ակնարկներ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության մասին*, Ն. Գոնչարենկոյի *Մեծ հոկտեմբերը Դոնբասում*, Պ. Ն. Սոբոլևի *Չքավոր գյուղացիությունը որպես պրոլետարիատի դաշնակից Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակ*, և այլն: Բազմաթիվ աշխատություններ են լույս ընծայվել նաև ազգային հանրապետություններում:

Անհրաժեշտ է հատուկ ընդգծել, որ 30—40-ական թթ. պատմագրությունը թույլ էր լուսաբանել մասսայական հեղափոխական շարժումների պատմությունը, հատկապես զինվորական շարժումների ու բանակի՝ հեղափոխության մեջ ունեցած դերի հարցերը, իսկ 50-ական թվականներին արդեն այդ հարցերին լուրջ ուշադրություն նվիրվեց:

50-ական թվականներին հեղափոխության վերաբերյալ հրապարակված գործերի մեջ զգալի տեղ են գրավում կոմունիստական կուսակցության տակտիկան ու ստրատեգիան ընդհանրացնող աշխատությունները: Նրանցում ցույց է տրվում կուսակցության քաղաքական ու կազմակերպական ղեկավար դերը հեղափոխության հաղթանակի գործում: Այդ տարիներին սովետական պատ-

մագրությունը շոշափելի հաջողությունների հասավ հեղափոխության պատմական օրինաչափության ուսումնասիրության, բանվոր դասակարգի, գյուղացիության ու պինվորական մասսաների հեղափոխական գործունեության պրոբլեմների հետազոտության բնագավառում: Լուրջ նվաճումներ ձեռք բերվեցին նաև փաստաթղթերի հրապարակման ուղղությամբ: Միայն 1957—1958 թթ. հրապարակվել են փաստաթղթերի 128 ժողովածու, որոնցից 106-ը հանրապետություններում ու մարզերում: Այդ ժողովածուները, առաջին անգամ շրջանառության մեջ են դրել 22 հազար փաստաթուղթ, որոնք ընդհանուր առմամբ ավելին են, քան նախորդ 40 տարիների ընթացքում հրապարակվածը: Այդ ժողովածուներից խիստ արժեքավոր են՝ *Հոկտեմբերյան մեծ հեղափոխություն* բազմահատորյակը, *Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարում*, *Ռուսաստանի տնտեսական դրությունը Հոկտեմբերյան հեղափոխության նախօրյակին*, *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը և սովետական կարգերի հաստատումը Հայաստանում*, համանման ժողովածուներ մյուս ազգային հանրապետություններում և բազմաթիվ այլ ժողովածուներ:

Ներկա էտապի պատմագրության բնորոշ գիծն այն է, որ հանրապետություններում Հոկտեմբերյան հեղափոխության վերաբերյալ ստեղծվել են կոլեկտիվ աշխատություններ և մենագրություններ: Ազգային հանրապետությունների պատմաբանները մշակել են իրենց կոմկուսակցությունների, ազգային պետությունների կազմավորման ու զարգացման, պրոլետարիատի դիկտատուրայի դատական և այլ օրգանների ստեղծման, ագրարային վերափոխությունների, կուլտուրական շինարարության, Կարմիր բանակի ազգային զորամասերի ստեղծման, ժողովուրդների բարեկամության և հեղափոխության բազում այլ հարցերի պատմությունը:

Հոկտեմբերյան հեղափոխության պատմության ուսումնասիրության համար պակաս նշանակություն չունեն դեպքերի մասնակից մարդկանց հիշողությունները: Դրանցից արժեքավոր են *Լենինը Հոկտեմբերին* ժողովածուն, *Հեղափոխության հաղթանակը Պետրոգրադում, Մոսկվայում և արդյունաբերական այլ կենտրոններում* երկհատորյակը, որոնցում զետեղված են Ա. Ա. Անդրեևի, Ա. Ս. Բուբնովի, Ն. Կ. Կրուպսկայայի, Վ. Վ. Կույբիշևի, Ա. Վ. Լունաչարսկու, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Յա. Մ. Սվերդլովի և ուրիշների հիշողությունները:

Հեղափոխության պատմության վերաբերյալ իսկայական փաստական նյութ է պարունակում 1957—1962 թթ. ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի հրապարակած Հոկտեմբերյան դեպքերի 5 հատորանոց խրոնիկան:

Այսպիսով, չնայած անցած 50 տարիների ընթացքում սովետական պատմագրությունը մեծ նվաճումների է հասել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պատմության ուսումնասիրության ասպարեզում, այնուամենայնիվ, դեռևս հրապարակի վրա չկա Մեծ հեղափոխության պատմությունն ընդհանրացնող կապիտալ աշխատանք:

Հուսանք, որ մեր պատմաբանները հոբելյանական այս տարում կլրացնեն եղած բացերը, և մենք կունենանք աշխարհում առաջին սոցիալիստական հեղափոխության ամբողջական ու ընդհանրացնող լենինյան պատմությունը:




## ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԸ

*Պլանավորված է ընթացիկ հնգամյակի վերջին տարում՝ 1970 թվականին, Բասարգեչարի շրջանում արտադրել 240 հազար ցենտներ հացահատիկ, 14,3 հազար ցենտներ ծխախոտ, 72,8 հազար ցենտներ կաթ, 22,7 հազար ցենտներ միս, 2055 ցենտներ բուրդ և 2 միլիոն հատ ձու:*

*Արտադրական այս ցուցանիշներին հասնելու համար շրջկոմը և սկզբնական կուսակցական կազմակերպությունները առանձնահատուկ ուշադրություն են դարձնում կադրերի, հատկապես գյուղատնտեսության մասնագետների ճիշտ ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերին: Չէ որ գյուղատնտեսն ու զոոտեխնիկը, պատկերավոր ասած, գյուղատնտեսական արտադրության տեխնոլոգներն են և շատ բանով նրանց ճկուն աշխատանքից է կախված արտադրության բախտը: Մինչդեռ տարիներ առաջ մենք ավելի շատ ուշադրություն էինք դարձնում պրակտիկ աշխատանքում փորձված կադրերի, քան թե գյուղատնտեսական մասնագետների ընտրությանը: Պետք է ասել նաև այն, որ ընդհանրապես մասնագետ կադրեր քիչ կային շրջանում:*

*Հաշվի առնելով մասնագետ կադրերի ընտրության գործում անցյալում թույլ տրված սխալները, կուսշրջկոմը կոնկրետ միջոցառումների դիմեց հանրային տնտեսության բոլոր ճյուղերը համապատասխան մասնագետ կադրերով ապահովելու համար: Մենք որոշեցինք կոլտնտեսությունների նախագահներ, սովխոզների դիրեկտորներ, ֆերմաների վարիչներ, բրիգադավարներ առաջադրել առավելապես բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների, որպեսզի նրանց օգնությամբ հնարավոր լինի գյուղատնտեսությունը վարել գիտության և տեխնիկայի արդի նվաճումներին համապատասխան: Մենք մասամբ հասանք մեր նպատակին: Ներկայումս կոլտնտեսությունների նախագահներից և սովխոզների դիրեկտորներից 22-ն ունեն բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն. ֆերմաների վարիչներից և բրիգադավարներից 67-ը նույնպես գյուղատնտեսության մասնագետներ են: Կոլտնտեսություններում, սովխոզներում, արտադրական վարչություններում այժմ աշխատում են 48 զոոտեխնիկ, 41 գյուղատնտես, 51 անասնաբույժ, որոնց մեծ մասը բարձրագույն կրթություն ունեցողներ են:*

*Կոլտնտեսություններն ու սովխոզները համապատասխան մասնագետներով ապահովելու հետ զուգընթաց, շրջկոմը զգալիորեն բարելավել է կադրերի հետ տարվող աշխատանքի ոճն ու մեթոդները: Գաղտնիք չէ, որ վարչարարու-*

թյունն ու մանր խնամակալությունը մի ժամանակ խիստ կաշկանդել էին որոշ ղեկավար աշխատողների, նրանց զրկել տարրական ինքնուրույնությունից։ Այժմ շրջկոմը հաճախակի խորհրդակցում է տնտեսությունների ղեկավարների և, առանձնապես, մասնագետների հետ, ունկնդրում նրանց ձայնին, հաշվի առնում նրանց կարծիքներն ու առաջարկությունները։ Այդ ամենը մեծ օգուտ է բերում ընդհանուր գործին։

Մ. Մազրա գյուղի կոլտնտեսությունը շրջանի խոշոր տնտեսություններից մեկն է, բայց այստեղ մինչև 1965 թվականը ծխախոտի ցածր բերք էր ստացվում, մի բան, որը շատ էր անհանգստացնում կուսակցական կազմակերպությանը, շրջկոմին։

Մենք տեղում խորհրդակցեցինք կոլտնտեսության առաջավոր ծխախոտագործների, փորձված գյուղատնտեսներ՝ Ջաղո Կոպոյանի և Ասատուլա Հաբիլաևի հետ։ Նրանք հայտնեցին, որ աշխատանքի կազմակերպման բնագավառում կան լուրջ թերություններ, որոնց վերացման համար անհրաժեշտ է օղակի ներսում աշխատանքը կազմակերպել անհատական գործավարձային եղանակով։ Դա,— ասացին նրանք,— կնպաստի ծխախոտագործի նյութական շահագրգռվածության բարձրացմանը և խթան կհանդիսանա բերքատվության ավելացման համար։ Միաժամանակ, կոլտնտեսության գյուղատնտեսները ցույց տվեցին, որ ծխախոտի պլանտացիաների պարարտացումը կատարվում է առանց հաշվի առնելու տվյալ հողի կառուցվածքը, բոլոր դաշտերին հավասար կերպով տրվում է ազոտային պարարտանյութ, սելիտրա։ Մինչդեռ կան հողամասեր, որտեղ դրա կարիքը չի զգացվում։ Դրանից հետո, գյուղատնտեսների պահանջով կոլտնտեսությանը օգնության եկավ ագրոքիմիական լաբորատորիան, որը սահմանեց ծխախոտի պլանտացիաների քիմիական կառուցվածքը, կազմվեց նրանց պարարտացման հատուկ քարտեզ։

Կոլտնտեսության վարչությունը ծխախոտի պլանտացիաների մշակումը կազմակերպեց մասնագետների խորհուրդների համաձայն և հաջողությունների հասավ։ Այսպես, 1965 թվականին ծխախոտի 66 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվեց 28,9 ցենտներ բերք, իսկ 1966 թվականին կոլտնտեսությունը պլանով նախատեսված 1055 ցենտների դիմաց արտադրեց 1558 ցենտներ ծխախոտ։ Ծխախոտից ստացված դրամական եկամուտը կազմեց 311 հազար ռուբլի, կամ կոլտնտեսության ամբողջ եկամտի 37 տոկոսը։

Մ. Մազրայի օրինակը եզակի չէ։ Մասնագետների խորհուրդները հետևողականորեն կիրառելու շնորհիվ Նորակերտի, Ծովակի, Կարախմանի կոլտնտեսությունները նույնպես ծխախոտի բերքատվության բարձրացման գործում որոշակի հաջողությունների հասան։

Նորակերտի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ, զոոտեխնիկ Նիկոլ Մխիթարյանը իրենց կոլտնտեսությունում կազմակերպեց ոչխարների վաղ ծինը և հասավ դրական արդյունքների։ Վաղ ծնից ստացված գառներն ավելի առողջ են լինում և դրանով նախադրյալներ են ստեղծվում ոչխարի մսի և բրդի արտադրության ավելացման, ստերջության վերացման, կորուստները կանխելու համար։ Այս կոլտնտեսությունում մսի արտադրության մեջ ոչխարի մսի տեսակարար կշիռը կազմում է մոտ 50 տոկոս, ընթացիկ տարում յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացվել է 100—105 գառ։

Ֆերմայի վարիչ Ն. Մխիթարյանի աշխատանքի փորձը հանգամանորեն ուսումնասիրվեց ու արդյունքները քննարկվեցին շրջկոմի բյուրոյում։ Շրջկոմի



որոշմամբ այդ առաջավոր փորձը տարածվեց շրջանի կոլտնտեսություններում։ Աշխատելով նորակերտցիների օրինակով, Փ. Մազրայի, Ակունքի, Դաշքենդի, Զառքենդի տնտեսությունների ոչխարաբուծական ֆերմաները նույնպես լուրջ հաջողությունների հասան։ Զառքենդի կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացավ 97 գառ, իսկ հովիվ Նաբի Մամեդովն իր խնամած 360 մայր ոչխարից ստացավ 363 գառ, յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը հասցնելով 3,7 կիլոգրամի։ Ձեռք բերած լավագույն ցուցանիշների համար հովիվ Մամեդովն արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման, իսկ Դաշքենդի կոլտնտեսության հովիվ Մուսլամ Ջաբարովը պարգևատրվեց Լենինի շքանշանով և ընտրվեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ։ Ակունքի կոլտնտեսության առաջավոր հովիվ, կոմունիստ Եղիազարյանի անունը գրանցվեց ՀԿԿ Կենտկոմի պատվոգրքում։

Կիրառելով Ն. Մխիթարյանի փորձը, շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները, ամբողջությամբ վերցրած, անցյալ տարվա համեմատությամբ ոչխարների ծինն ավարտեցին 20 օր շուտ և յուրաքանչյուր 100 մայր ոչխարից 13 գլուխ գառ ավելի ստացան։

Մի ժամանակ շրջանի կոլտնտեսությունները համատարած ցանում էին «Ուկրաինկա» սորտի աշնանացան ցորեն, որը վերջին տարիներին այլասերվել էր և տալիս էր ցածր բերք։ Այն բարձր խոնավության պայմաններում ժանգոտվում էր և պառկում։ Երիտասարդ գյուղատնտես Մարատ Մկրտչյանը գյուղատնտեսության մասնագետների շրջանային հավաքում առաջարկեց կոլտնտեսություններում ստեղծել փորձադաշտ և զբաղվել բարձր բերքատու հացահատիկի նոր սերմերի արտադրությամբ։ Նրա առաջարկությունը սիրով ընդունվեց։ 50 հեկտար հողատարածություն առանձնացվեց փորձադաշտի համար, իսկ Մ. Մկրտչյանը նշանակվեց փորձադաշտի դիրեկտոր։ Շնորհալի մասնագետի ջանքերով տեղական պայմաններում փորձարկվեցին «Ալ. Մարգարիտ», «Բեզոստայա 1» սորտերը։ Պարզվեց, որ այդ սերմերից կարելի է ստանալ բարձր բերք։ Ն. Մկրտչյանի խորհրդով Բասարգեչարի կոլտնտեսությունը «Ալ. Մարգարիտ» սերմացուով մասսայական ցանք կատարեց և 1966 թվականին 600 հեկտար ցանքատարածության ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացավ 23 ցենտներ բերք, որը 6 ցենտներով գերազանցում է «Ուկրաինկայի» բերքին։ Իսկ «Բեզոստայա 1» աշնանացան ցորենից, որն արդեն լայն տարածում է գտել շրջանում, հրաշալի արդյունք է ստացվում։ Բավական է նշել, որ նրանով կատարված ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է մինչև 40 ցենտներ բերք։

Հաջող քննություն են բռնել նաև «Կրասնոդարի 6» և «Հիբրիդ 115» սերմատեսակները, որոնցով կատարված ցանքի մեկ հեկտարից ստացվում է 40—50 ցենտներ բերք։

Շրջանի ղեկավար օրգանները գյուղատնտեսության մասնագետների ակտիվ մասնակցությամբ միջոցառումներ մշակեցին նաև գարնանացան ցորենի քիչ բերքատու սորտերը առավել բերքատու սերմերով փոխարինելու ուղղությամբ։ Գարնանացան ցորենի գործածվող սերմերը փոխարինվում են «Վարդենիկ 9» և «Լեռնային 22» լավորակ նոր սերմերով։ Այդ գործում մեզ օգնում է Մարտունու շրջանի Վարդենիկի տնտեսությունում աշխատող գիտնական Սուրմենյանը, որը տարիներ շարունակ Սևանի ավազանի կոլտնտեսություններին մատակարարում է շրջանացված բարձր բերքատու սերմեր։

Սերմնաբուծության բարելավման միջոցառումների ճիշտ կազմակերպման

միջոցով շրջանի Մ. Մազրա, Բասարգեչար, Կարաիման, Շիշկայա, Ծովակ գյուղերի կոլտնտեսություններն անցյալ տարի հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հեկտարից հասցրեցին 15—24 ցենտների, իսկ Նորակերտի կոլտնտեսությունը 690 հեկտարի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 24,2 ցենտներ բերք։

Չնայած այս դրական օրինակներին, փորձադաշտերը դեռևս հեռու են հացահատիկային կուլտուրաների բարձրորակ սերմերի նկատմամբ եղած պահանջը բավարարելուց։ Բասարգեչարը հացահատիկային շրջան է, ժամանակն է, որպեսզի այն ունենա իր հատուկ սերմնաբուծական տնտեսությունը (էլիտային տնտեսություն)՝ շրջանի կոլտնտեսություններին և սովխոզներին անհրաժեշտ բարձրորակ սերմեր մատակարարելու համար։ Այս գործի կազմակերպման համար մեզ պետք է օգնեն հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը և համապատասխան այլ կազմակերպություններ։

Գյուղատնտեսության երիտասարդ մասնագետներին մեծ օգնություն են ցույց տալիս շրջկոմին կից գործող տնտեսագիտական համալսարանը, սիստեմատիկաբար անցկացվող գիտա-արտադրական կոնֆերանսները, սեմինարները և դասախոսությունները։ Արժանի է հիշատակել Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Աղաջանյանի, դոկտոր Պ. Հովհաննիսյանի, գիտության թեկնածուներ՝ Հովհաննիսյանի, Հակոբյանի, Այրումյանի, Տիգրանյանի, Ծատուրյանի, Տողանյանի և շատ ուրիշների օգնությունը, որոնք գիտական տարբեր թեմաների շուրջը դասախոսություններով հանդես են եկել շրջանի գյուղատնտեսության մասնագետների, կուսակցական, տնտեսական ակտիվի առաջ և շատ բան են սովորեցրել շրջանի աշխատողներին։

Կարելի է բազմաթիվ օրինակներ բերել, թե ինչպես գյուղատնտեսության բարեխիղճ մասնագետների օգնությամբ կոլտնտեսությունները տարեցտարի ավելացնում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Այսպես, օրինակ, Սարիյաղուբի կոլտնտեսությունը շրջանի տևականորեն ետ մնացող տնտեսություններից մեկն էր, ուր արտադրությունը չէր զարգանում։ Կուսշրջկոմը խորացավ այդ տնտեսության գործերի մեջ և լուրջ թերություններ բացահայտեց աշխատանքի կազմակերպման, ագրոզոոկանոնների կիրառման և մյուս բնագավառներում։ Դրանից հետո գյուղատնտեսության մասնագետների օգնությամբ համապատասխան միջոցառումներ մշակվեցին թերությունները վերացնելու և տնտեսությունը առաջ տանելու համար։ Այլ միջոցառումների հետ միասին այդ տնտեսության վարչության նախագահ երաշխավորվեց բարձրագույն կրթությամբ անասնաբույժ Մուսա Հուսեինովը, որը կարճ ժամանակամիջոցում, կուսակցական կազմակերպության հետ միասին, կարողացավ տնտեսությունը դուրս բերել նախկին վիճակից։ Այժմ Սարիյաղուբի արտելը քայլում է շրջանի առաջավոր տնտեսությունների շարքում. անցած տնտեսական տարում ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար նրան շնորհվել է շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը և երկրորդ կարգի մրցանակ։

Ջառքենդի կոլտնտեսությունը շրջանի լեռնային տնտեսություններից մեկն է, որը լուրջ հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։ Տարիներ շարունակ այս կոլտնտեսությունում ստացվում է ծխախոտի կայուն բերք՝ հեկտարից 23—25 ցենտներ։ Այստեղ անցյալ տարի մեկ ոչխարի բրդատվությունը կազմեց 3,1 կգ., ֆուրաժային կովի կաթնատվությունը՝ մոտ 1300 կգ.։ Անցած տնտեսական տարում ձեռք բերած հաջողությունների համար կոլտնտեսությանը շնորհվեց փոխանցիկ դրոշը և առաջին կարգի մրցանակ։

Ջառքենդցիները պայքարում են հնգամյակի երրորդ տարում առավել բարձր ցուցանիշների հասնելու համար. Նրանք բարեխղճորեն, ինչպես հարկն է կազմակերպում են ցանքատարածությունների մշակումը, անասունների ծինն ու խնամքը։ Գործի վերածելով սոցիալիստական պարտավորությունները, ջառքենդցիները պատվով կատարեցին կաթի, մսի արտադրության և վաճառքի առաջին եռամսյակի առաջադրանքը։ Այս կոլտնտեսության վարչության նախագահ Ջամշիդ Հանֆաևը, որը մասնագիտությամբ զոոտեխնիկ է, երկրորդ անգամ ընտրվեց ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ։

Բասարգեչարի կոլտնտեսությունը տարիներ շարունակ հեկտարից ստանում էր 3—4 ցենտներ ծխախոտ և 7—8 ցենտներ հացահատիկ։ Իրերի դրությունը փոխվեց, երբ այստեղ նախագահ առաջադրվեց գյուղատնտեսության երիտասարդ մասնագետ Հրանտ Մադոյանը։ Նա մի շարք դժվարությունների հաղթահարմամբ կարգավորեց տեղական և հանքային պարարտանյութերի օգտագործումը, խիստ հսկողություն սահմանեց դաշտային աշխատանքների որակի նկատմամբ, բարձրացրեց մարդկանց պատասխանատվությունը հանձնարարված գործը ժամանակին կատարելու և արտադրամիջոցները ռացիոնալ օգտագործելու համար։ Վերջին տարիներին Բասարգեչարի արտելը հեկտարից ստանում է 20—22 ցենտներ ծխախոտ և 18—20 ցենտներ հացահատիկ։ Շրջանի աշխատավորները բարձր գնահատեցին Հրանտ Մադոյանի ծառայությունը և նրան ընտրեցին ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ։

Օր-օրի ամրապնդվում են նաև Փ. Մազրայի կոլտնտեսությունը (նախագահ, զոոտեխնիկ Աբբասալի Հուսեինով), Չիչակլուի սովխոզը (դիրեկտոր Ռազմիկ Դանիելյան) և շատ այլ տնտեսություններ, որոնց ղեկավարները լավ կազմակերպիչներ են, ունկնդրում են գիտության խորհուրդներին։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը (1965 թ.) կուսակցական կազմակերպություններից պահանջեց՝ բարձրացնել մթերող կազմակերպությունների պատասխանատվությունն իրենց գործում։ Դրանից ելնելով շրջանային կոմիտեն առանձնակի ուշադրություն է դարձնում այդ բնագավառը մասնագետ կադրերով ապահովելու գործին։ Զագոտսկոտի շրջանային բաժանմունքը տարիներ շարունակ աշխատում էր վնասով, չէր ապահովում մսի որակը, զգալի չափերի էին հասնում կորուստները։ Շրջկոմը անդրադարձավ այդ հարցին և զագոտսկոտի բազայի կառավարիչ հաստատեց երիտասարդ մասնագետ Ալբերտ Պետրոսյանին, օգնեց նրան աշխատանքը ճիշտ կազմակերպելու և տնտեսությունը անհանդուրժելի վիճակից դուրս բերելու գործում։ Եթե 1964 թվականին շրջանում մթերված տավարի և ոչխարի միջակ և միջակից բարձր որակի մսի տեսակարար կշիռը կազմում էր միայն 55 տոկոս, ապա 1966 թ. կազմեց ավելի քան 64 տոկոս։ Այդ թվականին տնտեսությունն ունեցավ 13,6 հազար ռուբլու օգուտ։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի վճռական պայմաններից մեկն էլ կոլտնտեսությունները մեխանիզատորներով և ինժեներատեխնիկական որակյալ կադրերով ապահովելն է։ Այդ կադրերից է կախված հարուստ տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը և աշխատանքի արտադրողականության առավել բարձրացումը։

Ամեն տարի հայգյուղտեխնիկայի Բասարգեչարի բաժանմունքում կազմակերպվում են կոմբայնավարների, տրակտորիստների դասընթացներ։ Մի-

այն վերջին երկու տարում այդ դասընթացներում վերապատրաստվել են 150 մեխանիզատոր: Այժմ կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են ավելի քան 700 մեխանիզատոր: Նրանցից շատերի համբավը դուրս է եկել շրջանի և նույնիսկ հանրապետության սահմաններից: Ճանաչողները գովեստով են խոսում, օրինակ, անվանի մեխանիզատորներ Ապրես Գասպարյանի (սոցիալիստական աշխատանքի հերոս), Վոլոդյա Անդրեասյանի, Մալիք Հեյդարովի, Հադար Բայրամովի և շատ ուրիշների մասին, որոնք բարձր բերքի վարպետի կոչում են վաստակել: Մեխանիզատորների գործադրած ջանքերի շնորհիվ շրջանում դաշտային աշխատանքների ավելի քան 90 տոկոսը մեքենայացված է:

Կուսակցական կազմակերպությունները հետևողական աշխատանք են տանում նաև տնտեսագիտական կադրերի հետ: Կոլտնտեսություններում կայուն դրամական վարձատրության անցնելը տնտեսագետների առջև դրեց լուրջ խնդիրներ: Նրանցից պահանջվում է խոր թափանցել արտադրության էկոնոմիկայի մեջ, վեր հանել եղած ռեզերվներն ու հնարավորությունները, գործնական պայքար կազմակերպել խնայողության ռեժիմի պահպանման, ինքնարժեքի իջեցման համար:

Գաղտնիք չէ, որ մեր առանձին կոլտնտեսություններում դեռևս բարձր է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը: Գյունեյի կոլտնտեսությունում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը կազմում է 20, տավարի մսինը՝ 255, բրդինը՝ 450 ռուբլի, իսկ Գյոյսուի կոլտնտեսությունում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը կազմում է 26 ռուբլի և այլն: Ահա թե ինչու շրջկոմը և կուսակցական կազմակերպությունները ջանում են բարելավել կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսագիտական ծառայությունը: Նրանք նպատակասլաց աշխատանք են տանում տնտեսագիտական կադրերի հետ, բարձրացնում են նրանց դերն ու պատասխանատվությունը գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը իջեցնելու, տնտեսությունների եկամտաբերությունը ավելացնելու համար:

Պարարտանյութերը ճիշտ և արդյունավետ օգտագործելու նպատակով մեր արտադրական վարչության կից կազմակերպված է ագրոքիմիական լաբորատորիա: Հանրապետության հողագիտության ինստիտուտի աշխատողների օգնությամբ այդ լաբորատորիան (դիրեկտոր, գյուղատնտես Կառլեն Հայրունի) օգնեց պատշաճ կարգ ու կանոն մտցնելու կոլտնտեսություններում և սովխոզներում պարարտանյութերն օգտագործելու ասպարեզում:

Գյուղատնտեսության մասնագետները կազմում են մեր ինտելիգենցիայի զգալի մասը, նրանք մեզ ամենօրյա օգնություն են ցույց տալիս կուսակցության և կառավարության որոշումները կենսագործելու ասպարեզում:

Շրջկոմը և կուսակցական կազմակերպությունները մեծ ուշադրություն են դարձնում մասնագետ կադրերին հասարակական ու քաղաքական ակտիվ աշխատանքի ներգրավելու վրա:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի տոնակատարության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը լայն արձագանք է գտել աշխատավորության շրջանում: Բասարգեչարցիները պարտավորվել են հոբելյանական տարում արտադրել 240 հազար ցենտներ հացահատիկ, 14.300 ցենտներ ծխախոտ, 1760 ցենտներ բուրդ, ավելի քան երկու միլիոն ձու և այլն: Կուսակցական կազմակերպությունները պետք է քաղաքական-կազմակերպական աշխատանքի ծավալման միջոցով ապահովեն այդ պարտավորությունների անթերի կատարումը:



Շրջանի կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ առավելագույնս արդյունավետ կերպով օգտագործել եղած ռեզերվներն ու հնարավորությունները, հոգատարությամբ շրջապատել գյուղատնտեսության մասնագետներին, կենսագործել նրանց արժեքավոր խորհուրդներն ու առաջարկությունները, որը կնպաստի շրջանի առջև դրված խնդիրների հաջող կատարմանը:

Այժմ ավելի, քան երբևէ գյուղատնտեսությունը վարվում է գիտական հիմունքներով: Այդ կապակցությամբ օր-օրի մեծանում են նաև գյուղատնտեսության մասնագետների դերն ու պատասխանատվությունը: Ուժեղացնելով աշխատանքը գյուղատնտեսության մասնագետների հետ, զարգացնելով և ըստ ամենայնի պաշտպանելով նրանց ստեղծագործական նախաձեռնությունները, Բասարգեչարի շրջանի կուսկազմակերպությունները նորանոր հաջողությունների կհասնեն սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ասպարեզում:

ՅՈՒ. ՌՋԱԵՎ

ՀԿԿ Բասարգեչարի շրջկոմի առաջին քարտուղար

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

Հայաստանի պիոներական կազմակերպությունը, որն իր շարքերում ընդգրկում է ավելի քան 240 հազար պատանիներ և աղջիկներ, տասնամյակների փորձ է կուտակել մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության բնագավառում: Նա ջանասիրաբար օգնում է հանրապետության դպրոցների մանկավարժական կոլեկտիվներին՝ պատանի լենինյաններին պատվաստելու գաղափարական համոզվածություն, հավատարմություն հեղափոխական իդեալներին, հանրօգուտ աշխատանքի պահանջ, գիտելիքներ ձեռք բերելու անսահման ձգտում, ազնվություն ու արդարամտություն:

Պիոներական դրուժինաները ստեղծել են Լենինի ավելի քան 450 թանգարան ու սրահ և լայն գործունեություն ծավալել պատանի փոխարինողներին դաստիարակելու մեծ առաջնորդի կյանքի ու գործունեության օրինակով: Այսպես, Երևանի № 83 դպրոցում երրորդ տարին է, ինչ բացվել է Վլադիմիր Իլյիչի թանգարանը: Պիոներներն այնտեղ ամփոփել են նրա կյանքին վերաբերող հետաքրքրական նյութեր ու փաստաթղթեր, նրա սիրած բանաստեղծությունները, երգերը, ձայնապնակները: Պատանիների ու աղջիկների ձեռքերով պատրաստված ստենդները պատմում են ԳՕԷԼՌՕ-ի պլանի իրականացման, սովետական ժողովուրդների նվաճումների, Լենինի նշանավոր զինակիցների կյանքի մասին:

Դպրոցի պիոներ-էքսկուրսավարներն ուսուցիչների, կոմերիտականների օգնությամբ զրույցներ ու դիտումներ են կազմակերպում լենինյան սրահներում, սիրելի Իլյիչին նվիրված երգեր ու ոտանավորներ սովորում: Պիոներական դրուժինայի նշանաբանն է՝ «սովորել, ապրել և աշխատել ինչպես Լենինը»:

«Շողացեք, լենինյան աստղեր» համամիութենական ստուգատեսին մասնակցեցին պիոներական շատ դրուժինաներ. մատաղ սերնդին մեր ժողովրդի հեղափոխական ու մարտական տրադիցիաների ոգով դաստիարակելու ուղղությամբ տարվող աշխատանքի օգտակար շատ նոր ձևեր են ծնվել այդտեղ: Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղի միջնակարգ դպրոցի դրուժինայի

պիոներները Հայրենական մեծ պատերազմում զոհված 80 համագյուղացիների մասին նյութեր են հավաքել ու «մարտական փառքի թանգարան» հիմնել: Հավաքած ու սիստեմավորված նյութերը պատանիների հոգում պատվաստում են սիրո մեծ զգացում հերոսների հանդեպ, նրանց սխրանքները շարունակելու ձգտում:

Լենինականի պիոներական դրուժինաներն արժեքավոր նյութեր են հավաքել Մայիսյան ապստամբության մասնակիցների, 89-րդ Թամանյան դիվիզիայի հերոսագործության վերաբերյալ: Նման օրինակները շատ ու շատ են:

1966 թվականի ամռանը հանրապետության 500 էքսպեդիցիոն ակումբներ ու ջոկատներ տուրիստական արշավներ կազմակերպեցին հանրապետությունում և նրա սահմաններից դուրս: Նրանք ուսումնասիրեցին հեղափոխական իրադարձությունների պատմությունը, ծանոթացան մարտական վայրերին: Հանրապետության շատ դրուժինաներում ստեղծվել են սովետական բանակի սահմանապահների պատանի բարեկամների, գայականների ջոկատներ: Սերտ կապ պահպանելով սովետական բանակի մարտիկների հետ, ջոկատները լուրջ գործունեություն են ծավալել՝ պատանիներին ներշնչելու ռազմահայրենասիրական ոգի, հայրենիքի հանդեպ սեր, այն պաշտպանելու պատրաստակամություն:

Կոմունիստական կուսակցությունը, ինչպես միշտ, մեծ ուշադրություն է դարձնում պիոներական կազմակերպությունների աշխատանքի բարելավմանը, մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության ուժեղացմանը: Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննության առավ «Հանրապետության պիոներական կազմակերպության գործունեության ու նրա բարելավման միջոցառումների մասին» հարցը: Կենտկոմի որոշմամբ լուրջ խնդիրներ են դրվել կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների առջև: ՀԿԿ շրջկոմներն ու քաղկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է աջակցեն պիոներիային, ավելի շատ օգնեն այն բոլոր կազմակերպություններին ու գերատեսչություններին, որոնք կոչված են անմիջական աշխատանք տանելու երեխաների շրջանում, նպաստեն պիոներական կազմակերպության դերի բարձրացմանը, նրա ազդեցության տարածմանը: Բյուրոյի որոշումը դպրոցների, արտադրական կոլեկտիվների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտական ու կուլտուրական հիմնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններին պարտավորեցնում է ՍՄԿԿ XXIII համագումարի ցուցումների լույսի տակ վերանայել իրենց գործունեությունը պատանիների շրջանում տարվող աշխատանքի ասպարեզում, ամենուր ներգործել պիոներական շարժման վրա, հասնել այն բանին, որ պիոներական կազմակերպությունները դառնան կոմունիստական դաստիարակության դպրոց:

Հայտնի է, որ պիոներական կազմակերպությունը կոչված է պիոներներին սեր ներարկել ուսման նկատմամբ, գիտելիքներ կուտակելու անսպառ ձգտում, գիտակցական կարգապահություն: Հարկավ, կարելի է շատ օրինակներ բերել, երբ պիոներական դրուժինաները, ջոկատները կարողացել են հասնել ուսման բարձր որակի, երբ բոլոր կամ գրեթե բոլոր պիոներները դարձել են ուսման առաջավորներ: Սակայն հաջողություններն այդ բնագավառում դեռևս գոհացուցիչ չեն: Անցյալ ուսումնական տարում, օրինակ, միայն պիոներական հասակ ունեցող ավելի քան 28 հազար դպրոցական մնացել են նույն դասարանում կամ վերաքննություն ունեցել, պիոներական տարիք ունեցող դպրոցա-



կանների առաջադիմության տոկոսն ավելի ցածր է, քան ողջ դպրոցինը:

Դրուժինաներում ու ջոկատներում անբավարար են զբաղվում պիոներների կամքը կոփելու, ուսման գործում համառություն պատվաստելու խնդիրներով: Կոլեկտիվը չի ներգործում այն պիոներների վրա, որոնք լուրջ չեն վերաբերվում ուսմանը, անկարգապահ են, չեն կատարում տնային հանձնարարությունները:

Անվիճելի է, որ պիոներական կոլեկտիվը մեծ ուժ է՝ նրա հնարավորությունները ճիշտ օգտագործելու դեպքում: Պիոներական դրուժինան կարող է և պետք է բարձրացնի յուրաքանչյուր օղակի ու ջոկատի պատասխանատվությունը ուսման նկատմամբ: Մանկավարժական կոլեկտիվները, ջոկատավարները պետք է օգնեն ջոկատներին ու օղակներին գտնելու իրենց տեղը դպրոցի այդ կարևոր բնագավառում:

Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպությունը մանուկների ու պատանիների կոմունիստական ինքնագործ մասսայական կազմակերպություն է, որը ձգտում է պիոներներին դաստիարակել կոմունիստական ոգով, նրանց դարձնել մեր կուսակցության գործին նվիրված մարտիկներ, կոմունիզմի ջանասեր և անվեհեր քաղաքացիներ: Նման հատկություններով պետք է օժտված լինի ամեն մի պիոներ, դպրոցական— այս է պիոներական կազմակերպության առջև դրված օրվա խնդիրը:

Ջոկատներում ու դրուժինաներում տարվող դաստիարակչական աշխատանքի բազում լավ օրինակներ կարելի է բերել: Սակայն քիչ չեն նաև դեպքերը, երբ այն ետ է մնում կուսակցության պահանջներից: Ավելի քան 15 շրջանների ու քաղաքների պիոներական կազմակերպության գործունեության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նրանց ճնշող մեծամասնությունը պիոներներին չի ծանոթացնում գյուղերի ու քաղաքների, ենթաշեֆ կոլտնտեսությունների ու սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների ամենօրյա կյանքին:

Դպրոցը, պիոներական կազմակերպությունը պատանիներին դաստիարակելով անցյալի հեղափոխական տրադիցիաներով, պետք է այն հմտորեն զուգակցեն այսօրվա հերոիկային. առաջավորների օրինակով ցույց տան, թե ինչ է նշանակում ապրել ու աշխատել լենինաբար: Այս առումով վիճակը մխիթարական չէ Աբովյանի, Հրազդանի, Սևանի շրջաններում:

Անհրաժեշտ է, որ կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները լուրջ ուշադրություն նվիրեն այդ կարևոր գործին, հասնեն այն բանին, որ բանվորների ու կոլտնտեսականների, կոմունիստական աշխատանքի բրիգադավարների հետ պիոներական ջոկատների ու դրուժինաների իսկական բարեկամությանը չփոխարինվի տոնից տոն հապճեպ կազմակերպված կամ պատահական միջոցառումներով: Ամեն ջոկատ պետք է ունենա իր ղեկավարը, իսկական բարեկամություն անի արտադրական կոլեկտիվների հետ: Խոսքն այն մասին է, որ անհրաժեշտ է պիոներներին մշտապես ներգրավել ժողովրդի, կոմերիտմիության ընդհանուր գործում, նրանց ուսուցանել, որ կոմունիզմը կառուցվում է այսօր, որ յուրաքանչյուրի, այդ թվում և պիոներների մասնակցությունից է կախված, թե որքան հաջող կընթանա այդ լուսաշող հասարակության կառուցումը:

Ժամանակն է, որպեսզի պիոներներին սիստեմատիկաբար ինֆորմացիա տրվի աշխարհի անցուդարձի վերաբերյալ: Մանկավարժական մեր պրակտիկան պատանիների հետ զրուցելու փայլուն օրինակներ գիտե: Հիշենք Մ. Գոր-

կում, Ն. Կրուպսկայային, Ս. Լուկաշինին, Ա. Գայդարին, Ա. Մակարենկոյին, Մ. Կալինինին, Ա. Խանջյանին։ Քաղաքական ու քաղաքացիական մեծ պրոբլեմների մասին նրանք խոսում էին պարզ ու հստակ, հուզված ու միշտ լուրջ։ Իսկ այսօրվա երեխաները առավել հաղորդակից են կյանքին, նրանք մեծ ու լայն հնարավորություններ ունեն օգտվելու ռադիոյի, հեռուստացույցի, մամուլի ծառայություններից։ Ուրեմն, աշխատանքը ոչ թե հեշտանում, այլ բարդանում է, որը պետք է վարել մտածված։ Անհրաժեշտ է մշակել ճկուն ու կենսունակ մեթոդներ՝ պատանիներին իրազեկ պահելու օրվա հասարակական քաղաքական իրադարձություններին։ Ընդ որում, այդ մեթոդները կոչված են ակտիվացնելու մանուկների հետաքրքրասիրությունը։

Պիոներական կազմակերպությունները պետք է կարողանան հմտորեն օգտագործել դպրոցի ռադիոհանգույցի, պատի թերթերի հնարավորությունները։ Սակայն, ամենից առաջ, անհրաժեշտ է փոխել մեր վերաբերմունքը դիտողական ագիտացիայի նկատմամբ։ Դեռևս քիչ չեն այն դպրոցները, ուր պիոներական սենյակների պատերին փակցված են հին պլակատներ, պատի թերթեր և այլն։ Շատ դպրոցների միջանցքներ զարդարում են ֆոտոստենդները, ուր փակցված են թերթերից ու ամսագրերից կտրտված իլյուստրացիաներ՝ առանց մակագրությունների։ Բնական է, նման ֆոտոստենդները երեխաներին բան չեն սովորեցնում, միայն զուր ժամանակ են խլում ձևավորողներից։ Բացի այդ, դրանք երբեմն այնքան բարձր են փակցվում, որ տեսնելու համար աթոռի վրա բարձրանալու անհրաժեշտություն է զգացվում։

Քիչ չեն դեպքերը, երբ հիմնվում են թանգարաններ, զանազան անկյուններ, որոնք դաստիարակչական նպատակներով չեն օգտագործվում։

Պիոներական և կոմերիտական կազմակերպությունների ղեկավարները հաճախ կարևորություն չեն տալիս նաև այն բանին, թե պիոները վզկապ կապո՞ւմ, պատվի առնո՞ւմ է, կարո՞ղ է, ինչպես հարկն է, տողանի կանգնել, գիտե՞ ուր և որտեղ է պահված դրուժինայի դրոշը, ինչպե՞ս են երեխաներն ու մեծերը վերաբերվում վզկապին՝ դրոշի այդ մասնիկին։

Դպրոցի կուսակցական կազմակերպությունները, ուսուցիչների բանակը, որոնց մեծ մասը երբեմնի պիոներ ու կոմերիտական է եղել, պետք է հանդես բերեն քաղաքացիական պարտքի, պատասխանատվության զգացում, օգնեն պիոներական կազմակերպությանը, ամեն մի դպրոցականի համակեն՝ պիոներական օրենքները, կարմիր վզկապը, դրոշները, իր կազմակերպության տրադիցիաները հարգելու նվիրական զգացումով։ Միայն այդ դեպքում, հասակ առնելով, նրանք թանկ կգնահատեն կոլեկտիվի պատիվը, ճշտորեն կկատարեն մեր պետության օրենքները։

Անհրաժեշտ է պիոներներին հաճախակի ու շատ պատմել պիոներական կազմակերպության և կոմերիտմիության պատմությունը, այդ գործում ներգրավել ավագ պիոներներին։

Պիոներական կյանքով, հանուն հայրենիքի կատարած մեր գործերի խակական ռոմանտիկայով հրապուրված բազում պատանիների կողքին դեռևս քիչ չեն նրանք, որոնք անտարբեր, անմասնակից են մնում դպրոցի ու պիոներների գործերին, չեն սովորում դպրոցում, խախտում են հասարակական կարգի կանոնները։ Այդ խոտան է դաստիարակության բնագավառում, որի համար, դպրոցի հետ մեկտեղ, պատասխանատու է նաև պիոներական կազմակերպությունը։ Այս լուրջ թերությունները ծայր են առնում երեխաների նկատմամբ ոչ-պատշաճ ուշադրությունից։



Պիոներական մի շարք կազմակերպություններում վտանգավոր, սխալ պրակտիկա է արմատավորվել։ Պիոներական ջոկատների ու դրուժինաների աշխատանքը հաճախ գնահատվում է շաբաթօրյակների ու կիրակնօրյակների քանակով, մետաղի ջարդոնի հավաքած ու մակուլատուրայի տոննայով, հանդիսավոր հավաքույթներով ու տոնախմբություններով։ Պիոներական աշխատողները հաճախ գլուխ են կոտրում երեխաների համար նոր գործ, նոր մրցություն հորինելու վրա, ջանում են հասնել այն բանին, որ ցանկացած պահին պիոներներն արտասանեն սերտած բառերը։ Նրանց ավելի շատ հետաքրքրում է ցուցադրականը, արտաքին փայլը, քան այն, թե ի՞նչ հետք կթողնի տվյալ միջոցառումը երեխայի հոգում, արդյոք կզարգանա՞ միտքը։ Ցուցամոլական այս ֆորմալիզմը, իրականում, աչքակապություն է, անհամատեղելի կոմունիստական դաստիարակության ոգուն։

Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պետք է կարողանան բեկում մտցնել պիոներական կազմակերպության աշխատանքում, ուշադրություն նվիրեն տեղական կոլեկտիվների՝ օղակների ու ջոկատների գործունեության բարելավմանը։ Շատ կարևոր է, որ երեխաներն ապարդյուն չխոսեն կոլտնտեսության օգնության, դպրոցի բարելավման մասին, այլ դա վերածվի կոնկրետ գործերի։ Այսինքն՝ թե ինչպե՞ս օգնեցին, ինչպե՞ս մասնակցեցին հանրօգուտ նախաձեռնությանը։ Միայն կոնկրետ և մասսայական գործերով պետք է պատանի պիոներները կիրառեն իրենց օրենքները։

Պիոներական կոլեկտիվների գործունեությունը վարելիս անհրաժեշտ է նկատի առնել ոչ միայն երեխաների տարիքային առանձնահատկությունները, այլև հետաքրքրասիրությունները, խորապես ուսումնասիրել տղաների ու աղջիկների հոգեբանական յուրահատկությունները։ Միայն այդ դեպքում կարելի է հասնել այն բանին, որ աշխատանքը նույն չափով հետաքրքրի և՛ աղջիկներին, և՛ տղաներին, և՛ բարձր, և՛ ցածր դասարանցիներին։ Բացի այդ, պետք է ձգտել այնպես անել, որ սպորտի, տուրիզմի, տեխնիկայի, գրականության և արվեստի՝ պիոներներին պատճառած բավականությունը նպաստի նրանց բարոյական դաստիարակմանը, հասարակական գործչի հատկություններ պատվաստի նրանց հոգում։ Իրականում դեռևս հանդիպում են այնպիսի փաստեր, երբ դպրոցականը տեխխմբակում «իր համար» ռադիոընդունիչ է հավաքում, մոդել պատրաստում, որից օգտվում է միայն ինքը, այլ խոսքով, երբ կոլեկտիվի շահերը հետին պլան են մղվում։ Մինչդեռ մեր նպատակը ինդիվիդուալիստ, ամենագետ անհատ պատրաստելը չէ, այլ այնպիսի մարդ, որը ձգտում է ապրել ու աշխատել հանուն հասարակության։

Պիոներական ջոկատների աշխատանքի ձևերի ու մեթոդների հավասարեցումը չարիք է։ Պիոներական կազմակերպությունը պետք է ջանա մշտապես վառ պահել պիոներների հուզաշխարհը։ Երբ պիոներական կազմակերպությունը գործուն ազդեցություն կունենա յուրաքանչյուր պատանու վրա, երբ կապահովի յուրաքանչյուր պիոների ու պիոներական կոլեկտիվի ինքնագործունեությունը, միայն այն դեպքում կլուծվի նրան առաջադրված խնդիրը։

Ն. Կ. Կրուպսկայան մատնանշում է, որ պիոներական կազմակերպությունը «երեխաների համար» չէ, այլ «իրենց երեխաների» կազմակերպությունն է։ Պիոներների ինքնագործունեության զարգացմամբ մտահոգված է մեր կուսակցությունը։ Ամեն դաստիարակ պետք է լավ գիտենա, որ դրված է ոչ թե կոմունիզմի վեհերոտ անդամի, այլ գործնական մարդու, նոր կյանքի տիրոջ, ակտիվ մարտիկի դաստիարակման խնդիրը։ Բավական չէ միայն խոսքով ըն-

դունել պիոներների ինքնագործունեությունն ապահովելու անհրաժեշտությունը։ Անհրաժեշտ է ամեն մի պիոների և նրա կազմակերպության համար ստեղծել բոլոր գործերն ինքնուրույն վարելու հնարավորություն, որպեսզի նա պատասխանատու լինի օղակի, ջոկատի, դրուժինայի կատարածի համար։

Ինչպիսի՞ն է վիճակն իրականում։

Լենինականի № 1 և 5, Կիրովականի № 1, Երևանի մի շարք դպրոցներում և հանրապետության շատ շրջաններում խախտվում է պիոներներին օղակներում միավորելու սկզբունքը։ Ըստ երեխաների հակումների ու հետաքրքրասիրությունների կամավոր միավորման փոխարեն ջոկատավարները, ուսուցիչները, դաստիարակները օղակներ են կազմում հիմք ընդունելով նստարանների շարքերը, նշանակում են օղակավարներ, երեխաների վզին փաթաթում ջոկատների ու դրուժինաների խորհուրդների նախագահների ու անդամների իրենց թեկնածուներին։ Երրորդ դասարանի նոր կազմակերպվող ջոկատներում պիոներական օղակի փոխարեն երկար ժամանակ գործում է հոկտեմբերիկական աստղիկը, ջոկատի խորհրդի ընտրությունները ձգձգվում են։

Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ դրուժինաների մեծ մասում պիոներների 60 տոկոսը հասարակական որևէ հանձնարարություն չունի, ստեղծվել է ոչ ճիշտ պրակտիկա— միայն լավ աշակերտները, առավել ևս աղջիկներն են «ակտիվիստները», նրանք են զբաղեցնում ընտրական պոստերը, տղաները մեծ մասամբ մեկուսացած են։ Այս սխալ է, վնասակար։

Պիոներական կազմակերպության հաջող գործունեության կարևոր նախապայմանը նրա ճիշտ փոխհարաբերությունն է դպրոցի, մանկավարժական կոլեկտիվի, սերտ կապը ուսուցիչների հետ, ուսուցչի ակտիվ դերը պիոներական ջոկատների ու դրուժինաների կյանքում։

Պիոներական ջոկատների հաջող, բազմակողմանի գործունեությունը պետք է ուսուցչի, դպրոցի դաստիարակչական աշխատանքի ցուցանիշներից մեկը լինի։ Իսկ այդ պահանջում է բարձրացնել ուսուցչի պատասխանատվությունը պիոներական կազմակերպության գործունեության համար։ Պիոներական հասակի երեխաների դաստիարակության ողջ պրոցեսը պետք է իրականացվի պիոներական կազմակերպության միջոցով, ուստի և պետք է ընդարձակել պիոներական կազմակերպության գործունեության ոլորտը, բարձրացնել նրա պատասխանատվությունը ուսման, կարգապահության, դպրոցականների արարքների համար։

Դժբախտաբար շատ ուսուցչական կոլեկտիվներում մանկավարժների ու պիոներական կոլեկտիվների փոխհարաբերության խնդիրը ճիշտ չի լուծվում։

Ժողովրդական կրթության օրգանները, դպրոցների դիրեկտորները պետք է հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր դասարանի դասղեկ մանրակրկիտ պլան կազմի, որը պետք է համապատասխանի երեխաների հետաքրքրասիրություններին և, որ շատ կարևոր է, հաշվի առնի տարբեր տարիքի պիոներների շրջանում տարվող աշխատանքի առանձնահատկությունները։ Անհրաժեշտ է ուսուցիչներին խորապես ու հետևողականորեն ծանոթացնել պիոներական աշխատանքների բովանդակությանը, ձևերին ու մեթոդներին, փոխայցելություններ կազմակերպել լավագույն պիոներական ջոկատները և դրուժինաները՝ ընդօրինակելու նրանց փորձը։

ՋԵՄՄԱ ՀԱՍՐԱԹՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

# ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԱՐՏԱԴՐԱՄԱՍԱՅԻՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թ.) պլենումից հետո մեծապես բարձրացել է Ալավերդու շրջանի ինչպես սկզբնական, այնպես էլ արտադրամասային կուսկազմակերպությունների մարտունակությունը, նրանց դերը մասսաների դաստիարակման և կազմակերպման գործում։

Կուսկազմակերպությունները դարձել են աշխատանքային կոլեկտիվների հմուտ ղեկավարներ. նրանք ամենուրեք ջերմորեն պաշտպանում և ընթացք են տալիս կոլեկտիվների արտադրական նախաձեռնություններին, մոբիլիզացնում նրանց՝ կենսագործելու ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները։ Այդ ուղղությամբ համոզիչ շատ օրինակներ կարելի է բերել շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական հիմնարկությունների ու սովխոզների արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունների կյանքից։

Մի ժամանակ բարդ իրավիճակ էր ստեղծվել պղնձաքիմիական կոմբինատի ձուլարանում. փառաբանված ձուլողների կոլեկտիվը, որը սոցիալիզմի կառուցման պայքարի բոլոր էտապներում փայլուն էջեր է գրել հարազատ ձեռնարկության տարեգրքում, կարծես մի տեսակ համակերպվել էր պետական պլանների թերակատարման հետ։ Դրան էին հանգեցրել, մի կողմից՝ կոմբինատի վերակառուցման հետ կապված դժվարությունները, մյուս կողմից՝ աշխատանքի կազմակերպման ցածր մակարդակը։

Ձուլարանի անհամաչափ աշխատանքը խիստ բացասաբար էր անդրադառնում կոմբինատի մյուս՝ պղնձի ռաֆինացման, ծծմբաթթվի և քիմիական արտադրամասերի նորմալ գործունեության վրա։ Դրա գլխավոր պատճառներից մեկը արտադրամասային կուսկազմակերպության անբավարար գործունեությունն էր։ Թեպետ ձուլարանի կուսկազմակերպությունը միավորում էր 75 կոմունիստ, նրա ղեկավար ու առաջատար դերը գրեթե չէր զգացվում։ Նույնիսկ կանոնավոր չէին հրավիրվում կուսակցական ժողովներ, կուսբյուրոյի նիստեր, իսկ հրավիրելու դեպքում էլ դրանք վատ էին նախապատրաստվում, անցնում էին ցածր մակարդակով, ընդունում էին մակերեսային որոշումներ, որոնք չէին շոշափում կոլեկտիվին հուզող հարցերը։

Կոմբինատի կուսկոմիտեն ձուլարանում ստեղծված իրավիճակից դուրս գալու ելքը գտավ արտադրամասային կուսկազմակերպության ու նրա բյուրոյի գործունեության վերակառուցման մեջ։ Կուսկոմիտեի երաշխավորությամբ ձուլարանի կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար ընտրվեց փորձված ու գործիմաց կուսաշխատող Յ. Մարտիրոսյանը, որը մեծ եռանդով ձեռնամուխ եղավ կուսակցական-կազմակերպական և ագիտացիոն-մասսայական աշխատանքների բարելավմանը։

Կուսակցական կազմակերպության ընդհանուր ժողովներում, բյուրոյի նիստերում սկսեցին քննության դրվել ոչ միայն ընդհանուր քաղաքական, այլև այնպիսի հարցեր, որոնք վերաբերում էին կոլեկտիվի արտադրական

գործունեությանը, հուշվում էին կոմունիստների և անկուսակցական ակտիվի կողմից։

Բացառիկ ուշադրություն էր նվիրվում կուսակցական և աշխատանքային կարգապահության ամրապնդմանը։

...Հերթափոխի վարպետ Է. Թումանյանը կոպտել էր իր ենթակային, վիրավորել նրա արժանապատվությունը։ Թվում է կարելի էր նրան կանչել, անհատական կարգով զրուցել նրա հետ, որ այլևս այդպիսի սխալներ թույլ չտա։ Բայց ձուլարանի կուսբյուրոյի քարտուղարը մտածեց այլ կերպ. զանցանքը կատարել է այնպիսի մարդ, որն արտադրության հրամանատար է և կոչված է ցույց տալ բարձր կարգապահության անձնական օրինակ, դաստիարակել իր ենթականերին. Է. Թումանյանի թույլ տված սխալը դարձավ կուսբյուրոյի քննարկման հարց։ Ելույթ ունեցողները խիստ դատապարտեցին կոմունիստ վարպետի անվայել արարքը. կուսբյուրոն նրան հայտարարեց նկատողություն՝ առանց անձնական քարտի մեջ գրանցելու։

Ձուլարանում աշխատանքի կազմակերպումը բարելավելու նպատակով արտադրամասի կուսբյուրոն սկսեց ուսումնասիրել առանձին օղակների գործունեությունը։ Նրա հերթական նիստում լսվեց կոնվերտորային բաժանմունքի ավագ վարպետ Ա. Խլղաթյանի զեկուցումը՝ աշխատանքի կազմակերպումը բարելավելու մասին։

Ավագ վարպետն իր զեկուցման մեջ ասաց, որ ձուլարանի ղեկավարությունը (պետ Ն. Դորունց, տեխնոլոգ Ս. Հարությունյան) պետք է այնպես անի, որ պահեստային կոնվերտորը միշտ լինի պատրաստի վիճակում։ Գործող կոնվերտորներից մեկը շարքից դուրս գալու դեպքում, այն անմիջապես գործի կդրվի և դրանով իսկ կապահովվի կոնվերտորային բաժանմունքի անընդմեջ աշխատանքը։ Նա միաժամանակ առաջարկեց լուրջ ուշադրություն նվիրել ձուլման տեխնոլոգիայի ճիշտ պահպանմանը, որպեսզի պղնձի կորուստները (հեռացվող խարամի մեջ) հասցվի նվազագույնի։

Վարպետ Խլղաթյանի այս և մյուս առաջարկությունները դրվեցին կուսբյուրոյի որոշման հիմքում, որի կատարման ստուգումը հանձնարարվեց կոնվերտորային և արտացոլիչ բաժանմունքների կուսակցական խմբերին։ Կուսբյուրոյի ընդունած որոշումը քննության առնվեց ձուլողների հերթափոխային ժողովներում, որոնք միահամուռ հավանություն տվին նախատեսված միջոցառումներին և խոստացան իրենց բոլոր ուժերը գործադրել դրանց կենսագործման համար։

Այդ ամենի շնորհիվ աճեց ձուլարանի ամբողջ կոլեկտիվի արտադրական ակտիվությունը, ձուլողների մեջ բարձրացավ գիտակցական կարգապահությունը և պատասխանատվության զգացումը հանձնարարված գործի համար։

Աշխատանքի կազմակերպման բարելավումը մեծապես կախված է նաև բանվորների կուլտուր-կենցաղային սպասարկման վիճակից։

Ահա թե ինչու կուսակցական և արհմիութենական կազմակերպության գործադրած ջանքերի շնորհիվ, վերջերս ձուլարանում կապիտալ նորոգման ենթարկվեց հին լողարան-հանդերձարանը, արագացվեց նոր լողարան-հանդերձարանի և ճաշարանի կառուցման աշխատանքը։

Կոմբինատի ձուլարանի կուսբյուրոն և կոմունիստները բարձր գնահատելով կուսակցական ժողովի դերը, արտադրական ու հասարակական կյանքի բազմապիսի հարցերը լուծում են ժողովներում հանգամանորեն քննարկելու միջոցով։ Դա ակտիվացրել է կոմունիստներին, բարձրացրել նրանց պատասխանատվությունը՝ առաջադրված խնդիրների լուծման համար։ Այդ տեսակետից հատկապես ուսանելի էր այն ժողովը, ուր քննարկման դրվեց «Արդյունաբերական ձեռնարկությունների ու կառույցների կոլեկտիվներում աշխատանքի սոցիալիստական կարգապահություն դաստիարակելու ուղղությամբ Տուլայի մարզի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

Այդ ժողովում մտքերի փոխանակությունը սովորականի պես չսահմանափակվեց «հաստիքային» հռետորների ելույթներով։ Հանդես եկան շատ նոր մարդիկ, որոնք առաջարկեցին քաղաքական-մասսայական ամբողջ աշխատանքը ուղղել ձուլարանի աշխատողների շրջանում գիտակցական կարգապահության ամրապնդմանը, ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումների պրոպագանդան դարձնել ավելի կոնկրետ և առարկայական։ Խնդիր դրվեց կուսակցական և ընդհանուր բանվորական ժողովներում պարբերաբար քննարկել աշխատանքային կարգապահության ամրապնդման հետ կապված հարցեր, ժողովներում և պատի թերթի էջերում սուր քննադատության ենթարկել նրանց, ովքեր խախտում են կարգապահությունը և անբարեխիղճ վերաբերմունք ցուցաբերում աշխատանքում։

Կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների հիման վրա ձեռնարկված կոնկրետ միջոցները օգնեցին թերությունների վերացմանը. կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ սկսեց ավելի գիտակցորեն մոտենալ իր տեղամասի գործերին, սրտացավություն դրսևորել աշխատաժամանակը, հումքը, նյութերը, վառելիքը, էլեկտրաէներգիան խնայողաբար օգտագործելու հարցում, հոգատարությամբ վերաբերվել ժողովրդական սեփականությանը։

Կուսկազմակերպությունը լայն աշխատանք է ծավալել նաև սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ուղղությամբ։ Ձուլարանի կոլեկտիվը հոբելյանական տարվա համախառն արտադրության պլանը պետք է կատարի դեկտեմբերի 28-ին, իսկ 10 ամսվանը՝ ժամկետից 3-օր շուտ՝ հոկտեմբերի 28-ին։

Ձուլարանի կուսկազմակերպության գործադրած ջանքերը ապարդյուն չանցան։ Ձուլարանի կոլեկտիվն այժմ աշխատում է վերականգնել իր վաղեմի փառքը։ Նա այս տարվա առաջին եռամսյակում սև պղնձի արտադրության պլանը կատարել է 102,6, իսկ անոդային պղնձինը՝ 104,6 տոկոսով։

Բայց ձուլարանի աշխատողները չեն սահմանափակվում ձեռք բերածով։ Վերջերս տեղի ունեցած կուսժողովում կոմունիստներ Բ. Ղարագյոզյանը, Կ. Խաչատրյանը, Ա. Ալավերդյանը, Գ. Դորունցը իրենց ելույթներում նշեցին, որ կվարցի պակասի և ցածրորակության պատճառով հաճախ խախտվում է կոնվերտորների տեխնոլոգիական ռեժիմը, որ դեռևս բարձր են պղնձի կորուստները և այլն։

Հնգամյա պլանով պատասխանատու խնդիրներ են դրվել արտադրական ձեռնարկությունների առջև։ Դրանք սովորաբար հաջող են լուծվում այնտեղ, ուր կուսակցական կազմակերպություններն ապրում են լիարյուն կյանքով, կազմակերպական ու քաղաքական-բացատրական սիստեմատիկ աշխատանք են տանում մարդկանց շրջանում, իսկ անհրաժեշտության դեպքում՝ միջամտում արտադրության հարցերի լուծմանը։

Ահա մի օրինակ շինարարական հիմնարկների կուսկազմակերպությունների պրակտիկայից։ «Ախթալաշին» տրեստի կուսկոմիտեն (քարտուղար

Բ. Ասրյան) անցյալ տարվա հուլիսին քննարկեց Ախթալայի հանքահարստացուցիչ ֆաբրիկայի շինարարության ընթացքը։ Պարզվեց, որ խախտվում է այդ կարևորագույն օբյեկտի կառուցման ժամկետը, որ շինմոնտաժային կազմակերպությունները և հանքերի ղեկավարությունը վատ են կատարում իրենց պարտականությունները ֆաբրիկայի կառուցման կապակցությամբ։ Շինարարական աշխատանքների ետ մնալու մյուս գլխավոր պատճառն այն էր, որ № 2 շինվարչության կուսկազմակերպությունը թուլացրել էր կազմակերպական աշխատանքը բանվորների շրջանում։

Կուսկոմիտեի միջամտությունը փոխեց դրությունը։ Շուտով շինմոնտաժային կազմակերպությունները և հանքերի ղեկավարները ֆաբրիկայի կառույցին օգնեցին անհրաժեշտ կադրերով, մեքենաներով և սարքավորումներով։ Կուսկոմիտեի որոշման կատարման ուղղությամբ մեծ աշխատանք ծավալեց № 2 շինվարչության կուսկազմակերպությունը (բյուրոյի քարտուղար Ն. Ենոքյան), որի նախաձեռնությամբ այլ օբյեկտներից ժամանակավորապես ֆաբրիկայի կառույցում աշխատանքի ուղարկվեցին մեծ թվով մարդիկ, այդ թվում կոմունիստներ։ Կուսկազմակերպությունը ապահովեց կոմունիստների առաջատար դերը շինարարական աշխատանքներում, սոցիալիստական լայն մրցություն ծավալեց բանվորների միջև, ուժեղացրեց ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Որպես ժամանակավոր միջոցառում մտցվեց երկհերթ աշխատանք, հսկողություն սահմանվեց գրաֆիկների կատարման և շինարարական աշխատանքների որակի բարձրացման նկատմամբ, բարձրացվեց ինժեներա-տեխնիկական անձնակազմի պատասխանատվությունը։ Այսպիսով, տարիներ շարունակ ձգձգվող օբյեկտի կառուցման գործում շեշտակի բեկում մտցվեց և 1966 թ. վերջին այն հանձնվեց շահագործման։

Այս օրինակը ևս ցույց է տալիս, որ արտադրամասերում կուսակցական աշխատանքի հաջողությունը մեծապես կախված է կուսկազմակերպությունների քարտուղարների նպատակասլաց գործունեությունից, կոմունիստների քաղաքական ակտիվությունից և կուսկոմիտեի կողմից ցույց տրվող ղեկավարությունից։

Այդ տեսակետից ուշագրավ է Ուզունլարի սովխոզի կուսկոմիտեի գործունեությունը։ Նա նույնպես վերջին ժամանակներս զգալիորեն բարելավել է արտադրամասային կուսկազմակերպությունների ղեկավարումը։ Կուսկոմիտեն այժմ միավորում է 4 արտադրամասային կուսկազմակերպություն, որոնցում կան 157 կոմունիստ։ Խորամուխ լինելով արտադրության կազմակերպման ու ղեկավարման հարցերում, արտադրամասային կուսկազմակերպությունները քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցում են տնտեսական խնդիրների լուծման հետ և հասնում հաջողությունների։ Սովխոզի կաթնաանասնապահական ֆերմայի մարդիկ անցած տարի ամեն մի կովից ստացան 1920 կիլոգրամ կաթ, իսկ մեխանիզատորները յուրաքանչյուր հեկտարից՝ միջին հաշվով 27 ցենտներ հացահատիկ։ Տնտեսությունը հնգամյակի առաջին տարին փակեց զգալի օգուտով։

Ներկայումս շրջանում կան ընդամենը 83 սկզբնական կուսկազմակերպություն։ Դրանցից 9-ում ստեղծված են կուսկոմիտեներ, որոնք միավորում են 41 արտադրամասային կուսկազմակերպություն։

Կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, մենք զգալիորեն բարելավել ենք արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների կազմը։ 1965 թվականին քարտուղարների 73 տոկոսն ուներ



բարձրագույն և միջնակարգ կրթություն, իսկ այժմ ունի 90 տոկոսը։ Նրանք գրեթե բոլորն էլ կյանքի դպրոց անցած, իրենց գործը լավ իմացող, մարդկանց հետ աշխատելու հմտություն ունեցող կոմունիստներ են։ Փորձված կուսաշխատողների հետ արտադրամասային կուսակցական կազմակերպությունները ղեկավարում են նաև նոր ընկերներ։

Կուսշրջկոմը պրակտիկ օգնություն է ցույց տալիս նորընտիր քարտուղարներին։ Այդ խնդրում մեծ է շրջկոմին կից գործող սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների միամյա դպրոցի դերը։ Այստեղ դասախոսություններով հանդես են գալիս կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողներ, ունկնդիրները ծանոթանում են կուսակցական աշխատանքի ձևերին ու մեթոդներին։ Նրանք լսում են նաև առանձին կուսկոմիտեների և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների զեկուցումներն իրենց աշխատանքի փորձի մասին։

Դպրոցի ունկնդիրներին առանձնապես ուսանելի շատ բան տվեց տեղական կուսկազմակերպությունների առաջավոր փորձի հանգամանալի ուսումնասիրությունը։

Արտադրամասային կուսկազմակերպություններին ցույց տրվող օգնության ձևերից մեկն էլ այն է, որ շրջկոմի բյուրոն հաճախ լսում և քննարկում է նրանց հաշվետվությունները, բացահայտում թերությունները, ընդհանրացնում կուսակցական աշխատանքի դրական փորձը։

Լսելով պղնձաքիմիական կոմբինատի քիմիական արտադրամասի կուսբյուրոյի հաշվետվությունը, շրջկոմը մատնանշեց, որ այդտեղ կուսակցական ժողովներն անցնում են ցածր մակարդակով, հանդես են գալիս «մշտական» հռետորներ, հաճախ քարտուղար և նախագահ են ընտրվում միևնույն մարդիկ։ Կուսբյուրոն վատ է զբաղվում կուսշարքերի աճի, ընդունած որոշումների կատարման ստուգման կազմակերպման և քաղաքական-մասսայական աշխատանքի ուժեղացման հարցերով, անբավարար են մոբիլիզացվում աշխատողների ուժերը, ցածր է արտադրության կուլտուրան և այլն։

Շրջկոմի բյուրոն իր որոշման մեջ կոնկրետ միջոցառումներ նշեց բացահայտված թերությունները վերացնելու համար, որոնց կիրառումը դրական արդյունքներ տվեց։

Ներկայումս Ալավերդու շրջանի կուսկազմակերպությունների ջանքերն ուղղված են ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործմանը, մեծ հոկտեմբերի 50-ամյակը արժանավայել դիմավորելու կապակցությամբ ստանձնած պարտավորությունների անթերի կատարմանը։ Շրջանի կոմունիստները և բոլոր աշխատավորները ամեն ինչ անում են մեծ տոնը տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում աչքի ընկնող հաջողություններով դիմավորելու համար։

Բ. ԳՅՈՋԱԼՅԱՆ
ՀԿԿ Ալավերդու շրջկոմի առաջին քարտուղար

## ԼԱՅՆ ԹԱՓ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ

Թալինի շրջանի կուսակցական կազմակերպություններն այս տարի զգալիորեն բարելավել են կոմունիստների և բոլոր աշխատողների քաղաքական ուսուցման դրվածքը։ Քաղլուսցանցում կազմակերպված է սկսվել 1966—67

ուսումնական տարին, ավելի ճիշտ են կոմպլեկտավորված քաղդպրոցներն ու քաղխմբակները։ Բարելավվել է պրոպագանդիստների ընտրության գործը. շրջանի 80 պրոպագանդիստներն ու սեմինարավարներն ունեն բարձրագույն կրթություն, պրոպագանդիստական աշխատանքի մեծ փորձ։

Ինչպես ամենուրեք, մեր շրջանում նույնպես, ստեղծված է կուսակցական ուսուցման միասնական կուռ սիստեմ, որտեղ կոմունիստների քաղաքական ուսուցումը տարվում է ավելի կազմակերպված։ Քաղդպրոցներում և խմբակներում, անցյալի համեմատությամբ, առավել կազմակերպված են ընթանում պարապմունքները, բարձրացել է մասնակիցների գաղափարական մակարդակը, ամրապնդվել կարգապահությունը և այլն։ Առանձնապես օրինակելի են Զարչայի, Սուսերի, Ն. Բազմաբերդի, Մաստարայի, Արտենիի, Ահագչիի և այլ գյուղերի կուսկազմակերպությունների քաղդպրոցները։

Մաստարայի սովխոզի կուսկազմակերպության քաղլուսկաբինետը (վարիչ Խ. Աղաջանյան) հաճախ է կազմակերպում զեկուցումներ ու դասախոսություններ, հարց ու պատասխանի երեկոներ, օգնում պրոպագանդիստներին և ագիտատորներին, կոորդինացնում գյուղի կուլտուրայի օջախների գործունեությունը։ Կաբինետի նախաձեռնությամբ գյուղում ստեղծվել են կուլտուրայի և գիտաաթեիստական ժողովրդական համալսարաններ, որոնք շնորհակալ աշխատանք են կատարում բնակչության տարբեր խավերի շրջանում։ Միայն անցած մեկ տարում քաղլուսկաբինետի դասախոսները կարդացել են ավելի քան 70 դասախոսություն ու զեկուցում։

Կուսշրջկոմը, նրա պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը սիստեմատիկ հսկում են քաղուսուցման ցանցի աշխատանքը, ուսումնասիրում, ընդհանրացնում և մասսայականացնում լավագույն քաղդպրոցների, խմբակների և առանձին պրոպագանդիստների դրական փորձը։ Ամեն ամիս անց են կացվում սեմինար պարապմունքներ, որտեղ պրոպագանդիստներին տրվում են տեսական ու մեթոդական անհրաժեշտ ցուցումներ։

Կուսակցության պատմությունն ու տեսությունն ուսումնասիրողներին օգնելու նպատակով կուսշրջկոմը պարբերաբար դասախոսություններ է կազմակերպում ՍՄԿԿ պատմության, փիլիսոփայության և քաղաքատնտեսության հանգուցային ու ակտուալ թեմաների շուրջ։ Զեկուցումներով հանդես են եկել ինչպես մեր լավագույն պրոպագանդիստները, այնպես էլ ՀԿԿ Կենտկոմի ու ՀՍՍՀ Գիտելիք ընկերության դասախոսները։

Դասախոսական աշխատանքի ծավալմանը, լավագույն դասախոսների փորձի մասսայականացմանը նպաստում է նաև դասախոսական խմբի աշխատանքի ամենամյա պլանի հրապարակումը շրջանային թերթում։ Անցած մեկ տարում շրջկոմի դասախոսական խմբի և Գիտելիք ընկերության դասախոսների ուժերով շրջանի հիմնարկ-ձեռնարկություններում, կոլտնտեսություններում կարդացվել է ավելի քան 1800 դասախոսություն։ Չնայած դրան, դեռևս շատ անելիքներ ունենք, հատկապես դասախոսությունները բովանդակալից դարձնելու ուղղությամբ։

Դասախոսական պրոպագանդան, համարելով գաղափարական աշխատանքի կարևոր օղակը, շրջկոմը ջանում է այն դարձնել մատչելի ու նպատակասլաց։ Բայց միշտ չէ, որ այդ հաջողվում է։ Այս երևույթը չի կարող չմտահոգել շրջկոմին, գաղափարական ճակատի աշխատողներին։ Խորհրդակցելով այդ առթիվ, շրջկոմի գաղափարական հանձնաժողովում եկանք այն ընդհա-



նուր համոզման, որ դասախոսական պրոպագանդայի ավելի ճկուն և հետաքրքրական ձև է հարց ու պատասխանի կազմակերպումը։

Մեկ տարուց ավելի է, ինչ շրջանում դասախոսական պրոպագանդայում զգալի տեղ են գրավում հարց ու պատասխանի երեկոները։ Դրանք անցնում են աշխույժ ու բարձր մակարդակով։

Շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի նախաձեռնությամբ շրջանի բոլոր ակումբներում և գրադարաններում դրված են հարց ու պատասխանի արկղներ, որոնք բացվում են շաբաթը մեկ անգամ։ Այդ հարցերի հիման վրա էլ կազմակերպվում են զրույց-դասախոսություններ։ Վերջապես կուսշրջկոմի գաղափարական հանձնաժողովը, քննարկելով հարց ու պատասխանի երեկոների անցկացման պրակտիկան, որոշեց դասախոսական խմբի անդամներից ստեղծել 4 ռեյդային բրիգադա՝ գյուղերում և ավաններում, հիմնարկ-ձեռնարկություններում շաբաթը մեկ անգամ հարց ու պատասխանի երեկոներ կազմակերպելու նպատակով։ Այդպիսի երեկոներ են անցկացվել Նոր Արթիկում, Ցամաքասարում, Սուսերում, Վ. Թալինում, Արագածի պեռլիտի գործարանում, Աշնակում, Սաբունչիում և այլուր։

Պրոպագանդայի այս ձևը ընդլայնել է գաղափարական աշխատանքի ոլորտը, մարդկանց հետաքրքրասիրությունների շրջանակը՝ մեր երկրի ներքին և միջազգային հարցերի նկատմամբ։

Գաղափարական աշխատանքի հիմնական խնդիրներից է երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը։ Կուսշրջկոմի խորհրդով ու օգնությամբ ՀԼԿԵՄ Թալինի շրջկոմը մշակել ու իրականացրել է երիտասարդությանը հասարակական կյանքին ակտիվորեն հաղորդակից դարձնելու, նրանց աճող հոգևոր պահանջմունքները բավարարելու կոնկրետ միջոցառումներ, որոնք դրական արդյունք են տալիս։

Շրջկենտրոնում ստեղծվել է հասակակիցների համալսարան, որն առաջինն է հանրապետությունում։ Այդտեղ ընդգրկված են Ն. Թալին քաղաքատիպ ավանի 15—30 տարեկան 150 տղաներ ու աղջիկներ։ Համալսարանի ունկնդիրների համար կարդացվել են՝ «Աշխատանքը երջանկության աղբյուր է», «Հայրենիքի պաշտպանությունը ամեն մի սովետական քաղաքացու սրբազան պարտքն է», «Սիրի՛ր բնակավայրդ, պայքարի՛ր նրա օրինակելի կարգ ու կանոնի համար», «Սովետական երիտասարդության անմահ սխրագործությունը Հայրենական մեծ պատերազմում» և այլ թեմաներով դասախոսություններ։

Երիտասարդության հետ տարվող աշխատանքում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում հակահասարակական երևույթների վերացմանը։ Այդ նպատակով տեղերում անց են կացվում երիտասարդական երեկոներ՝ «Ոչ մի պորտաբույծ, անբան ու խուլիգան չպետք է լինի մեզ մոտ» նշանաբանով։ Երեկոներում երգիծանքի ու հումորի միջոցով հասարակական պարսավանքի են ենթարկվում գյուղի կամ ավանի հանգիստը խանգարողները, հարբեցողներն ու խուլիգանները։ Նախատեսված է նման երեկոներ անցկացնել նաև շրջանի մյուս գյուղերում ու ավաններում։

Մեր շրջանը բազմազգ է։ Վաղուց ավանդական են դարձել շրջանում ապրող հայ և քուրդ աշխատավորների հանդիպումները, տնտեսական և կուլտուրական շինարարության փորձի փոխանակումները։ Հաշվի առնելով այդ, կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները սիստեմատիկ կազմակերպում են փորձի պրոպագանդումն ու արմատավորումը։

Այժմ շրջանի 650 ագիտատորներ արտադրական օբյեկտներում, կառույցներում, անասնապահական ֆերմաներում և այլուր զրույցներ են անցկացնում մեծ Հոկտեմբերի 50-ամյակի, սովետական մարդկանց նվաճումների մասին։ Շրջկոմի դասախոսական խումբը և Գիտելիք ընկերության շրջանային բաժանմունքը համատեղ մշակել են այդ տարելիցին նվիրված դասախոսությունների և զեկուցումների պլան։

Այժմ շրջանի 650 ագիտատորներ արտադրական օբյեկտներում, կառույցներում, անասնապահական ֆերմաներում և այլուր զրույցներ են անցկացնում մեծ Հոկտեմբերի 50-ամյակի, սովետական մարդկանց նվաճումների մասին։ Շրջկոմի դասախոսական խումբը և Գիտելիք ընկերության շրջանային բաժանմունքը համատեղ մշակել են այդ տարելիցին նվիրված դասախոսությունների և զեկուցումների պլան։

Ակումբներում ու գրադարաններում, կուլտուրայի տներում կազմակերպվում են ստենդներ ու ցուցափեղկեր՝ Գյուղը, ավանը կամ շրջանը 50 տարում վերնագրով։ Ֆոտո-փաստերն ու ցուցատախտակները արտացոլում են գյուղերի ու ավանների տնտեսության, ժողովրդական կրթության ու կուլտուրայի բնագավառներում անցած 50 տարիներին ձեռք բերած նվաճումները։

Աշխատավորության շրջանում տարվող գաղափարական աշխատանքը ինքնանպատակ չէ, այն մշտապես զուգորդվել է տնտեսական հարցերի հետ և նպաստել շրջանի առջև ծառացած խնդիրների հաջող լուծմանը։

Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
ՀԿԿ Թալինի շրջկոմի երկրորդ քարտուղար

## ԱՄՍԱԳՐԵՐԻ ԷՋԵՐԻՑ

# ԼԱՅՆՈՐԵՆ ԼՈՒՍԱԲԱՆԵԼ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՅԱՆՔԸ

Լայն է այն պրոբլեմների շրջանակը, որոնք լուսաբանում է Հայաստանի կոմկուսակցության կենտկոմի «Լենինյան ուղիով» տեսական և քաղաքական ամսագիրը։ Նա ձգտում է ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների լույսի տակ ցույց տալ հանրապետության կուսակցական կազմակերպությունների ամենօրյա կազմակերպական և գաղափարական-քաղաքական գործունեությունը, ամփոփել նրանց փորձը։ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ամսագրում Կուսակցական կյանք-ը դարձել է մշտական բաժին։ Մեր առջև խնդիր չդնելով տալ ամսագրի լիակատար տեսությունը, կցանկանայինք քննարկել այդ բաժնում հրապարակվող որոշ նյութեր։

Пролетарии всех стран, соединяйтесь!
ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ
№ 8
1967
ЖУРНАЛ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ СОВЕТСКОГО СОЮЗА

Վերջերս ամսագիրը կանոնավոր է լուսաբանում սկզբնական կուսկազմակերպությունների կյանքը։ Հանրապետությունում դրանց թիվը հասնում է ավելի քան չորս հազարի։ Դրանց թվում են 903 արդյունաբերական, շինարարական, տրանսպորտի և կապի ձեռնարկությունների, 745 կոլտնտեսային և սովխոզային կուսկազմակերպություններ։ Սկզբնական կուսկազմակերպությունների փորձի ամփոփումը, նրանց մարտունակության բարձրացմանն օժանդակելը ամսագրի կարևորագույն խնդիրներից մեկն է։

«Պարտիական կոմիտեն և սկզբնական կազմակերպությունը» հոդվածում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ Ա. Սարգսյանը ընդարձակ փաստական նյութի հիման վրա ցույց է տալիս, թե կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները ինչպես են հոգ տանում սկզբնական կազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու համար։ Ամսագրի էջերում ընդգծվում է, որ նրանց հաջող գործունեությունը շատ բաներում պայմանավորված է քարտուղարների, բյուրոների և կուսկոմների ակտիվությամբ, գործարարությամբ։ Ուստի կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները անցած հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստներին օգնեցին կուսկազմակերպությունների ղեկավար մարմիններում առաջադրելու իրենց գործը իմացող, հեղինակավոր ընկերների։ Եթե սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների նախորդ կազմում բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեին 1811 մարդ, ապա այժմ դրանց թիվը կազմում է 1964, այսինքն՝ մոտավորապես կեսը։ Դրանց թվում 865 մարդ արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետներ են, որոնք նաև տիրապետում են կուսակցական աշխատանքի արվեստին։

Սպանդարյանի, Շահումյանի և Սևանի շրջկոմները, բարելավելով ղեկավարությունը սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ, ամրապնդելով կապերը նրանց հետ, բյուրոների նիստերում քննարկում են հաշվետվություններ նրանց աշխատանքի վերաբերյալ և իրենք էլ կոմունիստներին ինֆորմացիա են տալիս իրենց գործունեության մասին։ Կոմիտեների աշխատողներն ավելի ու ավելի հաճախ են լինում տեղերում, որտեղ նրանք կոնկրետ ու գործարար օգնություն են ցույց տալիս, կոմունիստների մեջ պատվաստում են հանձնարարված տեղամասի աշխատանքի համար պատասխանատվության զգացում։

Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության օրինակը, որի մասին պատմվում է ամսագրում, համոզում է, թե որքան շատ բանի կարելի է հասնել, եթե ներկուսակցական կյանքը հորդում է աղբյուրի պես, եթե կոմունիստները պատասխանատվություն են զգում իրենց արտելային տնտեսության ճակատագրի համար։ «Այստեղ բոլոր կոմունիստներն ունեն կուսակցական հանձնարարություններ։ Իսկ կուսբյուրոն մշտապես վերահսկում և ապահովում է դրանց կատարումը։ Սկզբնական կուսկազմակերպության ընդհանուր ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվել են ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարմանը, կոմունիստների մարքս-լենինյան ուսուցումը կազմակերպելուն, նրանց քննադատական դիտողությունների կենսագործմանը, ինչպես և երիտասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի բարելավմանն ու ուժեղացմանը, ընդունած որոշումների կատարմանը... վերաբերող մի շարք հարցեր»։ «Ճիշտ են բաշխված կոմունիստների ուժերը. 116 կոմունիստներից 64-ը զբաղված են դաշտավարությամբ, 19-ը՝ անասնապահական ֆերմաներում, 3-ը՝ շինարարությունում, իսկ մնացածը մասնագետներ և այլ աշխատանք կատարողներ են»։

Այդ առաջավոր կոլտնտեսության կուսկազմակերպության փորձը համադրելով Եղեգնաձորի շրջանի Ալայազ, Աղքենդ, Բոլորաբերդ գյուղերի կուսկազմակերպությունների գործերի վիճակի հետ, որոնք թույլ են ներգործում արտադրության վրա, ամսագիրը բացահայտում է այդ կազմակերպությունների նվազ ակտիվությունը։ «...Պատճառներից մեկն այն է,—մատնանշվում է հոդվածում,— որ այդ կազմակերպությունների մեծ մասում կոմունիստների միայն աննշան մասն է անմիջականորեն զբաղված արտադրության մեջ, և նրանք չեն ապահովում ավանգարդային դերը։ Ափսոս որ կուսշրջկոմը ևս այդ լուրջ թերությունների կողքով է անցնում»։

Ամսագիրը կուսակցական աշխատողներին ծանոթացնում է կադրերի հետ տարվող դաստիարակչական աշխատանքի այն բազմազան ձևերին, որոնք կիրառվում են հանրապետությունում։ Այդ տեսակետից ուսանելի է Արտաշատի կուսակցության կազմակերպության փորձը, որի մասին պատմում է կուսակցության շրջկոմի առաջին քարտուղար Ա. Մկրտչյանը՝ «Մեր առօրյա հոգսը» հոդվածում։ Շրջանում կոլտնտեսային կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերը, որպես կանոն, նայվում և քննարկվում են սկզբնական կուսկազմակերպություններում։ Այստեղ լավ հիմքերի վրա է դրված կադրերի ուսուցման, նրանց պրոֆեսիոնալ և քաղաքական մակարդակի բարձրացման գործը։ Վերջերս հերթական շրջանավարտներ տվեց ագրոքիմիայի համալսարանը, որտեղ սովորում էին մոտ երկու հարյուր կոլտնտեսությունների նախագահներ, սովխոզների դիրեկտորներ, գյուղատնտեսության մասնագետներ, կուսկազմակերպությունների քարտուղարներ։ Պրակտիկա է դարձել գյուղատնտեսության հրատապ պրոբլեմների շուրջը հանրապետության գիտա-հետազոտական ինստիտուտների հետ միասին գիտական սեսիաների կազմակերպումը։ Երրորդ տարին է, ինչ կուսակցության Արտաշատի շրջկոմին կից գործում է սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների միամյա դպրոց, որը երեք

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ ՆԱԽՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՐԱԿԻՑ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Ժողովրդական տնտեսության զարգացման ներկա փուլում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման և դրա հիման վրա ժողովրդի բարեկեցության հետագա բարելավման խնդիրները թելադրում են շարժման մեջ դնել արդյունաբերության բոլոր ռեզերվները։ Այդ նպատակով պահանջվեց կատարելագործել պլանավորման մեթոդները, ուժեղացնել արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումը, բարձրացնել աշխատողների նյութական շահագրգռվածությունը ձեռնարկությունների աշխատանքի արդյունքների բարելավման ասպարեզում. դրանք իրենց արտահայտությունը գտան ՍՄԿԿ ԿԿ 1965 թվականի սեպտեմբերյան պլենումի և կուսակցության XXIII համագումարի որոշումներում։ Այդ կապակցությամբ ընթացիկ հնգամյակի դիրեկտիվներում նշված է, որ անհրաժեշտ է «Բարելավել երկրի էկոնոմիկայի ղեկավարումը արտադրության պլանավորման, տնտեսական խթանման կատարելագործման, ձեռնարկությունների նախաձեռնության ու տնտեսական ինքնուրույնության ընդլայնման, իրենց աշխատանքի արդյունքներով աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ կուսակցության որոշումների անշեղ իրագործման հիման վրա»։ Միաժամանակ, խնդիր է դրվում ապահովել կենտրոնացված պլանային ղեկավարման ճիշտ զուգորդումը արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական նախաձեռնության և ինքնուրույնության մեծացման հետ։

Նոր տնտեսական ռեֆորմը, որը գործողության մեջ մտավ 1966 թվականից, լուրջ փոփոխություններ մտցրեց արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական և տնտեսական գործունեության բարելավման բնագավառում։ 1966 թվականին ՍՍՀՄ-ում պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցան 704 ձեռնարկություն, որոնք գերակատարել են պլանային առաջադրանքները, բարձրացրել արտադրության շահութաբերությունը։ Այդ ձեռնարկություններում արտադրանքի իրացման ծավալն անցյալ տարի, 1965 թվականի համեմատությամբ, ավելացավ ավելի քան 10, շահույթը՝ մոտ 25, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 8 տոկոսով։ Մինչդեռ ամբողջ արդյունաբերության մասշտաբով շահույթն ավելացավ 10, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 5 տոկոսով։

Անցած տնտեսական տարում Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններից միայն երեքը՝ Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանը, Երևանի ծխախոտի ֆաբրիկան (1966 թ. երկրորդ կիսամյակից) և Երևանի ժամացույցի գործարանը (չորրորդ եռամսյակից) անցան պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին։ Հետաքրքրական են այդ ձեռնարկությունների առաջին արդյունքների ամփոփումը, դրանց աշխատանքում եղած թերությունների բացահայտումն ու վերացումը։



Նոր սիստեմին անցնելու կարևոր պայմանը նախապատրաստական բազմակողմանի աշխատանքի ծավալումն է։ Երևանի ծխախոտի ֆաբրիկան պատշաճ չափով չէր նախապատրաստվել դրան, լուրջ թերություններ կային արտադրանքի իրացման բնագավառում։ Բանն այն է, որ ձեռնարկությունը հաշվի չառավ թողարկվող արտադրանքի նկատմամբ պահանջարկի փոփոխությունները և երկրորդ կիսամյակի պլանները կազմեց առանց ասորտիմենտային լուրջ փոփոխությունների։ Դրա հետևանքով ֆաբրիկան առաջին կիսամյակի համեմատությամբ ստիպված էր երկրորդ կիսամյակի արտադրության ծավալը կրճատել 1457 մլն. գլանակով։ Արտադրանքի որակի բարելավման նպատակով կատարվող ծախսումները բարձրացրին արտադրանքի ինքնարժեքը։ Հակառակ դրա, Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի և Երևանի ժամացույցի գործարանները որոշ նախապատրաստական աշխատանքներ կատարեցին։ Այստեղ, առաջին հերթին, ճիշտ սահմանվեցին արտադրանքի թողարկման և իրացման առաջադրանքները, կարգավորվեցին սպառող և մատակարարող կազմակերպությունների հետ կնքված պայմանագրերն ու ձեռնարկության նյութական խրախուսման ֆոնդերի կազմավորման աղբյուրները և այլն։ Ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանը ձեռնարկության ֆոնդերի կազմավորման նպատակով երկրորդ կիսամյակում ստանձնեց 140 հազար ռուբլու արտադրանքի, իսկ ժամացույցի գործարանը՝ (չորրորդ եռամսյակում) 12 հազար ժամացույցի լրացուցիչ թողարկման առաջադրանք։

Նոր սիստեմի պայմաններում ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը բնութագրող հիմնական ցուցանիշը արտադրանքի իրացման ծավալն է։ Այդ ցուցանիշով սահմանված առաջադրանքի կատարումը հնարավորություն է ընձեռում ստեղծել համապատասխան նյութական խրախուսման ֆոնդեր։

Հանրապետությունում նոր սիստեմով աշխատող Արզնու գործարանում արտադրանքի ծավալը, 1965 թվականի համեմատությամբ, 1966 թվականին ավելացել է 29,6 տոկոսով, ապրանքային և համախառն արտադրանքինը՝ համապատասխանաբար 33,6 և 33,1 տոկոսով։ Երևանի ժամացույցի գործարանում, 1965 թվականի համեմատությամբ, իրացված արտադրանքի աճը կազմել է 3 տոկոս, իսկ ապրանքային և համախառն արտադրանքինը՝ համապատասխանաբար 5,4 և 7,9 տոկոս։ Այլ է պատկերը Երևանի ծխախոտի ֆաբրիկայում։ Արտադրության ծավալի խիստ կրճատման հետևանքով այստեղ գրեթե բոլոր ցուցանիշները, 1965 թվականի համեմատությամբ, վատացել են։

Նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ արտադրական ֆոնդերի օգտագործման դիմաց սահմանվող վճարը, շահութաբերության պլանավորումն ըստ ֆոնդերի զգալիորեն բարելավում են հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների օգտագործումը։ 1966 թվականին մեկ ռուբլի հիմնական ֆոնդերին ընկնող արտադրանքը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացավ՝ ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանում 29,2, Երևանի ժամացույցի գործարանում՝ 3,1 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական պայմաններից մեկը աշխատողներին նյութապես հաճախակի խրախուսելն է։

Տեսնենք ինչի են հասել նոր սիստեմին անցած ձեռնարկություններն այդ բնագավառում։

Երևանի ժամացույցի գործարանում մեկ աշխատողի աշխատանքի արտադրողականությունը 1966 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 3 տոկոսով, միջին աշխատավարձը՝ 1,4 տոկոսով, իսկ նոր սիստեմի ժամանակ այն գերազանցել է աշխատանքի արտադրողականության աճին։ Նույնն է վիճակը ծխախոտի ֆաբրիկայում։ Այդ բացասական երևույթը պետք է անհանգստացնի ձեռնարկությունների ղեկավարներին։ Հակառակ փոխհարաբերություն է ստեղծվել ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանում։ Նոր սիստեմի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունն աճել է 36,6, իսկ միջին աշխատավարձը՝ ընդամենը 0,3 տոկոսով։ Մինչդեռ, անհրաժեշտ է ճիշտ համամասնություն սահմանել աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի միջև։

Պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմում ձեռնարկությունների տնտեսական գործունեության կարևոր ցուցանիշ են շահույթի աճն ու շահութաբերության մակարդակը։

Նոր սիստեմին անցած ձեռնարկություններից երկուսը՝ ճշգրիտ տեխնիկական քարերի և Երևանի ժամացույցի գործարանները, հաջողությամբ կատարեցին արտադրանքի իրացման պլանային առաջադրանքները և ապահովեցին շահույթի բարձր աճ։ Ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանում 1966 թվականին ընդհանուր շահութաբերությունը կազմեց 60, իսկ հաշվարկայինը՝ 57 տոկոս։ Ձեռնարկությունն 9 տոկոսով գերակատարեց հաշվեկշռային շահույթի պլանային առաջադրանքը և պլանից դուրս ստացավ 174 հազար ռուբլի։ Նախորդ տարվա համեմատությամբ շահույթի գումարն ավելացավ 648 հազար ռուբլով կամ 45,7 տոկոսով։ Ժամացույցի գործարանը շահույթի տարեկան պլանային առաջադրանքը գերակատարեց 11, իսկ չորրորդ եռամսյակինը՝ 17 տոկոսով։ Այստեղ ընդհանուր շահութաբերությունը 1966 թվականին հասավ 30,8 տոկոսի, նախատեսված 28,9 և 1965 թվականի՝ 27,3 տոկոսի դիմաց։ Այլ է պատկերը Երևանի ծխախոտի ֆաբրիկայում. այնտեղ իրացված արտադրանքի պլանային առաջադրանքների խիստ թերակատարման հետևանքով շահույթի տարեկան պլանը թերակատարվեց 15,3, իսկ երկրորդ կիսամյակում՝ 54,6 տոկոսով։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դեռևս անհրաժեշտ կապ չի ստեղծված ձեռնարկությանը իջեցվող պլանային առաջադրանքների միջև։ Այդ պատճառով իջեցվող որոշ ցուցանիշներ կարգավորվում են այնպիսիներով, որոնք վերադասը չի պլանավորում։ Այսպես, նոր սիստեմի պայմաններում ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման հիմնական ցուցանիշներն իրացված արտադրանքի ծավալը և շահույթի աճն ու շահութաբերության մակարդակն են, բայց ձեռնարկության աշխատավարձի ֆոնդը կարգավորվում է համախառն արտադրանքի և միջին աշխատավարձի ցուցանիշներով, որոնք վերադասը չի պլանավորում։ Այդպիսի պայմաններում դրանք վերևից չպլանավորելը զուտ ձևական է։ Ձեռնարկությունները չեն կարող հաշվի չառնել այդ հանգամանքը։ Նման երևույթներից խուսափելու համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է վերադասի կողմից պլանավորվող ցուցանիշների միջև ուղղակի կապ ստեղծել։ Նույնը վերաբերում է աշխատողների թվին և աշխատավարձի ֆոնդին։ Նոր պայմաններում ձեռնարկությունների աշխատողների թիվը և միջին աշխատավարձը վերադասը չի պլանավորում, բայց աշխատավարձի ֆոնդը պլանավորելիս, համախառն արտադրանքի հետ մեկտեղ, այս երկու ցուցանիշները հաշվի են առնվում։ Այդ հանգամանքը ձեռնարկություններին կաշկանդում է աշխատողների թվի կրճատման հարցում։ Արզնու գործարանում արտադրական անձնակազմը 1966 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 10,9, իսկ Երևանի ժամացույցի գործարանում՝ 4,8 տոկոսով։ Ձեռնարկությունները շահագրգռված չեն կրճատել աշխատողների թիվը, քանի որ համապատասխան չափով կպակասեցվի հաջորդ տարվա աշխատավարձի պլանային ֆոնդը։ Իսկ աշխատավարձի ֆոնդի կրճատումը կանդրադառնա ձեռնարկության նյութական խրախուսման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության ֆոնդերի վրա, որովհետև նշված ֆոնդերի մեծությունը կախման մեջ է դրվում աշխատավարձի ֆոնդից։ Նման պայմաններում ձեռնարկությունները ձգտում են ունենալ աշխատավարձի մեծ ֆոնդ։

Ինչպես տեսնում ենք, նոր սիստեմի պայմաններում դեռևս լուրջ աշխատանք պետք է կատարել այսպիսի թերությունները վերացնելու, ձեռնարկություններին իջեցվող ցուցանիշները կատարելագործելու և դրանց միջև որոշակի կապ ստեղծելու գործում։

Արտադրության պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի պայմաններում ձեռնարկությունների առաջին արդյունքները ցույց են տալիս, որ դրա շնորհիվ բարձրանում է առանձին աշխատողների և ողջ կոլեկտիվի շահագրգռվածությունը։ Որքան բարձր են տնտեսական գործունեության արդյունքները, այնքան մեծ են նյութական խրախուսման ֆոնդերի հատկա-



ցումները։ Արզնու հիշյալ գործարանում իրացման և շահույթի սահմանված առաջադրանքների կատարումը և գերակատարումը, ինչպես նաև շահութաբերության բարձր մակարդակը հնարավորություն ընձեռեցին 1966 թվականին նյութական խրախուսման ֆոնդին հատկացնել 108 հազար ռուբլի, որից երկրորդ կիսամյակում՝ 83 հազար ռուբլի, այն դեպքում, երբ 1965 թվականին այդ նպատակով հատկացումները կազմել են ընդամենը 30,0 հազար ռուբլի (հաշվարկված նոր նորմատիվներով)։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդին հատկացումները 1966 թվականի երկրորդ կիսամյակում, առաջին կիսամյակի համեմատությամբ, գրեթե կրկնապատկվել են։ Հատկացումները արտադրության զարգացման ֆոնդին 1966 թվականին կազմել են 65 հազար ռուբլի, 1965 թվականի 30,0 հազար ռուբլու դիմաց։

Երևանի ժամացույցի գործարանում 1966 թվականի միայն չորրորդ եռամսյակում նյութական խրախուսման ֆոնդի հատկացումները կազմել են 68 հազար ռուբլի, սոցիալ-կուլտուրական միջոցառումներինը և բնակարանային շինարարությանը՝ 15 հազար ռուբլի և արտադրության զարգացմանը՝ 36 հազար ռուբլի։

Նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների ցավոտ կողմերից է նաև կազմավորված նյութական խրախուսման ֆոնդերի ոչ-ժամանակին օգտագործումը։ Երևանի ժամացույցի գործարանում 1966 թվականի չորրորդ եռամսյակում ստեղծված նյութական խրախուսման ֆոնդը օգտագործվել է ընդամենը 33,2 տոկոսով, իսկ սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության, ինչպես նաև արտադրության զարգացման ֆոնդերը ընդհանրապես չեն օգտագործվել։ Ֆոնդերի օգտագործման բնագավառում գրեթե նույն վիճակն է Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանում և Երևանի ծխախոտի ֆաբրիկայում։

Նոր տնտեսական ռեֆորմի իրականացումը սերտորեն կապված է ձեռնարկություններում տնտեսական հաշվարկի սկզբունքների ըստ ամենայնի կիրառման հետ։ Այստեղ խոսքը, առաջին հերթին, ներգործարանային տնտհաշվարկի մասին է, առանց որի հետևողական կիրառման տնտեսական ռեֆորմը չի կարող տալ սպասվող արդյունքը։ Ընդհանրապես ներտնտեսական հաշվարկը, կոնկրետ ներգործարանայինը, լրիվ տնտհաշվարկի բաղկացուցիչ մասն է, նրա շարունակությունն ու զարգացումը։ Լրիվ տնտհաշվարկը կատարյալ է դառնում, երբ արտադրամասերին և տեղամասերին իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ որոշակի ինքնուրույնություն է տրվում և նյութական շահագրգռվածության հնարավորություն է ստեղծվում։ Երբ տնտեսական գործունեության արդյունքներն ամփոփվում են միայն ձեռնարկության մասշտաբով, ապա թույլ է լինում արտադրամասերի աշխատողների շահագրգռվածությունը տվյալ արտադրամասի միջոցների արդյունավետ օգտագործման և որակական ցուցանիշների բարելավման գործում։

Հանրապետությունում նոր սիստեմով աշխատող ձեռնարկություններից միայն Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանում է ներդրվել ներգործարանային տնտհաշվարկը, որը զգալիորեն բարելավել է ներգործարանային պլանավորումն ու հաշվառումը։ Գործարանի բոլոր արտադրամասերի համար մի շարք ցուցանիշների գծով մշակվել են պլանային առաջադրանքներ։ Արտադրամասի աշխատավարձի ֆոնդը կախման մեջ է դրվում տվյալ արտադրամասի արդյունքի իրացումից։ Այս բոլորը նյութապես խթանում են արտադրամասի կոլեկտիվին՝ ժամանակին և ռիթմիկ իրացնելու արտադրանքը։ Ըստ արտադրամասերի մշակված է պարգևատրման կանոնադրություն, ուր սահմանված են պարգևատրման ցուցանիշներն ու միջոցների աղբյուրները, պարգևի չափը յուրաքանչյուր ցուցանիշի կատարման համար, պարգևատրման պայմանները։

Նոր սիստեմով աշխատող ձեռնարկություններում ուղղակի կապ է ստեղծվել պարգևատրման ցուցանիշների ու միջոցների միջև։ Նախկինում այդպիսի կապ, ըստ էության չկար։ Այսպես, ինժեներա-տեխնիկական աշխատողների պարգևատրման ցուցանիշն ինքնարժեքի իջեցումն է, իսկ միջոցները՝

աշխատավարձի ֆոնդի տնտեսումը. պարզ է, ինքնարժեքի իջեցումը ոչնչով չէր ազդում աշխատավարձի ֆոնդի տնտեսման վրա։ Այդ պատճառով, ձեռնարկությունները հաճախ կատարում և գերակատարում էին ինքնարժեքի իջեցման առաջադրանքները, բայց պարգև չէին ստանում աշխատավարձի ֆոնդի տնտեսում չունենալու պատճառով։ Այդպիսի պայմաններում պարգևատրման կանոնադրությունը ձևական էր։

Ներգործարանային տնտեսական հաշվարկի հետագա ամրապնդման շահերը պահանջում են ճիշտ կազմակերպել ձեռնարկության տեղամասերի, բրիգադաների և առանձին բանվորների աշխատանքի արդյունքների հաշվառումն ու ամփոփումը։

Պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների գործունեության ուսումնասիրությունը խրախուսման ֆոնդերի կազմավորման բնագավառում բացահայտեց մի շարք թերություններ։ Դրանք արտահայտվեցին նյութական խթանման ֆոնդի համար շահույթներից մասնահանման նորմատիվների սահմանման գործում։ Անցյալ տարի նոր սիստեմին անցած ձեռնարկությունների նյութական խրախուսման ֆոնդի համար շահույթներից մասնահանման անհատական նորմատիվների հաշվարկման ելակետ էին ընդունվում այդ նպատակով ձեռնարկության արդեն նախատեսած միջոցները։ Նյութական խրախուսման ֆոնդի կազմավորման նորմատիվը ստացվում էր այդ միջոցներն արտադրանքի իրացման (շահույթի) պլանային աճի և պլանային շահութաբերության վրա բաշխելով, որի պատճառով 1966 թվականին խրախուսման ֆոնդերը, փաստորեն, ստեղծվեցին ո՛չ թե նորմատիվների հիման վրա, այլ նորմատիվները հաշվարկվեցին ըստ խրախուսման ֆոնդերի։

Այդպիսի նորմատիվներով ստեղծված նյութական խրախուսման ֆոնդերը հաճախ չէին համապատասխանում ձեռնարկության աշխատանքի իրական մակարդակին։ Առաջավոր ձեռնարկություններում խրախուսման ֆոնդերն ավելի քիչ ստացվեցին, քան համեմատաբար վատ ցուցանիշներ ունեցող ձեռնարկություններում։ Այսպիսով, գործնականում լրիվ չդրսևորվեց նյութական խթանման նոր սիստեմի հիմնական սկզբունքներից մեկը՝ ինչքան բարձր են աշխատանքի արդյունքները, այնքան մեծ են նյութական խրախուսման ֆոնդերը։

Նման երևույթներից խուսափելու նպատակով, 1967 թվականի հունվարի 1-ից, պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմին անցած ճյուղերում, մշակվում են նյութական խրախուսման ֆոնդերի գոյացման ճյուղային նորմատիվներ։

Մեր կարծիքով, նյութական խրախուսման ճյուղային նորմատիվները այնպես պետք է սահմանվեն, որ ավելի բարձրանա շահութաբերության մակարդակը, քան արտադրանքի իրացման աճը։ Այդպիսի մոտեցման անհրաժեշտությունը բխում է նրանից, որ իրացման աճի ցուցանիշը շատ մեծ տատանումներ կարող է ունենալ՝ նոր կարողությունների շահագործման, հումքային ռեսուրսների առկայության կամ բացակայության, պահանջարկի ավելացման կամ կրճատման և այլ պատճառներով, որոնք կարող են անդրադառնալ ձեռնարկության նյութական խրախուսման ֆոնդերի մեծության և, հետևապես, կոլեկտիվի նյութական շահագրգռվածության վրա։

Շահութաբերությունը ձեռնարկության գործունեության գնահատման առավել ամփոփ ցուցանիշ է, որում արտահայտվում է ո՛չ միայն ձեռք բերած տնտեսական արդյունավետության մակարդակը, այլև շահույթի և արտադրության ծավալի աճը, ինչպես նաև ինքնարժեքի իջեցումը, նյութական և ֆինանսական միջոցների ռացիոնալ օգտագործումը և այլն։

Պետք է մտածել նաև նյութական խրախուսման ֆոնդերի գոյացման նորմատիվային բազայի ճիշտ ընտրության մասին։ Գործող կարգի համաձայն, ձեռնարկության նյութական խրախուսման ֆոնդերին հատկացումները, ընթացիկ տարվա արտադրանքի իրացման պլանային աճից ելնելով, հաշվարկվում են նախորդ տարվա փաստացի կատարողականի համեմատությամբ։ Արտադրանքի իրացման աճի հաշվարկման նման եղանակը կարող է հասցնել



նյութական խրախուսման ֆոնդի գոյացման չափերի անհիմն մեծացման այն ձեռնարկություններում, որոնք նախորդ տարում պլանային առաջադրանքը զգալի չափով թերակատարել են, իսկ ընթացիկ տարում մեծ աճ են ապահովում։ Անգամ հնարավոր է, որ ընթացիկ տարվա պլանային առաջադրանքն ավելի ցածր լինի, քան նախորդ տարվանը, բայց հատկացումները նյութական խրախուսման ֆոնդին, նախորդ տարվա նախատեսածի համեմատությամբ, մեծ չափով ավելանան։

Դեռևս իրենց լուծումը չեն ստացել տնտհաշվարկային հարաբերությունների ճիշտ սահմանման հարցերը արտադրական ձեռնարկությունների և նյութա-տեխնիկական մատակարարման, տրանսպորտային, սպառող կազմակերպությունների միջև։ Ձեռնարկությունների լավ աշխատանքը շատ բանով պայմանավորված է մատակարարող-իրացնող կազմակերպությունների գործունեությամբ։ Սրանք տնտեսական ռեֆորմի պայմաններում պետք է նոր ձևով կազմակերպեն իրենց գործը։ Ներկայումս երկու տնտհաշվարկային ձեռնարկությունների (պատրաստող և սպառող)միջև գտնվում է մատակարարող-իրացնող ոչ-տնտհաշվարկային կազմակերպությունը, որը նյութական պատասխանատվություն չի կրում պայմանագրերի կատարման, ժամանակին մատակարարելու և նյութերի որակի համար։

Բացի դրանից, լուրջ թերություններ կան ֆոնդերի բաշխման բնագավառում։ Այստեղ հաշվի չեն առնվում հայթայթող և սպառող ձեռնարկությունների մոտիկությունը, ֆոնդերով ապահովվածությունը և այլն։ Նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչությունը ձեռնարկությունների ներկայացրած հայտերին մոտենում է ձևականորեն և չի առանձնացնում պահանջվող անհրաժեշտ հումքը։ Այսպես, Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանի 1967 թվականի 2,6 տոննա բրոնզային գլանվածքի հայտի դիմաց նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչությունն առանձնացրել է միայն 0,5 տոննա, 15 տոննա իլիկյուղի դիմաց՝ 3 տոննա, իսկ 5 տոննա առաջնային ալյումինի հայտն ընդհանրապես մերժել է։ Առանձնացված ֆոնդերը ժամանակին չեն մատակարարվում, որը խախտում է ձեռնարկության ռիթմիկ աշխատանքը։

Մատակարարման և իրացման բնագավառում եղած թերությունները մեծ վնաս են հասցնում տնտհաշվարկային ձեռնարկություններին։ Այս թերությունները վերացնելու համար անհրաժեշտ է, առաջին հերթին, տևական ուղղակի կապեր հաստատել պատրաստող և սպառող ձեռնարկությունների միջև, մատակարարող կազմակերպությունները փոխադրել տնտհաշվարկի։ Ընդորում, դրանք պետք է նյութական պատասխանատվություն կրեն հատկացված ֆոնդերի ժամանակին ու որակով մատակարարումների համար։

Նոր սիստեմին անցած ձեռնարկությունների տնտեսական գործունեության հիմնական ցուցանիշներից մեկի՝ արտադրանքի իրացման առաջադրանքի հաջող կատարումը շատ բանով պայմանավորված է տրանսպորտի հստակ աշխատանքով։ Բայց մինչև այժմ չեն կարգավորված ձեռնարկությունների և տրանսպորտային կազմակերպությունների հարաբերությունները։ Ձեռնարկությունները վագոնների, ավտոմեքենաների և տրանսպորտային այլ միջոցների պարապուրդի համար նյութական պատասխանատվություն են կրում, իսկ, չգիտես ինչու, տրանսպորտային կազմակերպություններն արտադրանքը ժամանակին չբարձելու և սպառողին ուշ հասցնելու, վագոն կամ ավտոմեքենա չտրամադրելու և այլնի համար գրեթե նյութական պատասխանատվություն չեն կրում։ Այդ հանգամանքը խիստ անդրադառնում է նոր սիստեմին անցած ձեռնարկությունների տնտեսական գործունեության վրա։ Տնտեսական ռեֆորմը պահանջում է արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտային կազմակերպությունների հարաբերությունների հիմքում դնել նյութական շահագրգռվածության սկզբունքը։ Տրանսպորտային կազմակերպությունները լավ աշխատանքի համար պետք է ստանան նյութական խրախուսանք, իսկ իրենց պարտականությունները վատ կատարելու համար՝ կրեն նյութական պատասխանատվություն։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը պահանջում է

ձեռնարկություններում ուժեղացնել տնտեսագիտական աշխատանքը: Այդ կապակցությամբ ընթացիկ հնգամյակի դիրեկտիվներում խնդիր է դրվում կատարելագործել արտադրության կառավարման մեթոդները և բարձրացնել պլանային-տնտեսագիտական աշխատանքի մակարդակը ֆաբրիկաներում, գործարաններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս ձեռնարկություններում:

Տնտեսագիտական աշխատանքի ուժեղացման անհրաժեշտությունը բխում է նրանից, որ ձեռնարկության ֆինանսա-տնտեսական գործունեության շատ ցուցանիշներ պլանավորում են անմիջականորեն ձեռնարկությունները: Եթե նախկինում ձեռնարկության գործունեությունը պլանավորում էր վերադասը (60 և ավելի ցուցանիշ), ապա այժմ վերադասից իջեցվում է ընդամենը 7—8 պլանային ցուցանիշ: Մնացած բոլոր ցուցանիշները, այդ թվում՝ ինքնարժեքը, աշխատանքի արտադրողականությունը, միջին աշխատավարձը, հատիքները և այլն պետք է պլանավորեն իրենք՝ ձեռնարկությունները: Այս հանգամանքը պահանջում է ձեռնարկությունների տնտեսագիտական ծառայության օղակները կոմպլեկտավորել բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներով: Այնինչ մեր ձեռնարկությունների տնտեսագիտական ծառայության օղակները մեծ մասամբ կոմպլեկտավորված են տնտեսագիտական կրթություն չունեցող, բայց պրակտիկ աշխատանքի փորձ ունեցող կադրերով:

Ձեռնարկություններում տնտեսագիտական աշխատանքի բարելավմանը մեծ չափով կարող է նպաստել ինժեներա-տեխնիկական աշխատողների տնտեսական գիտելիքների հարստացումը: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեր արդյունաբերական ձեռնարկություններին այդ բնագավառը քիչ է զբաղեցնում: Մյուս հանրապետություններում և խոշոր քաղաքների ձեռնարկություններում տնտեսագիտությունն ուսումնասիրող մշտական գործող սեմինարներ, ձեռնարկություններին կից ուսումնական կոմբինատներ են ստեղծված, որոնք արտադրության աշխատողներին հաղորդում են գիտության նորույթները: Ընդ որում, տնտեսագիտության ուսումնասիրությունը ձևական բնույթ չի կրում: Ունկնդիրները տարեվերջին ռեֆերատ են ներկայացնում իրենց բնագավառի տնտեսական գործունեության վերլուծության և դրա հետագա բարելավման վերաբերյալ: Մինչդեռ մեր ձեռնարկությունները բավարարվում են միայն մի քանի դասախոսություններ կազմակերպելով:

***

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը տնտեսության ղեկավարման արմատական բարելավման խնդիր դրեց: Ըստ նոր կուրսի, տնտեսության ղեկավարման վարչական մեթոդները փոխարինվում են տնտեսականով: Իսկ որքան լավ ենք ըմբռնում տնտեսական օրենքների պահանջները, ճիշտ օգտագործում տնտեսական կատեգորիաները, այնքան վարչական մեթոդներով կառավարումը փոխարինվում է տնտեսականով: Այս ամենից հետևում է, որ տնտեսության կառավարման բոլոր օղակներում աշխատողները, հատկապես ղեկավարները, որոնք տոն են տալիս տվյալ օղակի գործունեությանը, պետք է տնտեսագիտությունը լավ իմանան: Դա առավել կարևոր է միանձնյա ղեկավարության պայմաններում, երբ հիմնարկի ղեկավարի որոշումը վերջնական է:

Արտադրության ղեկավարման, պլանավորման և տնտեսական խթանման նոր կուրսի պայմաններում ժողովրդական տնտեսության զարգացման վրա բացառիկ ազդեցություն ունի պետական մի քանի օղակների (պետական պլանային հանձնաժողովի, պետպլանի գների կոմիտեի, ֆինանսների, առևտրի մինիստրությունների, Ցենտրոսոյուզի և այլն) լավ գործունեությունը:

Ըստ պլանավորման նոր սիստեմի թեթև, սննդի արդյունաբերության և բնակչությանը անմիջականորեն սպասարկող մյուս ճյուղերի զարգացման ուղղությունները որոշվում են առևտրական կազմակերպությունների ներկայացրած հայտերի հիման վրա: Առևտրական կազմակերպությունների ամեն մի սխալն ուղղակիորեն ներգործում է արտադրության վրա: Այսպիսի պայման-



ներում մեծանում է առևտրական կազմակերպությունների դերը սպառման առարկաների ասորտիմենտում տեղի ունեցող փոփոխությունների ուսումնասիրության, դրանց տենդենցների հայտնաբերման գործում: Վերջինս շատ կարևոր է սպառման առարկաներ արտադրող ճյուղերի զարգացման հեռանկարային ճիշտ նախագծումներ կատարելու համար: Այս բնագավառում թույլ տված ամեն մի սխալ, բացի բնակչության պահանջմունքների թերբավարարումից, իր հետ բերում է աշխատանքային և նյութական ռեսուրսների հսկայական վատնում:

Այս բոլորից հետևում է, որ առևտրական կազմակերպությունների ղեկավարների համար խիստ անհրաժեշտ է ու պարտադիր տնտեսագիտության կատարյալ տիրապետումը: Տրամաբանական է, որ այդպիսի հիմնարկի գործունեությունը (իր օղակների հետ միասին) պետք է ղեկավարի համապատասխան պատրաստականություն ունեցող տնտեսագետը: Ցավոք, մեզ մոտ այդպես չէ: Հանրապետության առևտրական կազմակերպությունները հիմնականում ղեկավարում են տնտեսագիտական կրթություն չունեցողները: Պրակտիկան այդ բանը մինչև վերջերս ինչ-որ չափով արդարացնում էր, որովհետև առևտուրը ուղղակիորեն կապված չէր արդյունաբերության հետ և տնտեսագիտական լուրջ աշխատանքի հարկ չէր լինում: Դրան նպաստում էր նաև այն, որ սպառման առարկաները միշտ պակաս էին: Եվ ահա առևտրի թերություններն ու սխալները արտադրության վրա անմիջականորեն և լրջորեն չէին ազդում: Արտադրության ղեկավարման և պլանավորման նոր սիստեմում առևտրական օղակներում տիրապետող կդառնա զուտ տնտեսագիտական աշխատանքը:

Ինչպես հայտնի է, պլանային աշխատանքն իր բնույթով տնտեսագիտական է: Այնինչ հանրապետության պետպլանի աշխատողների 80 տոկոսից ավելին ինժեներներ են, որոնք ժողովրդական տնտեսության պլանավորման ժամանակակից պահանջները բավարարել չեն կարող: Հրահանգավորվելը և բլանկների ձևեր լրացնելը դեռևս պլանավորման գործին տիրապետել չի նշանակում: Պլանավորումը պլանաչափ, համամասնական զարգացման օրենքի գործողության ճիշտ արտացոլումն է, որը սերտորեն առնչվում է սոցիալիզմի մյուս տնտեսական օրենքների և կատեգորիաների հետ, որոնց տիրապետելու համար անհրաժեշտ է տնտեսագիտական հատուկ պատրաստականություն:

Արտադրության կառավարման, պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմին անցումը պահանջում է նաև կուսակցական կազմակերպությունների ճկուն, բանիմաց աշխատանք: Այսպիսի պայմաններում մեծանում է կուսակցական ղեկավար օրգանների կողմից բոլոր ձեռնարկություններին տնտեսագիտական ղեկավարություն ցույց տալու անհրաժեշտությունը: Դա նշանակում է, որ սկսած կուսակցական սկզբնական կազմակերպություններից մինչև շրջանային ու քաղաքային կոմիտեները տնտեսագիտական բնույթի աշխատանքների հսկողությունը պետք է իրականացնեն համապատասխան պատրաստականություն ունեցող մարդիկ: Միայն այս ճանապարհով հաջողությամբ կկենսագործվի կուսակցության մշակած տնտեսական ռեֆորմը:

Մ. ՔՈԹԱՆՅԱՆ, Լ. ԱՆԱՆՅԱՆ,
Ռ. ՄԻՐԶՈՅԱՆ, Գ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ

Արդյունաբերական արտադրանքի հետագա աճն ապահովելու, ինչպես նաև տնտեսական ավելի բարձր ցուցանիշների հասնելու խնդիրն անհնարին է լուծել, առանց արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման: Այդ մակարդակը, ինչպես հայտնի է, սովորաբար որոշվում է փոխադարձ կապի այնպիսի տնտեսական ու տեխնիկական ցուցանիշների սիստեմով, որոնք բնութագրում են օգտագործվող սարքավորման, տեխնոլոգիական պրոցեսների, արտադրության կազմակերպման, տեխնիկական առաջադիմության ու տնտեսական արդյունավետության աստիճանը:

Յուրաքանչյուր ձեռնարկության գլխավոր ցուցանիշը պետք է արտահայտի նրա մեքենաների ու սարքավորման տեխնիկական այն մակարդակը, որը համապատասխանում է հայրենական ու համաշխարհային ստանդարտներին: Դրանով կարելի է դատել կամ պատկերացում կազմել թե՛ արտադրության տեխնիկական զինվածության ու կադրերի որակավորման և թե աշխատանքային կարգապահության ու աշխատանքի կուլտուրայի մասին: Այդ չափանիշով կարելի է գրեթե անսխալ որոշել ինժեներական կադրերի հասունությունը, նրանց հմտությունը բարձր արտադրողական ու հուսալի արդիական մեքենաներ ստեղծելու ասպարեզում: Ի դեպ, նկատենք, որ այդպիսի մեքենաներ ստեղծելու համար անհրաժեշտ է ունենալ ո՛չ միայն հզոր տեխնիկական բազա ու ժամանակակից սարքավորում, այլև սպառողների պահանջմունքները «բացահայտող» ծառայություններ:

Վերոհիշյալ խնդիրները հաջող կատարելու համար անհրաժեշտ է փորձարկումների միջոցով պարզել թողարկվող արտադրանքի կառուցվածքային ու որակական հատկությունները: Ընդսմին, անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել լաբորատորիաների աշխատանքին, քանի որ դրանք որոշում են թողարկվող մեքենաների որակի բարելավման, հուսալիության ու երկարակեցության հարցերը:

Այդ բնագավառում որոշակի հաջողություններ ունեն Հայաստանի մի շարք ձեռնարկություններ:

Օրինակ, տեխնիկական առաջադիմությունն արագացնելու և արտադրության տեխնիկական մակարդակը բարձրացնելու նպատակով որոշակի աշխատանք է կատարել Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրագործարանի կոլեկտիվը: Գործարանը 1966 թվականին արտադրեց ավելի քան 200 անուն տարբեր տիպի ու չափերի էլեկտրական մեքենա, 1958 թվականի 50-ի դիմաց: Այստեղ արտադրությունից գրեթե լրիվին հանվեցին հին կոնստրուկցիայի մեքենաները և փոխարինվեցին նորերով: Այդ հաջողությունները ձեռք բերվեցին արտադրական նոր կարողությունների գործարկման և մի շարք կազմակերպական-տեխնիկական միջոցառումների իրականացման շնորհիվ: Բավական է ասել, որ միայն 1958—1965 թթ. ընթացքում այստեղ իրականացվել է արտադրանքի նոր տեսակները յուրացնելու, առաջավոր տեխնոլոգիա արմատավորելու, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման 1540 կազմակերպական-տեխնիկական միջոցառում:



Երևանի էլեկտրալամպերի գործարանը նույնպես առաջխաղացում ունի այդ ասպարեզում: Գործող արտադրամասերի վերակառուցման, նոր տեխնիկայի արմատավորման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունն այստեղ 1958—1965 թթ. աճել է 176 տոկոսով: Գործարանն արդեն յուրացրել է մեծ քանակությամբ նոր արտադրանք: Այսպես, եթե 1958 թվականին արտադրվում էր միայն 13 տեսակ լամպ, ապա 1966 թվականին թողարկվեցին 34 տեսակի լամպ ու ստարտեր: Մեծ գործ կատարվեց դրանց որակի ու երկարակեցության բարձրացման ուղղությամբ:

Տեխնիկական մակարդակի բարձրացման կարևոր ցուցանիշ է արտադրանքի որակի բարելավումը: Այստեղ շատ բան ունեն անելու տեխնոլոգները: Այսպես, Երևանի հիդրոհաղորդակ գործարանում հաջողությամբ կիրառվում է անթերի արտադրանք թողարկելու և այն անմիջականորեն տեխնիկական վերահսկողության բաժնին հանձնելու սիստեմը: Գործարանի տեխնոլոգներն ու կոնստրուկտորները հասել են նրան, որ արտադրամասերը ստանում են լավ մշակված դոկումենտավորում: Կան հիանալի արտադրանք թողարկող այլ ձեռնարկություններ ևս: Դրանք են՝ Երևանի ժամացույցի, հիդրոպոմպերի, կաբելի, Կիրովականի «Ավտոմատիկա» ու գերճշգրիտ հաստոցների և այլ գործարաններ: Նրանց թողարկած արտադրանքի զգալի մասը համապատասխանում է համաշխարհային լավագույն նմուշների մակարդակին, լայն պահանջարկ ունի մեր երկրում և պատվով է ներկայացնում սովետական մակնիշը արտասահմանում:

Բարձրորակ արտադրանքի թողարկմանը նպաստող կարևոր պայմաններից մեկը տեխնոլոգիական կանոնների անթերի պահպանումն է: Չպետք է հանդուրժել որևէ շեղում հաստատված տեխնոլոգիայից ու տեխնիկական փաստաթղթերից: Սակայն այս անհրաժեշտ պայմանը երբեմն խախտվում է առանձին մեքենաշինական գործարաններում: Ներկայումս էլ արտադրանքի առանձին տեսակների տեխնոլոգիայի ասպարեզում կարելի է հանդիպել անհարկի պարզեցումներ, երբ վերացվում են որոշ գործողություններ կամ թե բոլորովին ավելորդ ինտենսիվացնում են առանձին պրոցեսները, հաշվի չառնելով, որ դա վատացնում է արտադրանքի որակը: Այդ ամենի հետևանքով արտադրվում են ցածր ինքնարժեք ունեցող, բայց միևնույն ժամանակ ցածրորակ, ոչ այնքան հուսալի ու երկարակյաց մեքենաներ: Օրինակ, պարզվել է, որ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում յուրաքանչյուր ութ դետալից մեկը չի համապատասխանում գծագրերին: Մեքենաների կարևորագույն մասնիկների արտադրության տեխնոլոգիայի ոչ քիչ խախտումներ են թույլ տրվել նաև ֆրեզերային հաստոցների, ավտոպահեստամասերի, արմատուրայի, Լենինականի շինմեքենա գործարաններում և այլ ձեռնարկություններում:

Մինչև վերջերս արդյունաբերական ձեռնարկությունները բավարար չափով շահագրգռված չէին որակը բարձրացնելու հարցում: Հայտնի է, որ բարձրորակ արտադրանքի թողարկումը, որպես կանոն, լրացուցիչ ծախսումներ է պահանջում: Նոր ու բարձրորակ արտադրանք թողարկող ձեռնարկությունները երբեմն ավելի վատ դրության մեջ էին ընկնում, քան հնացած ու ցածրորակ ապրանքներ արտադրող ձեռնարկությունները: ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումի որոշումներում նշված են բարձրորակ արտադրանքի թողարկման մեթոդները: Դրանք խթանում են նոր արտադրանքի տեխնիկատնտեսական ավելի գերազանց ցուցանիշները: Լավորակ արտադրանք ստանալու հարցում, աշխատողների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով խրախուսման ֆոնդին է հատկացվում լրացուցիչ շահույթի մի մասը, որն ստացվում է արտադրանքի որակի բարելավումից, իսկ որակի բարձրացման միաժամանակյա ծախսումները կկատարվեն նոր տեխնիկայի ֆոնդի միջոցներից:

Մեր հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում որոշակի քայլեր են կատարվում ժամանակակից տեխնոլոգիական պրոցեսներ, դետալների էլեկտրաֆիզիկական, էլեկտրաքիմիական, գերձայնային մշակման մեթոդներ արմատավորելու ուղղությամբ: Ավելի է կատարելագործվել

հիմնական աշխատանքների մեքենայացման բերած օգուտը զգալի չափով նվազում է:

Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման կարևորագույն գործոններից մեկն արտադրության կազմակերպման սիստեմատիկ կատարելագործումն է և, առաջին հերթին, նրա մասնագիտացումը: Այս վերջինը հրակայական հնարավորություններ է ընձեռում աշխատանքի արտադրողականության բարձրացման, որակի բարելավման և տնտեսության ռացիոնալ կազմակերպման գործում: Մեր հանրապետությունում հաստոցաշինական գործարանների հետագա մասնագիտացումն ապահովելու նպատակով ստեղծվել են հաստոցների հիդրավլիկ և ցածրավոլտ ապարատուրա, պլաստմասսայից պատրաստված մասեր, կաղապարներ ու այլ հարմարանքներ թողարկող ձեռնարկություններ: Ստեղծված են նաև մաթեմատիկական մեքենաներ, մագնիսային ուժեղացուցիչներ, վակուումային էլեկտրավառարաններ, կաբելային և այլ շինվածքներ թողարկող մի շարք ձեռնարկություններ: Նոր մասնագիտացված հզորությունների գործարկման շնորհիվ էլեկտրաշարժիչների թողարկումը յոթնամյակի ընթացքում ավելացավ 2,5, իսկ մետաղահատ հաստոցների թողարկումը՝ 4 անգամ: Էլեկտրամեքենաշինական ձեռնարկությունները համապատասխան պահանջների բավարարումն ապահովելու նպատակով Հայէլեկտրագործարանի ձուլման արտադրամասի կարողությունը հասել է տարեկան 18 հազ. տոննայի: Իսկ հաստոցաշինության կարիքները հոգալու համար ավելացվել է Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ձուլման արտադրամասի կարողությունը և Լուսավանում շահագործման է հանձնըվել Ցենտրոլիտ գործարանը, տարեկան 20 հազար տոննա կարողությամբ:

Սակայն դեռևս չի կարելի ասել, թե հանրապետության մեքենաշինության մասնագիտացումը պահանջված մակարդակի վրա է դրված: Դեռևս մեր արդյունաբերական ձեռնարկությունները մեծ մասամբ ունիվերսալ են. դրանք թողարկում են ոչ մեծ քանակությամբ ամենալայն նոմենկլատուրայի ապրանքները, հաճախ էլ հենց իրենք են արտադրում բոլոր անհրաժեշտ դետալները, հանգույցները կամ կաղապարները: Հանրապետության մեքենաշինական գործող ձեռնարկություններում կան գործիքաշինական, դարբնոցամամլիչ, կաղապարման և ձուլման տասնյակ զուգահեռ արտադրամասեր ու տեղամասեր: Դա, իհարկե, կասեցնում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը և անարտադրողական մեծ ծախսեր հարուցում:

Հանրապետության գրեթե բոլոր հաստոցաշինական գործարաններն իրենց կառուցվածքով կոմպլեքսային են, այսինքն՝ բոլորն էլ արտադրում են պահանջված դետալները, կաղապարները, հանգույցները, գործիքներն ու այլ հարմարանքները և իրենք էլ հավաքում են հաստոցները: Բնական է, որ այդպիսի պայմաններում թողարկվող դետալների քանակն անընդհատ աճում է, երբեմն հասնելով մի քանի հազարի:

Այդ հանգամանքը որոշ դժվարություններ է ստեղծում թե՛ արտադրությունը պլանավորելու ու ղեկավարելու, և թե՛ նրան սպասարկելու գործում: Պատրաստվող դետալների բավական ընդարձակ նոմենկլատուրան (համեմատաբար պակաս թողարկման պարագայում) հնարավորություն չի տալիս ավելի արդյունավետ օգտագործելու բարձր արտադրողականություն ունեցող սարքավորումը և ավտոմատացնելու տեխնոլոգիական պրոցեսը: Դա բացասաբար է ազդում աշխատանքի արտադրողականության վրա և իջեցնում տվյալ ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները:

Հասկանալի է, որ այդ վիճակը չի համապատասխանում արտադրության տեխնիկայի ու էկոնոմիկայի արդի պահանջներին: Ուստի, անհրաժեշտ է կոոպերացման կարգով դետալներ ու հանգույցներ ստանալ մասնագիտացված գործարաններից: Պետք է կառուցել բավարար քանակությամբ նեղ-մասնագիտացված ու հավաքող ձեռնարկություններ: Այդ է վկայում ինչպես Սովետական Միության, այնպես էլ արտասահմանյան մի շարք երկրների պրակտիկան: Այսպես, ԱՄՆ-ի 639 հաստոցաշինական ձեռնարկություններից միայն 311-ը ունեն մեխանիկական, 102-ը՝ գործիքային և կաղապարման և միայն 19-ը՝ ձուլման արտադրամասեր: Շատ գործարաններ պարզապես իրենցից



ներկայացնում են հավաքման հրապարակներ, նրանց համար հանգույցներն ու դետալները պատրաստում են նեղ-մասնագիտացված ձեռնարկությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումի որոշումներում և կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվներում հատուկ ուշադրություն է նվիրված արդյունաբերության մեջ մասնագիտացման մակարդակի բարձրացմանը: Հանրապետության մեքենաշինության համար առաջին հերթին անհրաժեշտ է մասնագիտացնել մեխանիկական մշակումը, որը մեքենաների արտադրության հիմնական ու աշխատատար մասն է կազմում: Մեր մեքենաշինական գործարանների թողարկած դետալների մեջ առանձնապես պետք է հիշատակել ատամնավոր անիվները, լիսեռները և համանման տիպի մի շարք այլ դետալներ, որոնք ունեն իրենց պատրաստման որոշ տեխնոլոգիական ընդհանրություն և որոնց արտադրությունը համեմատաբար հեշտ է մասնագիտացնել:

Մեզանում առանձնապես վատ են մասնագիտացված օժանդակ արտադրությունները: Գրեթե ամեն մի ձեռնարկություն, որպես կանոն, ինքն է նորոգում սարքավորումը, ինքն է պատրաստում տեխնոլոգիական հարդարանքի գործիքները և այլն: Պարզ է, որ տնտեսապես շատ ավելի ձեռնտու կլինի որոշ տեսակի սարքավորման կապիտալ նորոգումը կենտրոնացնել հատուկ մասնագիտացված ձեռնարկություններում: Ընդսմին անհրաժեշտ է զգալիորեն ընդլայնել պահեստամասերի արտադրությունը և կազմակերպել դրանց կենտրոնացված մատակարարումը:

Միջոցների մեծ խնայողություն կստանանք, երբ գործիքների ու տեխնոլոգիական հարդարանքի արտադրությունը ևս մասնագիտացվի: Հանրապետության գործիքային տնտեսությունը դեռևս լիովին չի ապահովում գործարանների պահանջմունքները:

Գործիքաշինական արդյունաբերության մասնագիտացման հարցերը դեռևս վերջնականապես լուծված չեն ո՛չ միայն մեր հանրապետությունում, այլև ամբողջ ՍՍՀՄ-ում: Այսպես, մետաղ մշակող գործիքների թողարկմամբ զբաղված ՍՍՀՄ-ի 25 գործարաններից միայն մի քանիսը կարելի է նեղ-մասնագիտացված ձեռնարկություն համարել: Մնացած բոլոր ձեռնարկություններն արտադրում են իրար հետ ոչ մի ընդհանուր բան չունեցող մի քանի տեսակի շինվածքներ: Օրինակ, Երևանի գործիքաշինական գործարանն արտադրում է տարբեր բնույթի գործիքներ՝ դրոշմոցներ, գայլիկոններ, նշակիչներ, ինչպես նաև սեղմակավոր գործիքներ:

Այժմ միջոցներ են ձեռք առնվում գործիքաշինական արդյունաբերության մասնագիտացման գործն արմատապես բարելավելու ուղղությամբ: Մեր ձեռնարկություններն սկսում են մասնագիտանալ միայն որոշ տեսակի գործիքներ թողարկելու մեջ: Այսպես, Լուսավանի գործիքաշինական գործարանը կթողարկի միայն ձգիչներ, Երևանի արհեստական ալմաստի գործարանը՝ մի քանի տեսակի ալմաստավոր գործիքներ:

ՍՍՀՄ հաստոցագործիքային արդյունաբերության մինիստրության հաշվումների համաձայն գործիքաշինական արդյունաբերության մասնագիտացումը հնարավորություն կընձեռի արտադրանքի թողարկումն ավելացնել 12—15 տոկոսով, միաժամանակ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելով 10—12 տոկոսով:

Մասնագիտացված ձեռնարկություններում ավելի հաջող կարելի է իրականացնել արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, արմատավորել առաջադիմական տեխնոլոգիա և գիտականորեն կազմակերպել աշխատանքը: Հանրապետության մեքենաշինական գործարաններում ներկայումս մեծ գործ է կատարվում աշխատանքի գիտական կազմակերպման (ԱԳԿ) գծով: ԱԳԿ-ի պլանների նպատակն է կատարելագործել աշխատանքի կազմակերպումը գիտական հիմունքներով, բարելավել աշխատանքի պայմանները և բարձրացնել նրա արտադրողականությունը: Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրագործարանի գլխավոր տնտեսագետի բաժնին առընթեր կազմակերպված է ԱԳԿ-ի լաբորատորիա, ստեղծված են նաև մշտապես գործող 17 ստեղծագործական բրիգադա, որոնցում ընդգրկված են 117

ինժեներա-տեխնիկական աշխատողներ ու ծառայողներ: 1966 թվականի ընթացքում ներկայացվեց ԱԳԿ-ի 280 միջոցառում, որոնց տնտեսական օգուտը ավելի քան 250 հազ. ռուբլի է:

Էլեկտրալամպերի գործարանի սպիրալի արտադրամասում իրականացվեցին ԱԳԿ-ի մի շարք պլաններ (աշխատանքի բաժանումն ըստ գործողությունների, մեքենաների նոր տեղաբաշխում, աղմուկի վերացում և այլն): Այդ միջոցառումները մեծապես իջեցրին սպիրալների պատրաստման աշխատատարությունը, տնտեսական արդյունքն էլ կազմեց 35 հազ. ռուբլի:

Ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի կատարումը զուգորդվելու է արտադրության տեխնիկական մակարդակի անընդհատ բարձրացմամբ: Նոր հնգամյակում ևս հանրապետության մեքենաշինությունը զարգանալու է զգալի չափերով: Նախատեսվում է արտադրության ծավալն ավելացնել 2,4 անգամ, իսկ արտադրության տարեկան միջին աճը կկազմի 19,1 տոկոս: Հանրապետության մեքենաշինության զարգացման համար նախատեսվող կապիտալ ներդրումները կազմելու են 271 մլն. ռուբլի:

Մեր հանրապետության արդյունաբերությունն անցել է ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումի որոշումներով նշված՝ տնտեսական ռեֆորմի երկրորդ էտապին: Արդեն նոր սիստեմի են փոխադրվում ոչ թե առանձին ձեռնարկություններ, այլ ամբողջ արտադրաճյուղեր: Պլանավորումը կատարելագործելու, ձեռնարկություններին տնտեսապես խթանելու, նրանց նախաձեռնությունն ու ինքնուրույնությունը ծավալելու վերաբերյալ կուսակցության ու կառավարության որոշումները լայն հնարավորություններ են բացում արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման համար:

Լ. ՍԱՀԱԿՅԱՆ
ՀԿԿ Երևանի քաղկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

ՍՍՀՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԾ ՏԵՂԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ ՈՒ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ

| 1913 թ. | | | 1965 թ. | |
|---|---|---|---|---|
| Աշխարհում | Եվրոպայում | | Աշխարհում | Եվրոպայում |
| 5 | 4 | Ողջ արդյունաբերական արտադրանքը | 2 | 1 |
| 8 | 6 | Էլեկտրաէներգիա | 2 | 1 |
| 2 | 1 | Նավթ | 2 | 1 |
| արտադրանքը եղել է աննշան | | Գազ | 2 | 1 |
| 6 | 5 | Քարածուխ | 1 | 1 |
| 5 | 4 | Չուգուն | 2 | 1 |
| 5 | 4 | Պողպատ | 2 | 1 |
| 5 | 4 | Երկաթաքար | | 1 |
| 4 | 3 | Մեքենաշինության արտադրանք | 2 | 1 |
| — | — | Տրակտորներ (15 ձիաուժի հաշվով) | 2[1] | 1[1] |
| 2 | 1 | Անտառանյութի փոխադրում | 1[1] | 1[1] |
| 2 | 1 | Սղոցված նյութեր | 1[1] | 1[1] |
| 5 | 4 | Ցեմենտ | 1[1] | 1[1] |
| 3 | 2 | Բամբակե գործվածքեղեն | 2 | 1 |
| 4 | 2 | Շաքարավազ հայրենական հումքից | 1 | 1 |

1 1964 թ.

Արագորեն կրճատվում է ՍՍՀՄ-ի և զարգացած կապիտալիստական երկրների միջև եղած խզումը՝ մեկ շնչին ընկնող արդյունաբերական ապրանքների հիմնական տեսակների արտադրման բնագավառում: Այս ցուցանիշով ՍՍՀՄ-ը առաջ է անցել այնպիսի արտադրատեսակներով, ինչպիսիք են՝ քարածուխը, երկաթաքարը ու հացահատիկի կոմբայնները, լուսամուտի ապակին, բրդե գործվածքները, ձուկը, կենդանական յուղը:

# ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՏԻ ԱՃԻ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ

Սոցիալիզմի պայմաններում աշխատավորության նյութական բարեկեցության հետ կապված ցանկացած հարցի լուծումը, վերջին հաշվով, որոշվում է ազգային եկամտի մեծությամբ և նրա աճի տեմպերով: Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության սիստեմում հասարակական ամբողջական արդյունքն ու ազգային եկամուտը բնութագրում են ողջ հասարակության արտադրության զարգացման աստիճանը, ծավալը, աճի տեմպերն ու համամասնությունները:

Անժխտելի է, որ սոցիալիստական կարգերը լայն հնարավորություններ են ընձեռում հասարակական արդյունքի և ազգային եկամտի աճի արագ տեմպերի համար: Այսպես՝ 1945 թվականի համեմատությամբ, 1965 թվականին ՍՍՀՄ հասարակական արդյունքն աճել է 5,9, իսկ ազգային եկամուտը՝ 6,2 անգամ: Նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ի հասարակական արդյունքն աճել է ընդամենը 68, իսկ ազգային եկամուտը՝ 64 տոկոսով (տե՛ս Народное хозяйство СССР в 1955 году. Стат. сборник. М., 1966 г., стр. 85):

Այժմ տեսնենք, թե որոնք են այն գործոնները, որ անմիջապես նպաստում են ՍՍՀՄ ազգային եկամտի աճի տեմպերի արագացմանը:

Ազգային եկամտի ծավալը, աճի տեմպերն անմիջականորեն կախված են նյութական արտադրության ճյուղերում զբաղված մարդկանց թվից, աշխատանքի տևողությունից, ինտենսիվությունից և արտադրողականությունից: Ազգային եկամտի աճի գործոններն են՝ նյութական արտադրության ոլորտի աշխատողների թվի ավելացումն ու աշխատանքի արտադրողականության բարձրացումը. ընդ որում, վերջինն ամենակարևորն ու ամենավճռականն է:

Նյութական արտադրության աշխատողների թվի ավելացումը նշանակում է մեծացնել աշխատագումարը, որը ներդրվում է արտադրության պրոցեսում, ավելացնելով (թե՛ բնաիրային և թե արժեքային արտահայտությամբ) ստեղծված արտադրանքը, բնականաբար և ազգային եկամուտը:

Նյութական արտադրության ոլորտում զբաղված աշխատողների թվի ավելացումը, նրանց աշխատանքի տևողության և ինտենսիվության բարձրացումն ազգային եկամտի աճի էքստենսիվ ուղին է, որը կենդանի աշխատանքի խոշոր մասսայի կիրառման հաշվին բերում է ազգային եկամտի ինչպես ֆիզիկական, այնպես էլ արժեքային ծավալի մեծացում:

Ազգային եկամտի աննախընթաց աճի համար արտադրության պրոցեսի ընդլայնումը օբյեկտիվ պայմաններ է ստեղծում ողջ աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածության և, առաջին հերթին, նրա գերակշռող մասը նյութական արտադրության ճյուղերում կենտրոնացնելու գործում: Մեր երկրի աշխատունակ բնակչությունից (առանց զինվորականների) հասարակական աշխատանքում զբաղվածները (1959 թվականի տվյալներով) կազմել են 84,9, ԱՄՆ-ում՝ 69,3 տոկոս (1958 թվականի տվյալներով), տնային աշխատանքում և երեխաների դաստիարակությամբ զբաղվածները, համապատասխանաբար՝ 10, 4 և 19, 3 տոկոս (տե՛ս Народное хозяйство СССР в 1960

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ՊՈՂՊԱՏԻ ՄԻՆԻՍՏՐԸ

*Այս ակնարկում միայն մի քանի դրվագներ են բերված կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Ի վ ա ն Ֆ յ ո դ ո ր ո վ ի չ Թ և ո ս յ ա ն ի (1902—1958) կյանքից: Հարուստ գիտելիքների, լայն մտահորիզոնի տեր ինժեները, տաղանդավոր կազմակերպիչը, որ հաջողությամբ կատարում էր սովետական կառավարության բոլոր հանձնարարությունները ու առաջադրանքները, մեր ինդուստրիայի զարգացմանը մատուցած ծառայությունների համար արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:*

Մոսկվայի լեռնահանքային ակադեմիայի հանրակացարանը գտնվում էր նախկին մի կուսանոցի կամարակապ, երկար շենքում: Այստեղ իր ընկերների հետ տեղավորվել էր նաև Բաքվից եկած ուսանող Իվան Թևոսյանը:

Դասախոսության գնալիս նա իր հնամաշ պիջակի գրպանները լցնում էր տետրերով և լրջորեն պնդում, թե թուղթը տաքացնում է:

...Լավարյան ճեմարանի նիստերի դահլիճում երեկո էր՝ նվիրված Ալեքսանդր Բլոկի հիշատակին: Ամբիոնի մոտ էր Վալերի Բրյուսովը. ողջ դահլիճը մի ականջ դարձած լսում էր, թե ինչպես է նա ոգևորված արտասանում, վերլուծում Բլոկի բանաստեղծությունները: Ապա նա կրքոտ խոսեց նաև կուսակցության X համագումարի որոշումների մասին, համագումար, որը ցրեց ֆրակցիոներների խմբերը: Թևոսյանը ներկա էր եղել X համագումարին, լսել Վլադիմիր Իլյիչին, ուստի, Բրյուսովը նրան չպարմացրեց: Բայց Թևոսյանը չէր կարծում, որ հայտնի բանաստեղծը այդքան հմուտ ու կրքոտ կուսակցական պրոպագանդիստ է:

— Մենք կհասնենք մեր մեծ նպատակին,— ավարտեց իր ճառը Բրյուսովը.— կուսակցության համագումարը, ոգեշնչված վսեմ նպատակներով, միասնության է կոչել մեզ: Միասնական լինենք: Կորչե՛ն պառակտիչները:

Որոտացին ծափահարությունները: Բրյուսովը դժվարությամբ էր մարդկանց միջով մոտենում ելքին: Ահա նա արդեն շատ մոտ է...

— Միասնակա՛ն լինենք,— վեր թռավ տեղից Թևոսյանը,— կորչե՛ն պառակտիչները:



Բրյուսովի աչքերը հանդիպեցին նրան, ժըպտաց, տաք ձեռքը մեկնեց անշուք հագնված ուսանողին...

***

Ուսման առաջին իսկ օրերից Թևոսյանն ամբողջապես ապրում էր ակադեմիայի կուսակցական կյանքով: Կարճ ժամանակ անց նրան ընտրեցին կուսբյուրոյի քարտուղար:

Թևոսյանը հաճախ էր լինում կուսակցության Զամոսկվորեչիեի շրջկոմում: Այստեղ արդեն սովորել էին նրա ազգանվանը: Բայց 1922 թվականին մի կվարճալի դեպք պատահեց, որը քավական բան փոխեց նորեկ ուսանողի կյանքում: Կուսակցության Զամոսկվորեչիեի շրջկոմը դիմել էր բարձրագույն ուսումնական հաստատությունների կուսակցական բջիջներին, խնդրելով արտահաստիքային դասախոսներ առանձնացնել՝ քաղաքի ձեռնարկություններում պրոպագանդիստական աշխատանք կատարելու համար: Հարցաթերթեր էին լրացվում:

Շրջկոմի աշխատողը, որն ստուգում էր Թևոսյանի հարցաթերթի տվյալները, կարմացավ.

— Մի տեսեք, ընկերնե՛ր, ազգանվան, անվան ու հայրանվան փոխարեն գրված է «Վանյա»: Այս ի՞նչ Վանյա է լույս աշխարհ ընկել:

— Իսկապես տարօրինակ է... Անգրագե՞տ է, ինչ է: Հարկավոր է պարզել...

Թևոսյանին կանչեցին շրջկոմ:

— Ձե՞ր հարցաթերթն է:

— Իմն է:

— Ինչո՞ւ եք դուք առաջին սյունակում «Վանյա» գրել:

Թևոսյանը շվարեց:

— Դա իմ ընդհատակյա մականունն է:

Զամոսկվորեչիեի շրջկոմի քարտուղարն այն ժամանակ Ռոզալիա Սամոյլովնա Զեմլյաչկան էր՝ Վլադիմիր Իլյիչի և Նադեժդա Կոստանտինովնա Կրուպսկայայի բարեկամը, փորձված կոնսպիրատորը, բոլշևիկների Մոսկվայի լեգալ կոմիտեի առաջին քարտուղարը 1917 թվականին, Մոսկվայի շրջաններից մեկի բանվորների զինված պայքարի ղեկավարը:

Նա ուշադիր լսեց Թևոսյանի պատմածն այն մասին, թե ինչպես է մասնակցել Բաքվի կուսկազմակերպության ընդհատակյա աշխատանքին, ինչ մարտական մկրտություն է ստացել սովետական իշխանության համար մղած պայքարում՝ Ադրբեջանում և Կրոնշտադտի ամրոցների մոտ:

— Ահա թե ինչու դու Վանյա ես,— ասաց Ռոզալիա Սամոյլովնան:— Շատ լավ: Դու գիտե՞ս շրջանի դրությունը:

— Ընդհանուր գծերով...

— Պետք է ավելի լավ իմանալ:

Ռոզալիա Սամոյլովնան մանրամասն պատմեց պառակտիչ տրոցկիստների չդադարող ոտնձգությունների, սովետական իշխանության ու կուսակցության դեմ նրանց մղած թշնամական պրոպագանդայի մասին:

— Դու պետք է օգնես շրջկոմին,— ասաց Զեմլյաչկան:— Պայմանավորվեցի՞նք:

— Պայմանավորվեցինք, ընկեր քարտուղար:

Հեշտ չէր սովորել և միաժամանակ պրոպագանդիստական աշխատանք կատարել: Բայց Թևոսյանը չէր կարող հեռու մնալ կուսակցության կյանքից: Շուտով ավելի դժվար դարձավ. սկզբում նրան նշանակեցին շրջկոմի կազմբաժնի վարիչի տեղակալ, իսկ հետո ընտրեցին Զամոսկվորեչիեի կուսշրջկոմի թեկնածու, հետագայում նաև անդամ: Իր կյանքի այդ շրջանի մասին Թևոսյանն ինքնակենսագրության մեջ գրել է. «...Ժամանակիս մեծ մասը հատկացնում էի կուսակցական աշխատանքին»:

Ակադեմիայի դասընթացը Թևոսյանն ավարտեց 1927 թվականի հուլիսին: Դեռ պետք է աշխատեր դիպլոմի վրա: Նրան հուզում էին մետալուրգիայի պրոբլեմները:

— Ուղարկեք «Էլեկտրոստալ» գործարան,— խնդրեց նա բաշխող հանձնաժողովում:— Կամենում եմ պողպատ ձուլել սովորել:

Եվ ուղարկեցին:

Երկու շաբաթ նա աշխատում էր ձուլման առվակի վրա, կես տարի էլեկտրապողպատաձուլական արտադրամասի վարպետի օգնական էր, մեկուկես տարի՝ նույն արտադրամասի վարպետ:

Դիպլոմային նախագիծը նա պաշտպանեց 1929 թվականի փետրվարին: Մոսկվայի լեռնահանքային ակադեմիայի դիպլոմանտ Ի. Ֆ. Թևոսյանը պետական որակավորման հանձնաժողովին ներկայացրեց հանգամանորեն մշակված հետևյալ թեման. *Դնեպրի ափին Եկատերինոսլավ քաղաքի մոտ գտնվող մետալուրգիական գործարանի հաշվարկումն ու սարքավորումը:*

— Ծանրակշիռ նախագիծ է,— ասաց որակավորման հանձնաժողովի նախագահ, ակադեմիկոս Պավլովը,— համոզիչ, հիմնավորված:

Իր դրվատական կարծիքը հանձնաժողովը հայտնեց Մոսկվայի լեռնահանքային ակադեմիային:

### 2.

Կուսակցությունը երկրի ինդուստրացման կուրս էր վերցրել. մետալուրգիայի, վառելիքային ու էներգետիկ արդյունաբերության համար պահանջվում էին գործը գիտցող, նորն արագ ընկալող մասնագետներ:

Խնդիր էր դրված ընդօրինակել արտասահմանյան ամենաառաջավոր ձեռնարկությունների փորձը, արագ թափ հաղորդել մեր երկրի տեխնիկական առաջադիմությանը և դրանով իսկ ապահովել ամբողջ էկոնոմիկայի թռիչքը:

Այդ խնդիրը լուծելու համար կուսակցության կենտրոնական կոմիտեն որոշեց երկու հարյուր երիտասարդ մասնագետների ուղարկել արտասահման: Նրանց հետ և Իվան Ֆյոդորովիչ Թևոսյանին:

Թևոսյանը գնում էր Գերմանիա:

Ահա և Էսսենը՝ գերմանական ռազմական հզորության միջնաբերդը, թնդանոթի արքա Կրուպի նստավայրը: Հենց այն Կրուպի, որի նախորդները, հաշվի առնելով Ղրիմի կամպանիայի դասերը, հասկացել էին, որ անցել է բրոնզե թնդանոթների դարը, եկել է պողպատե հրանոթների ժամանակը:

«Ակդեցիկ է,— մտածում էր Թևոսյանը:— Կրուպը Կրուպ, բայց մեր աչքն էլ չի խուփ: Եթե պողպատե մենամարտում ցարական Ռուսաստանն առաջնությունը վիչեց և այդ պատճառով մինչև հիմա ետ ենք մնում արտասահմանից, ուրեմն մենք պետք է թևներս քշտած աշխատենք ինչպես հարկն է...»:

Կրուպի մոտ պետք է մնար մոտ մեկ տարի: Թևոսյանը մտածում էր մեկուկես, երկու ամիս աշխատել ձուլման առվակի վրա, վեց ամիս էլեկտրապողպատաձուլման արտադրամասում՝ որպես վարպետի օգնական, իսկ մնացած ժամանակում ուսումնասիրել աշխատանքի կազմակերպումն ու ձեռնարկության մեքենայացումը:

— Լեզուն դուք լավ գիտեք,— այսպիսի մի կոմպլիմենտ արեց Թևոսյանին ֆիրմայի ներկայացուցիչը:

— Դուք շոյում եք իմ ինքնասիրությունը: Ձեր բանվորների ու վարպետների հետ ես կաշխատեմ ընդհանուր լեզու գտնել,— ժպտադեմ պատասխանեց Թևոսյանը:

Նա, իիրավի, մտերմացավ գերմանացի վարպետների ու բանվորների հետ: Նրանց դուր էր գալիս, որ սովետական ինժեները չի խորշում ամենակեղտոտ աշխատանքից իսկ, պարզ է ու հասարակ, մարդամոտ:

...Երեսունմեկ թվականին լրացավ Կրուպի գործարաններում սովետական ինժեներների ստաժավորման ժամկետը: Ինքը՝ Ալֆրեդ Կրուպը ցանկություն հայտնեց կրուցելու մեր ինժեներների հետ:

Զրույցի վերջում, որպես թե պատահաբար, Թևոսյանին մի կողմ տանելով՝ նա ասաց.

— Պաշտոնակիցներս լավ կարծիք ունեն ձեր մասին: Հուսով եմ, դուք ևս գոհ եք Էսսենից:

— Շնորհակալ եմ ձեզնից: Բայց, իհարկե, դեռ ամեն ինչ չեմ ուսումնասիրել:

Ալֆրեդ Կրուպի ժպիտը խիստ բարետես էր:

— Օ՜, բայց ի՞նչն է ձեզ խանգարում մնալու: Այստեղ դուք լիովին կյուրացնեք գերմանական ճշտապահությունը,—աչքերը կկոցած՝ կոնցեռնի տերն սպասում էր:

«Գործարք է առաջարկում սրիկան», մտածեց Թևոսյանը:

— Շնորհակալություն հրավերի համար, պարո՛ն Կրուպ, բայց հայրենիքում ինձ սպասում են չափազանց կարևոր գործեր...

***

...Դեռ նոր էր Թևոսյանը Մոսկվա եկել, նրան կանչեց Սերգո Օրջոնիկիձեն: Ողջունելուց հետո ժողկոմն ասաց.

— Հաճելի նորություն: Կուսակցության XVI համագումարում ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ են ընտրել քեզ:

Նկատեց Թևոսյանի հրճվալից շփոթմունքը և բարձրացրեց ձեռքը.

— Այդ միայն առաջին նորությունն է: Կա նաև երկրորդը: Նշանակվել ես Կենտկոմի սև մետալուրգիայի բաժնի վարիչ:

— Դա շա՜տ մեծ պատիվ է,— կամաց ասաց Թևոսյանը:

Օրջոնիկիձեն նկատեց կրուցակցի շփոթությունը:

— Ինչո՞ւմն է բանը: Վախենում ես, ուժիցդ վե՞ր լինի:

Թևոսյանը միանգամից չպատասխանեց: Վեր կացավ, մի քանի քայլ արեց, կանգնեց ժողկոմի սեղանի մոտ, ետ տարավ սևաթույր մազերը.

— Ճիշտն ասած, ուրիշ բան էի երազում: Ես կամենում էի աշխատել արտադրության մեջ, օգտագործելով արտասահմանյան փորձը:

— Ահա՛ թե ի՜նչ...

Թևոսյանին կուր չէին հմուտ ագիտատոր համարում: Նա սկսեց կրքոտ համոզել Օրջոնիկիձեին, թե սև մետալուրգիայի բաժինը կարող է վարել մի այլ ընկեր ևս, իսկ իրեն խիստ անհրաժեշտ է արտադրության մեջ լինել. հատկապես այժմ, քանի դեռ թարմ են արտասահմանյան ուղևորության տպավորությունները:

— Հնարավորություն տվեք ինձ գիտելիքներս հաղորդելու արտադրության մեջ աշխատողներին,— խնդրեց Թևոսյանը:

Եվ Օրջոնիկիձեն, մի փոքր խորհելով, խոստացավ Թևոսյանին՝ պաշտպանել արտադրություն ուղարկելու նրա խնդիրքը:

— Ուղարկենք «Էլեկտրոստա՞լ»,— հարցրեց ժողկոմը ժպտալով:

— Իհարկե, «Էլեկտրոստալ»:

Շուտով Թևոսյանը նորից այդ գործարանում էր՝ որպես էլեկտրապողպատաձուլական արտադրամասերի պետ: Մի երկու ամիս անց նա կրկին գլխավոր ինժեների պաշտոնում էր: Ամբողջ օրը անց էր կացնում մարտենյան վառարանների մոտ, անձամբ հետևում պողպատի ձուլմանը, բանվորներին և ինժեներներին պատմում Կրուպի գործարանի աշխատանքի մեթոդների մասին, սովորեցնում վերցնել լավագույնը:

Իսկ հանգստի ժամերին աշխատում էր գրքի վրա: Վաղուց, դեռ Գերմանիայում էր նա մտահղացել այն: Այդ գիրքը պետք է լիներ որակյալ ու բարձրորակ պողպատի ձուլման համաշխարհային մետալուրգիայի առաջավոր փորձի մի յուրատեսակ հանրագիտարան..

Վարպետ Նաումենկոն, որի ձեռքի տակ էր աշխատել Թևոսյանը «Էլեկտրոստալ» գալու առաջին շրջանում, ընկերներին ցույց տալով Իվան Ֆյոդորովիչի ինքնագրով գրքի օրինակը, ասում էր.

— Կարծես թե մեծ գրքույկ չէ, բայց շատ



բան է պարունակում: Մենք այժմ, ակնիվ խոսք, չենք կարող առանց դրա:

Թևոսյանը երկրորդ անգամ Գերմանիա գնաց արդեն ոչ թե ստաժավորվելու, այլ ՍՍՀՄ-ում աշխատելու համար օտարերկրացի մասնագետ մետալուրգներ հրավիրելու:

Մեկնելուց առաջ նա բազմաթիվ կրույցներ էր ունեցել Սերգո Օրջոնիկիձեի հետ. վերջինս պաշտպանեց Իվան Ֆյոդորովիչի մտահղացումը՝ պողպատի գծով արտասահմանյան խոշոր մասնագետներին ավելի լայնորեն օգտագործելու վերաբերյալ: Թևոսյանը մեծ ջանք գործադրեց մի ամբողջ խումբ ականավոր գերմանացի ինժեներների ՍՍՀՄ-ում աշխատանքի ներգրավելու ուղղությամբ: Սակայն դա միայն մեկն էր այն առաջադրանքներից, որ Թևոսյանը երեսնական թվականներին կատարել էր սովետական արդյունաբերության անմոռաց հրամանատար Օրջոնիկիձեի հանձնարարությամբ:

Խորին հարգանքով, անկեղծ երախտագիտությամբ էր Թևոսյանը խոսում ու հիշում Սերգո Օրջոնիկիձեի մասին. երիտասարդ սովետական տնտեսավարների մի ամբողջ սերնդի նա սովորեցրել էր լենինաբար վարել գործը, բոլշևիկորեն կառավարել արդյունաբերությունը և կազմակերպել բանվոր դասակարգին: Սերգո Օրջոնիկիձեն էլ խորապես հարգում էր Թևոսյանին, բարձր գնահատելով նրա գիտելիքները, փորձը, կազմակերպչի ու պրոպագանդիստի ձիրքը:

1931 թվականի վերջերին ստեղծվեց որակյալ պողպատի գործարանների միավորում:

Իր մոտ կանչելով Թևոսյանին, Սերգոն հայտնեց, որ նա նշանակված է այդ միավորման կառավարիչ...

## 3.

1936 թվականի վերջերին Ի. Ֆ. Թևոսյանը նշանակվեց պաշտպանական արդյունաբերության ժողովրդական կոմիսարիատի 7-րդ գլխավոր վարչության պետ: Քաղաքական հորիզոնում փոթորկի ամպեր էին կուտակվում: Վիթխարի պատասխանատվություն էր դրվում Թևոսյանի վրա: 1936 թվականի դեկտեմբերին նա գործուղվում է Գերմանիա և Չեխոսլովակիա՝ ծանոթանալու այդ երկրներում տանկերի ու նավերի զրահի արտադրության հետ:

Սովետական Միություն վերադառնալուց հետո Թևոսյանն արժանացավ մեծ պատվի, որը նա թանկ էր գնահատում ամբողջ կյանքում: Նա ընտրվեց ՍՍՀՄ առաջին գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Հենց այդ ժամանակներում էլ Թևոսյանը նոր նշանակում ստացավ: Նա դարձավ պաշտպանական արդյունաբերության ժողովրդական կոմիսարի առաջին տեղակալը նավաշինության գծով: Եվ որոշեց անմիջապես սկսել ծովից, մտնել նավաշինարարների աշխարհը, ծանոթանալ այն կարգերին ու տրադիցիաներին, որ հաստատվել էին դեռևս Ռուսաստանի ռազմածովային հզորության սաղմնավորման դարաշրջանում:

— Կարծում եմ, ինձ անհրաժեշտ է Լենինգրադ մեկնել,— ասաց Թևոսյանը ժողկոմին:— Գլխավոր գործերն այնտեղ են: Հարկավոր է լինել կարգացած նավաշինության շրջանների մարզկոմում, գործարաններում, կուսակցության շրջկոմներում:

Նա հիշեց Լենինգրադը 1921 թվականի Կրոնշտադտի ապստամբության ժամանակ, երբ ինքն այնտեղ էր: Որքա՜ն բան է փոխվել այն ժամանակվանից..

Բալթիական գործարանի մերձակա ջրերում ավարտվում էր մի հսկա նավի կառուցումը: Գլխավոր շինարարը՝ Անատոլի Ստեպանովիչ Մոնախովը, ստուգում էր հանձնված աշխատանքները: Հանկարծ նավի կողքին հայտնվեց մի կատեր: Թևոսյանը բարձրացավ նավ: Բարևեց բոլորին:

— Որոշեցի կիրակի օրը այցելել ձեզ,—ասաց նա և խնդրեց.—Տվեք ինձ մի արտահագուստ...

Թևոսյանն ամբողջ օրը զննեց նավը, եղավ նրա բոլոր մասերում: Հանգամանորեն խոսեց պատվիրատուների՝ փինվորական ներկայացուցիչների հետ: Հետաքրքրվում էր աշխատանքների ընթացքով և նավաշինության տեխնոլոգիայի առանձնահատկություններով: Մանրամասն հարցուփորձ էր անում ծովայիններին, թե ինչպես են զգում երկար ժամանակ ծովում գտնվելիս, ինչպիսի բարեփոխումներ մտցնել նավասենյակների սարքավորման մեջ, ինչպիսի հարմարություններ են պակասում և այլն...

Հայրենական մետալուրգիայի վետերանները հիշում են, թե 1940 թվականի մայիսյան մի օր ինչպիսի ուրախությամբ ընդունեցին Ի. Ֆ. Թևոսյանի՝ ՍՍՀՄ սև մետալուրգիայի ժողովրդական կոմիսար նշանակվելու լուրը: Իրենց շարքերն էր վերադառնում մետաղի քաջագիտակ մի մարդ, մետալուգիայի էնտուզիաստը, արտադրության հմուտ կազմակերպիչը:

Արդեն մի քանի տարի էր, ինչ սև մետալուրգիան դոփում էր տեղում:

Կարճ ժամանակ անց ժողկոմատում դադարեց կադրերի հոսունությունը: Պայքար էր մղվում յուրաքանչյուր ընդունակ աշխատողի համար: Թևոսյանը չէր սիրում ամեն հարցում իր հետ համաձայնող ու քծնող աշխատողներին: «Նրանցից օգուտ չկա,— ասում էր նա:— Նրանց ներկայությամբ ես մեն-մենակ եմ մնում իմ գիտելիքների հետ և ի վիճակի չեմ լինում քննադատաբար վերաբերվել տեսակետիս»:

Ահա ժողկոմին կեկուցում է այն աշխատողը, որն զբաղվում է մետաղի վաճառահանման հարցով: Ամբողջ կյանքում նա գործ է ունեցել մե-

տաղի հետ, անգիր գիտե կարգը, բազմաթիվ օրենքներ, թվեր: Բայց ժողկոմն իր գրասեղանի գզրոցից հանում է համրիչը, անձամբ կրկին հաշվում աղյուսակի կամ ամփոփագրի որոշ սյունակներ: Համրիչով աշխատելու ունակությունը նա պահպանել էր դեռ առևտրական դպրոցից, որն ավարտել էր Բաքվում, ինչպես նաև Վոլգա-Կասպիական նավագնացության ընկերությունում աշխատելու շրջանից: Համոզվելով, որ բոլոր հաշվարկները ճիշտ են, ասում է.

— Այնուամենայնիվ դու ինքդ ստորագրիր աղյուսակը: Մի՛ խուսափիր: Իսկ ամբողջ փաստաթուղթը ինքս կստորագրեմ:

Նա խիստ տաքարյուն էր, չափազանց տաքարյուն: Բայց այդ արտահայտվում էր այն ժամանակ, երբ անպնդվություն, խաբեություն, շահամոլություն, կաշառակերություն էր տեսնում: Այստեղ արդեն նա չէր զսպում իրեն, բայց կարող էր ներողություն խնդրել, երբ շատ էր չափն անցնում: Աշխատակիցներին նա խորհուրդ էր տալիս միշտ քաղաքավարի վերաբերվել միմյանց և հաճախորդների հետ: Միաժամանակ կատակում էր.

— Եթե ես բղավեմ գլխավոր վարչության պետի վրա, նա կգնա կբղավի բաժնի վարիչի վրա: Բաժնի վարիչն էլ՝ կատարողի վրա: Իսկ կատարողը, չունենալով այնպիսի ստորադրյալ, որի վրա կարողանա բղավել, կգնա տուն և կբղավի կնոջ վրա: Այդ ամենի հետևանքով կտուժի բոլորովին անմեղ կինը...

Խոր գործիմացությունը, արդյունաբերության ղեկավարումը կազմակերպելու հմտությունը, կադրերի նկատմամբ ցուցաբերած հոգատարությունը, մարդկայնությունը, այս ամենը Ի. Ֆ. Թևոսյանին օգնեցին ճիշտ ուղիով վարելու մետալուրգիայի նավը:

1941 թվականի փետրվարին, հանդես գալով համամիութենական XVIII կուսկոնֆերանսում, Թևոսյանը կարողացավ կուսակցությանը և ժողովրդին վեկուցել, որ սև մետալուրգիայի վիճակըն այժմ ավելի լավ է, քան քառասուն թվականին:

Երեսունյոթ թվականից հետո առաջին անգամ էր գերակատարվում սև մետալուրգիայի արտադրության պլանը: Բայց դա միայն առաջին տեղաշարժն էր: Պահանջվում էին նոր ջանքեր: Մանավանդ որ մեծանում էր պատերազմի սպառնալիքը:

Գերմանիա կատարած վերջին ուղևորությունը բավականաչափ հստակ ցույց էր տվել Թևոսյանին, որ հիտլերյան պետությունն աննախընթաց չափերով է ծավալել սպառազինության արտադրությունը:

Կուսակցությունը և կառավարությունը, մտահոգված երկրի պաշտպանունակության ամրացմամբ, ավելացրել էին պաշտպանության ծախսերը: Բանակը տեխնիկապես պինելու համար պահանջվում էր ավելի մեծ քանակությամբ կանպան տեսակի բարձրորակ պողպատ:

Նշանակալի չափով մեծացավ ավիացիոն գործարանների սարքավորման պարկը: Չրախատանկային տեխնիկայի գործարանները լուծում էին ԿՎ տանկերի արտադրության բարդ խնդիրները: Սպառազինության արդյունաբերությունը յուրացնում էր գվարդիական ականանետների՝ կատյուշաների արտադրությունը:

— Պողպա՛տ,— պահանջում էր երկիրը:

Եվ մետալուրգները պողպատ էին տալիս:

1941 թվականի մոտերքը Սովետական Միությունը մարտական ինքնաթիռների արտադրությամբ աշխարհում գրավեց երրորդ տեղը՝ Գերմանիայից և Անգլիայից հետո: Առանց հզոր մետալուրգիական արդյունաբերության անհնար կլիներ այդ:

4.

Պատերազմի առաջին իսկ օրերին Պաշտպանության կոմիտեն որոշեց հարավային մետալուրգիայի ձեռնարկությունները խոր թիկունք տեղափոխել: Ժողկոմատն այդ բանը հանձնարարեց հատուկ հանձնաժողովների, որոնք մեկնեցին տեղերը և կուսակցական կազմակերպությունների, կորամասերի, ձեռնարկությունների ղեկավարների հետ մեկտեղ կազմակերպեցին սարքավորման, ապա մոնտաժման, բանվորներին ու նրանց ընտանիքներին արևելք ուղարկելու գործը: Եվ հաճախ, գրեթե ճակատային պայմաններում... Տագնապալի ազդանշաններ էին ստացվում ժողկոմատում: Հարկավոր էր ամեն ինչ պարզել տեղերում...

Թևոսյանն իր մոտ է կանչում կադրերի գծով իր տեղակալ Բիչկովին:

— Իմացիր, ինչ ձևով Կադիկովին ուղարկենք Չելյաբինսկ և Մագնիտոգորսկ:

Արդեն գիշերվա ժամը երկուսն էր: Ռմբակոծություն: Վալերի Ստեպանովիչ Բիչկովն ասում է.

— Կադիկովը կարող է թռչել առավոտյան ժամը վեցին, տանկերի դետալներ փոխադրող բեռնատար ինքնաթիռով:

Դառնալով Կադիկովին, ժողկոմը հրահանգեց.

— Ամեն ինչ կպարզեք տեղում: Կտեղակայեք սարքավորումը: Կդասավորեք և կստորագրեք տեղաբաշխման պլանները...

Հաջողվեց Ուրալ և Սիբիր փոխադրել նաև Նովո-Կրամոտորսկի և Ստարո-Կրամատորսկի գործարանները...

Մի խումբ ինժեներներ ցանկանում են կամավոր գնալ ռազմաճակատ:

— Ա՛յ քեզ բան, հապա մի լսե՛ք սրանց,— վրդովված ասում է Թևոսյանը:— Տեսեք ի՛նչ է ասում ընկեր Մելեշկինը: Մենք նրան վերջերս կանչեցինք Շվեդիայից, ուր նա գնացել էր փորձ ձեռք բերելու՝ իր ընկերների հետ: Ինչո՞ւ գնացիր, եթե պետք է ռազմաճակատ գնայիր: Ո՛չ, ընկեր Մելեշկին: Տո՛ւր քո փորձը և, ինչպես պայմանավորվել ենք,ստանձնիր Գլավռուդի պետի պոստը: Խորհուրդ եմ տալիս ամենից առաջ պահպանել փորձված հանքագործներին: Հակառակ դեպքում առանց հանքաքարի կմընանք... Հիշեցեք, այստեղ էլ ռազմաճակատ է:

Այո՛, ռազմաճակատ էր...

Եվ երբ 1942 թվականին Հյուսիսը մարգանեց տվեց, հրճվում ու հպարտանում էին Գլավռուդի բոլոր աշխատողները: Պատերազմի վերջերին նրանց հաջողվեց Վակալսկի հանքավայրում տասնհինգ անգամ ավելացնել հանքի հանույթը:

5.

Ժամանակը թավալգլոր առաջ էր գնում: Դեպի արևմուտք էին տեղափոխվում ռազմաճակատների քարտեզների վրայի կարմիր դրոշակները: Մոսկվայում գրեթե ամեն օր թնդում էին նոր հաղթանակների պատվին տրվող սալյուտներ: Եվ թեպետ ոչ մի րոպե չէր կարելի մոռանալ, որ պատերազմը դեռևս մեր հողում է մղվում, բայց և այնպես հարկավոր էր պատրաստվել վերականգնելու ձեռնարկությունները՝ հիտլերականներից ազատագրվող Հարավում:

Դոնբասը դեռ թշնամու ձեռքին էր, բայց արդեն հայտնի էր, որ նախատեսվում է նոր գործարաններ կառուցել Չերեպովեցում, Ռուսթավիում, Սումգայիթում:

Էվակուացման վայրերից ետ կանչվեցին հարավային գործարանների առանձին աշխատողներ: Կազմվում էին ձեռնարկությունների վերականգնման պլաններ: Մինիստրության հաճախորդների ուշադրությունն սկսեց գրավել մի նոր ցուցանակ՝ «Հարավային ձեռնարկությունների վերականգնման վարչություն»: Մարդիկ կարդում էին ու ժպտում...

Թևոսյանը պիտանի ու օգտակար մարդկանց հաշվառման մի ինչ-որ ուրույն սիստեմ ուներ, և զարմանալիորեն կարողանում էր հիշել թե ով որտեղ է գտնվում և ում ինչ է հանձնարարված:

Ավերված գործարաններում շրջագայելու ժամանակ մինիստրը հաճախ հիշում էր փորձված մետալուրգներից մեկին և հարցնում, թե որտեղ է նա, ինչ է անում այժմ:

Դրանից հետո նա սովորաբար կարգադրում էր ետ կանչել այդ ընկերոջը և նշանակել որևէ դժվարին տեղամասում:

6.

Շատերին էր հետաքրքրում, թե ինչ է անում «Էլեկտրոստալ» գործարանը, որ մինիստրն այդքան հաճախ ու երկար է լինում այնտեղ...

1947 թվականին Թևոսյանն ասում էր Գլավսպեցստալի աշխատողներին.

— Մեր մոտորաշինարարներն սկզբունքով արդեն ստեղծել են ռեակտիվ շարժիչ: Այն աշխատում է, բայց ինքնաթիռի վրա դնել չի կարելի: Արագ փչանում, պոկվում են թիակները: Հարկավոր են ջերմակայուն համաձուլվածքներ:

Թևոսյանը մտադրվեց հանգամանորեն ստուգել «Էլեկտրոստալի» պողպատ ձուլողներին: Ամեն կեսօրին գալիս էր գործարան, այնտեղից գնում կեսգիշերին՝ գունատ, մտահոգ: Պողպատաձուլման արտադրամասում դրվել էին հեռախոսներ, որոնցով նա կապվում էր Կրեմլի, մինիստրության, ձեռնարկությունների հետ:

Այդպիսի մի առավոտ Թևոսյանը հրավիրեց կանապան բնագավառների մասնագետների մի նեղ շրջանի խորհրդակցություն: Բոլորի համար պարզ էր, թե խոսքը ինչի մասին է լինելու: Թևոսյանն ասաց.

— «Էլեկտրոստալի» մետալուրգներն ապացուցեցին, որ իրենք շատ խնամքով պահպանել են տեխնոլոգիան: Նշանակում է, անհաջողությունների պատճառն այլ է, առայժմ անհայտ: Պետք է շարունակենք որոնումները, օգտագործելով գիտելիքների ու փորձի պինանոցը:

Հարկավոր էր նվազագույն խառնուրդ ունեցող ձուլվածք ստանալ... Եվ Թևոսյանը հիշեց լաբորատորիայի պետ Կուլտիգինի մի անգամ ասած խոսքերը. «Ահա հիմա վառարան կուղարկենք նիկել-տիտանի խառնուրդը, և մետաղը կսկսի փչանալ»: Նա մտածեց. «Շատ կասկածելի է նիկելը»:

Պարզվեց, որ «Էլեկտրոստալ» գործարանն ստանում է I, II, III տեսակի նիկել, որի մեջ շատ են կապարի, անագի և այլ նյութերի խառնուրդները: Մինչդեռ անհրաժեշտ էր բացառիկ մաքուր նիկել:

1948 թվականի հուլիսի 21-ին օդանավակայանում ամենքն էին հուզված: Բոլորի հայացքն ուղղված էր ինքնաթիռին:

Օդաչուն նստեց խցիկում:

Հնչեց մոտորի երգը: Լսվեց տուրբինների ուժգին հռնդյունը:

Ինքնաթիռն սկսեց իր վազքը, բարձրացավ և թաքնվեց մշուշում:

Հուզումն ավելի մեծացավ: Կդիմանա՞...

Ինքնաթիռը մոտորների ձայնից էլ արագ էր սլանում...

Վերջապես ինքնաթիռը վայրէջք կատարեց:

Սկսվում էր տիեզերական դարագլուխը...

*Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ*

*Արտատպվում է* **«Дружба народов»** *ամսագրից (1966 թ., № 11), կրճատումներով:*

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Սպիտակի շրջանի Ծաղկաշեն գյուղից պրոպագանդիստ Մ. Է. Սանթրոսյանը դիմել է մեր ամսագրի խմբագրությանը, խնդրելով պատասխանել իրեն հետաքրքրող մի քանի հարցերի։

Ստորև այդ հարցերին պատասխանում է տնտեսական գիտությունների թեկնածու Ալ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆԸ։

Հարց.— Արդյո՞ք ածխի, աղի, նավթի մանրածախ գներն ավելի ցածր են, քան նրանց ինքնարժեքը։

Պատասխան.— Ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ում ծանր արդյունաբերությունը գործում է բավարար շահութաբերությամբ։ Արտադրական հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների միջին-տարեկան արժեքի նկատմամբ ձեռնարկությունների ստացած շահույթի հարաբերությունը կազմում է մոտավորապես 15 տոկոս, իսկ արտադրության ծախքերի (ինքնարժեքի) նկատմամբ՝ որոշ չափով ավելի։

Ածուխը, նավթը և աղը օգտագործվում են գլխավորապես որպես հումք, այսինքն՝ շրջանառություն են կատարում արտադրական ձեռնարկությունների միջև՝ մեծածախ գներով։ Նավթի և աղի այդ գները բարձր են ինքնարժեքից և ապահովում են ձեռնարկությունների շահութաբեր աշխատանքը, իսկ ածխինը՝ ոչ։

Արտադրանքի նշված տեսակների մի մասը վաճառվում է բնակչության անձնական սպառման համար՝ մանրածախ գներով։ Ընդ որում նավթը և աղը վաճառվում են վերամշակման ենթարկվելուց հետո (որպես կերոսին և մաքրված, փաթեթավորված աղ)։ Դրանց մանրածախ գները ևս բարձր են ինքնարժեքից. նշանակում է դրանց ինչպես արտադրությունը, այնպես էլ վաճառքը շահութաբեր է։

Այլ է բանը ածխի հետ։ Ածխի ինքնարժեքը միջին հաշվով ամբողջ ածխարդյունաբերության մասշտաբով մի փոքր միայն ցածր է միջին մանրածախ գնից, իսկ եթե այդ ինքնարժեքին ավելացնենք նաև փոխադրական ծախսերը (որոնք մեծ չափերի են հասնում), ապա այն կգերազանցի մանրածախ գինը։ Նշանակում է, ածխի արդյունաբերությունը և բնակչության կողմից ածխի իրացումը պետությանը ոչ թե շահույթ, այլ որոշ վնաս է բերում։

Ածխարդյունաբերության մեջ առայժմ գործող մեծածախ գները նույնպես ցածր են ինքնարժեքից։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1965 թվականի սեպտեմբերյան պլենումի որոշումների համաձայն, ներկայումս երկրում անցկացվող տնտեսական ռեֆորմով, այս տարվա հուլիսի 1-ից ուժի մեջ կմտնեն ածխի նոր, ավելի բարձր մեծածախ գներ, որոնք ածխարդյունաբերությունը կապահովեն միջին հաշվով 7 տոկոս շահութաբերություն՝ ֆոնդերի նկատմամբ։ Բայց դրանց բարձրացումը չի ազդելու ածխի մանրածախ գների վրա, որոնք, կառավարության որոշման համաձայն, մնալու են նույն մակարդակին, որպեսզի բնակչությունը չտուժի։

(Ածխի ինքնարժեքի բարձր լինելու հիմնական պատճառներից են նաև բնական պայմանները և աշխատավարձի բարձրացումը այդ ճյուղում)։

Հարց.— Կա՞ն արդյոք ապրանքներ, որոնց մանրածախ գինը ինքնարժեքից ցածր է։

Պատասխան.— Այո, կան։ Չնայած դրանց թիվը համեմատաբար փոքր է, այնուամենայնիվ, նման երևույթը չի համապատասխանում սոցիալիստական տնտեսավարության հիմնական սկզբունքի՝ լիակատար տնտեսական հաշվարկի կիրառմանը, որը պահանջում է սահմանել այնպիսի գներ, որոնք համապատասխանեն ամեն մի ապրանքի վրա գործադրվող հասարակականորեն անհրաժեշտ ծախքերի մեծությանը և ապահովեն բավարար շահույթ՝ նորմալ աշխատող ձեռնարկությունների համար։ Ներկայումս կենդանական յուղի, մասնավորապես կարագի, յուղալի կաթնաշոռի, հալած պանիրների, հում կոտլետի (կիսաֆաբրիկատ), թեթև ապխտած երշիկի, մսա-բանջարային պահածոների, ջեմի, պովիդլոյի, պաքսիմաթի, օսլայի (կարտոֆիլից) և մի շարք այլ ապրանքների մանրածախ գները որոշ չափով ցածր են դրանց ինքնարժեքից։ Դա, իհարկե, ձեռնտու է բնակչությանը, բայց վնասում է արդյունաբերական ձեռնարկությունների նորմալ գործունեությանը։

Պետք է նշել, որ կաթնամթերքների ինքնարժեքը բարձրացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո, երբ գյուղատնտեսական ձեռնարկություններին ու նրանց կոլեկտիվներին նյութապես շահագրգռելու համար զգալի չափով բարձրացվեցին ինչպես անասնաբուծական, այնպես էլ բուսաբուծական արտադրանքի, այդ թվում հացահատիկային կուլտուրաների պետական մթերման գները, ավելացան կոլտնտեսականների ու սովխոզային բանվորների աշխատանքի վարձատրության չափերը։ Այնուհետև, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի խորհրդով 1966 թվականի հուլիսի մեկից կոլտնտեսություններում մտցվեց աշխատանքի ամենամսյա երաշխավորված կայուն վարձատրություն, որը նույնպես հանգեցրեց վարձատրության ավելացման։ Անասունների գների բարձրացման և աշխատանքի վարձատրության ավելացման պատճառով բարձրացավ կաթնամթերքների (և ոչ միայն դրանց) ինքնարժեքը։ Մանրածախ գների և ինքնարժեքի միջև



առաջացած խզումը արտադրանքի գների բարձրացման միջոցով վերացնել չի կարելի, հետևապես, միակ նպատակահարմար ուղին այդ մթերքների ինքնարժեքի իջեցումն է։

Հարց.— Մսի մթերման գները արդյո՞ք բարձր են վաճառքի գնից, եթե այո, պետությունը վնասո՞ւմ է դրանից։

Պատասխան.— Կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան ամրապնդելու նպատակով գյուղատնտեսական մթերքների պետական մթերման (հանձնման և գնման) գները վերջին 10 տարում (1958, 1962 և 1965 թվականներին) ավելացվեցին։ Վերջին անգամ մասնավորապես բարձր գներ սահմանվեցին մսի համար։ Այսպես, մեր հանրապետությունում խոշոր եղջերավոր անասունների մսի մթերման գինը բարձրացավ 55 տոկոսով, խոզինը՝ 70, իսկ ոչխարինը՝ 100 տոկոսով։ Ճիշտ է, 1962 թվականին որոշ չափով բարձրացվել էին նաև մսի մանրածախ գները, բայց դա չապահովեց մսի վաճառքի շահութաբերությունը՝ երրորդ հարցի առնչությամբ նշված և այլ պատճառներով։

Ներկայումս, ինչպես ամբողջությամբ վերցրած Միության մեջ, այնպես էլ մեր հանրապետությունում մսի (տավարի, ոչխարի, խոզի) գնման գները բարձր են վաճառքի մանրածախ գներից։ Գնման գինը սահմանվում է կենդանի քաշի դիմաց, մանրածախը՝ սպանդային քաշի, որը գրեթե կրկնակի պակաս է ստացվում կենդանի քաշից։ Դրանց հասարակ համեմատությունն արդեն (տե՛ս գնացուցակները) ցույց է տալիս մանրածախ գների ցածր լինելը։ Այդ պատճառով, անշուշտ, պետությունը վնասներ է կրում։ Ուստի, անասունների գլխաքանակի ավելացումն ու դրանց մթերատվության բարձրացումը մնում է որպես գյուղատնտեսության զարգացման ամենահրատապ խնդիրներից մեկը, իսկ կերային բազայի ամրապնդումը, կերային կուլտուրաների բերքատվության բարձրացումը՝ դրա լուծման հիմնական ուղին։

Հարց.— Հայաստանի էներգետիկ ցանցն արդյո՞ք միացած է որևէ էներգասիստեմի հետ։ Հայաստանը էլեկտրաէներգիա արտահանում է, թե՞ ներմուծում։

Պատասխան.— Դեռևս 1960 թվականին Հայաստանի էներգետիկ ցանցը միացավ Վրաստանի և Ադրբեջանի ցանցերին և այդպիսով ստեղծվեց Անդրկովկասի միացյալ էներգետիկ սիստեմ, որը խոշոր չափով նպաստում է երեք հանրապետությունների էներգետիկ ռեսուրսների ռացիոնալ, արդյունավետ օգտագործմանը։ Ներկայումս Հայաստանը էլեկտրաէներգիա չի արտահանում (միայն փոքր չափով տալիս է Նախիջևանի ԱՍՍՀ-ին), այլ ներմուծում է։ Բանն այն է, որ մի քանի տասնամյակ առաջ, երբ մյուս հանրապետությունների համեմատությամբ Հայաստանն



## ՀԱՐԳԵԼԻ ԸՆԹԵՐՑՈՂ

Ստորև տպագրում ենք մեր ամսագրի այս համարում զետեղված հոդվածների ցանկը և խնդրում՝ դրանք գնահատել հինգբալյան սիստեմով։ Ձեր գնահատականները կօգնեն մեզ՝ ամսագրի որակը բարելավելու։

Խնդրում ենք հոդվածների գնահատականը նշել փակագծերում, ապա էջաբերքը կտրել, ծալել այնպես, ինչպես ցույց է տրված, և գցել փոստարկղը։

Ժողովուրդների բարեկամությունը որպես սոցիալիզմի մեծագույն նվաճում (    ):

Անհատի և հասարակության շահերի զուգակցման հարցի լուծումը (    ):

Զարգացման գաղափարը և տիեզերքը (    ):

Հոկտեմբերյան հեղափոխությունը և պատմության դիալեկտիկան (    ):

Նոր դարաշրջանի պատմագրությունից (    ):

Կուսշրջկոմը և գյուղատնտեսության մասնագետները (    ):

Կուսակցական հոգատարություն պիոներական կազմակերպությունների նկատմամբ (    ):

Առավելագույն ուշադրություն արտադրամասային կուսկազմակերպություններին (    ):

Լայն թափ գաղափարական-քաղաքական աշխատանքին (    ):

Տնտեսական ռեֆորմի նախնական արդյունքները և հարակից մի քանի հարցեր (    ):

Ազգային եկամտի աճի գործոնները (    ):

Պողպատի մինիստրը (    ):

Պատասխան ընթերցողների հարցերին (    ):



ՓՈՍՏԱՐԿՂ ԳՑԵՔ ԱՌԱՆՑ ԴՐՈՇՄԱՆԻՇԻ

ԵՐԵՎԱՆ—16
«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ
ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ

Սոսնձելու տեղը

կտրելու գիծը

ավելի հարուստ էր էժան հիդրոէլեկտրաէներգիայով (գլխավորապես Սևան—Հրազդանի կասկադի կայանների կառուցման շնորհիվ) մեզ մոտ ստեղծվեցին խիստ էներգատար արտադրանք տվող մի շարք խոշոր ձեռնարկություններ (ալյումինի, քիմիական)։ Իսկ այժմ մեր էներգետիկ հնարավորությունները բավականին սուղ են և անհրաժեշտ էլեկտրաէներգիայի զրեթե մեկ երրորդը ներմուծում ենք։ Դրությունը շատ ավելի կսրվի 1970 թվականին, եթե ամեն ջանք չգործադրենք պլանավորված հիդրոհանգույցները և ջերմաէլեկտրակայանները ժամկետին շահագործման հանձնելու համար։ Դա համաժողովրդական գործ է։

Զարգացող արդյունաբերության աճող պահանջմունքները բավարարելու համար ներկայումս կառուցվում են մի շարք հիդրո և ջերմաէլեկտրակայաններ։ Այս հարցին վերաբերող հանգամանալից տեղեկություններ կարելի է գտնել հանրապետության էներգետիկայի և էլեկտրիֆիկացման գլխավոր վարչության պետ ընկ. Ս. Վարդանյանի հոդվածում, որը տպագրվում է «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» ամսագրի հերթական համարում։

———

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՍՑԵՆ

Երևան—16, հեռախոսներ. գլխավոր խմբագիր 7—16—90, պատասխանատու քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։
Ստորագրված է տպագրության 16/VI 1967 թ.։
ՎՖ. 04124 Պատվեր 1248 Տիրաժ՝ 10547
Գինը՝ 25 կ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

Սոսնձելու տեղը




# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ.— Սուրբ ընտանիք կամ Քննադատական քննադատության քննադատություն։ *Ընդդեմ Բրունո Բաուերի և ընկերության։ Ե. Հայաստան հրատ, 1967, 374 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության մասին։ *Մ., Քաղհրատ, 1966, 383 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Ի՞նչից սկսել։ Պարտիական կազմակերպություն և պարտիական գրականություն։ Բանվոր դասակարգը և բանվորական մամուլը։ Ե., Հայաստան *հրատ, 1967, 63 էջ։*

Նամակներ Լենինին արտասահմանից. *Մ.,* «Мысль» *հրատ, 1966, 428 էջ։*

Լենինը և Սամարան.— *Կույբիշև, 1966, 564 էջ։*

Պետրոգրադյան բոլշևիկները երեք հեղափոխություններում.— *Լենհրատ, 1966, 463 էջ։*

Հիշողություններ Ն. Կ. Կրուպսկայայի մասին.— *Մ., 1966, 495 էջ։*

Կուսակցական և սովետական մամուլը սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում.— «Мысль» *հրատ., 1966, 639 էջ։*

Քաղաքատնտեսության քրեստոմատիա.— *Մ. Քաղհրատ, 1967, 240 էջ։*

Սպիրկին Ա. Գ.—Մարքսիստական փիլիսոփայության դասընթաց։ *Մ.,* «Мысль» *հրատ., 1966, 542 էջ։*

ՍՄԿԿ պատմության դասախոսների դասընթաց, *Ա. մաս, Մ. 1966, 544 էջ։*

ՍՄԿԿ XXIII համագումարի նյութեր։ *Ե., Հայաստան հրատ., 1967, 472 էջ։*

ԱՄՆ-ի քաղաքական կյանքը *(Ներքին քաղաքականության հարցեր)։ Մ., 1966, 295 էջ։*

ԲՐՅՈՒՍՈՎ Վ. Յ.— Հայաստանի և հայ կուլտուրայի մասին.— *Ե. ԳԱ հրատ., 1967, 296 էջ։*

Համաշխարհային համառոտ պատմություն.— *Մ. Հրատ., 1966, 510 էջ։*

ԳԱԲՐԻԵԼՅԱՆ Ռ. Բ.— Մ. Նալբանդյանը և բնագիտությունը։ *Ե. ԳԱ հրատ., 1966, 148 էջ։*

ԺԵ դարերի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ *II մաս.— Ե., ԳԱ հրատ., 1967, 712 էջ։*

Նախադպրոցական մանկավարժություն— *Ե.,* Լույս *հրատ., 1967, 467 էջ։*

ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹ— Մեկնություն ի վերլուծականն Արիստոտելի *(համահավաք քննական բնագիր, թարգմանություն բնագրից ռուսերեն), Ե. ԳԱ հրատ., 1967, 154 էջ։*

ԴՐԱՄԲՅԱՆ Տ. Ս.— Ֆրանսահայ կոմունիստները դիմադրության տարիներին։ *Ե. Միտք հրատ., 1967, 198 էջ։*

Բարոյականություն։ Կոմունիստները ինչպես են հասկանում այն։ *Քաղհրատ, 1966, 280 էջ։*

Կուն Իրինա— Բելա Կուն *(հիշողություններ), Մ. 1966, 312 էջ։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍԽՏՈՐԸ ԱՆՏԻԲԻՈՏԻԿՆԵՐԻ ՓՈԽԱՐԵՆ

Պոզնանի (Լեհաստան) գիտնականները, ուսումնասիրելով սխտորի անտիբիոտիկ հատկությունները, կատարել են մի շարք հետաքրքրական փորձեր։ Լաբորատոր հետազոտությունների համար նրանք վերցրել են բարձր դիմադրողականությամբ բակտերիաներ։ Դեղն օգտագործվել է սխտորի էքստրակտի և փոշիակերպ սխտորի էմուլսիայի ձևով. սխտորը սառած վիճակում չորացրել են։ Հետազոտվող 638 բակտերիաների տեսակները սխտորի 10 տոկոսանոց էմուլսիայից ոչնչացվել են։ Նրանց մեծ մասի վրա կործանարար է ազդել մեկ տոկոսանոց կոնցենտրատը։ Բակտերիաների այդ տարատեսակները զուգահեռ փորձերի ընթացքում, լրիվ իմունիտետ են դրսևորել պենիցիլինի և տերամիցինի նկատմամբ և թույլ են հակազդվել մնացած անտիբիոտիկներից։

Կենդանիների վրա կատարած հետագա փորձերի դրական արդյունքները հնարավոր են դարձրել կլինիկական փորձարկումները։ Սխտորով բուժել են՝ կերակրափողի վարակիչ բորբոքումը, ականջների թարախային բորբոքումը և այլն։ Եթե այլ անտիբիոտիկներ այդ դեպքում անզոր էին լինում, ապա սխտորային դեղամիջոցը բացառիկ արդյունք էր տալիս։

## «ՋՐԱՅԻՆ» ԱՆԿՈՂԻՆ

Շատ բժիշկների մտատանջել է ծանր այրվածքներ ու վնասվածքներ ունեցող հիվանդների համար մահճակալներ ստեղծելու հարցը։ Ամենահնարամիտ սարքերը, այնուամենայնիվ, այդպիսի հիվանդներին վիթխարի տանջանք էին պատճառում, որոնցից կարող է փրկել միայն օդից պատրաստած բարձը։

Վերջերս ԱՄՆ-ում երկու երիտասարդ բժիշկ որոշեցին կիրառել դեռևս XIX դարում առաջ քաշված մի գաղափար։ Դա ջրով լիքը խողովակների վրա անցկացված ռետինե թերթերից պատրաստված «ջրային» անկողինն է։ Նրանց նախագծած մահիճը մանր ծակոտիներ ունեցող լաթերից պատրաստած մի ներքնակ է։ Այն ունի փոսեր, որտեղ դրված են ջրածնով լի փոքրիկ պարկեր։ Այսպիսով, պահող հենարանի վրա այնպես հավասար է բաշխվում հիվանդի կշիռը, որ եթե հիվանդի տակ ձու դրվի, չի ջարդվի այն։

## ՀԱՎԻՑ՝ ԱՔԼՈՐ

Հարավային Հունգարիայի Պեչ քաղաքում տեղի է ունեցել մի արտասովոր դեպք— հավը վեր է ածվել աքլորի։ Այդ հավը, որ 11 տարի ձու է ածել, այնուհետև աստիճանաբար ընդունել է աքլորի արտաքին տեսքը. այլևս չի ածել, սկսել է ծուղրուղու կանչել, նրա գլխին աճել են՝ մեծ կատար, ուժեղ խթաններ, պոչ։ Ֆիզիոլոգիական զանազան հետազոտությունները և հերձումը ցույց են տվել, որ այդպիսի զարգացումը տեղի է ունեցել մի քանի տարում։ Դեպքի գիտական բացատրությունն այն է, որ կենդանիների մոտ սեռական բնույթը ոչ թե բացարձակ, այլ հարաբերական հատկություն է և հնարավոր է սեռափոխում։

## ԿԱԿԱՉԻ ՍԵՐՄԻՑ ԷԼ ՓՈՔՐ ԼԱՄՊ

Անգլիական գիտնականները պատրաստել են աշխարհում ամենափոքրիկ շիկացման լամպը—0.1 միլիմետր երկարությամբ և 0,07 միլիմետր տրամագծով։ Լույսի աղբյուր է ծառայում գալլումի միացության բյուրեղը, որը լույս է տալիս էլեկտրական հոսանքի ազդեցությամբ։ Այդպիսի լամպերը կկիրառվեն մինիատյուր մաթեմատիկական մեքենաներում։

## ՉՈՐՍԱՉՔԱՆԻ ՁՈՒԿ

Պարզվում է, որ այդպիսի ձկներ կան ԱՄՆ-ի Օրեգոն նահանգի առափնյա ջրերում։ Դրանք ունեն երկու զույգ աչք՝ իրար վրա տեղադրված։ Յուրաքանչյուր զույգի մի աչքը վերև է նայում, մյուսը՝ ներքև։ Տեղական ձկնորսները գտնում են, որ չորս աչքերը հնարավորություն են տալիս ձկանը՝ խուսափելու վտանգավոր գիշատիչներից։